ՉՈՐՍՀԱՐԻՒՐԱՄԵԱԿ ՀԱՅԿԱԿԱՆ ՏՊԱԳՐՈՒԹԵԱՆ

# ՁԵՆՈԲ ԳԼԱԿ

## ՀԱՆԴԷՊ ԱՐԴԻԱԿԱՆ ՔՆՆԱԴԱՏՈՒԹԵԱՆ

ՀԱՄԵՄԱՏՈՒԹԵԱՄԲ
*Ագաթանգեղոսի, Բ. Փաւստոսի, Մ. Խորենացւոյ, Եղիշէի Եզնիկի, Ղ. Փարպեցւոյ, Յով. Եպ. Մամիկոնեանի*

Μὴ κρίνετε, ἵνα μὴ κριθῆτε
ΜΑΤΘΑΙΟΣ, κεφ. [illegible]

ԳՐԵՑ
ՄԻՀՐԱՆ ՉՕՎՀԱՆՆԷՍԵԱՆ





Կ. ՊՈԼԻՍ
1512-1912
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Օ. ԱՐՁՈՒՄԱՆ

663

# ՁԵՆՈԲ ԳՂԱԿ

ՀԱՆԴԷՊ

ԱՐԴԻԱԿԱՆ ՔՆՆԱԴԱՏՈՒԹԵԱՆ

ՀԱՄԵՄԱՏՈՒԹԵԱՄԲ
Ագաթանգեղոսի, Բ. Փաւստոսի, Մ. Խորենացւոյ, Եղիշէի,
Եզնիկի, Ղ. Փարպեցւոյ, Յ. Եպ. Մանդակունեանի, եւն. եւն.

Μὴ κρίνετε, ἵνα μὴ κριθῆτε

ΜΑΤΘΑΙΟΣ, κεφ. η, ι

214 p.

ԳՐԵՑ
ՄԻՀՐԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ




Կ. ՊՈԼԻՍ
1912

ԱՌ

Ազն. բարեկամին իւր

Լեւոն Էֆէնտի Զարմանեան

Ճարտարապետ Ընդհ. Մաքսատանց

ՕՍՄԱՆԵԱՆ ՊԵՏՈՒԹԵԱՆ

ԶԱՅՍ ԶՕՆ ԴՈՒԶՆԱՔԵԱՅ

Մատուցանէ

ի շնորհապարտ սրտէ

11 Մայիս 1912
Կ. Պոլիս

Միհրան Յովհաննէսեան

# ՅԱՌԱՋԱԲԱՆ



Մեր ներկայ ուսումնասիրութեան նպատակն է հաստատել Զենոբ Գլակի սկզբնագրին հարազատութիւնը մեր դոյզն կարողութեան չափով և այս է անշուշտ դժուարին ձեռնարկ քանի որ զայն վերջին անգամ տպագրողներու յայտարարութեամբ՝ այս հեղինակը մեր ամէն մատենագիրներէն աւելի եղծուած է այլ և այլ ազդեցութիւններու տակ։

Բարեբաղդաբար Յարգելի Գ. Խալաթեան մեր գործը մասամբ դիւրացուցած է Զենոբ Գլակը արդիական քննադատութեան փորձին ենթարկելով։ Անուանի բանասէրը կազմած է Զենոբ Գլակի այլ հեղինակներու հետ զուգադիպած հատուածներու բաղդատական ցանկը որոնցմէ երախտագիտութեամբ կ'օգտուինք։

Մեր Ներածութեան մէջ ուրեմն Ղազարեան Ճեմարանի Հայ լեզուի Ուսուցչապետին համեմատական ուսումնասիրութիւնը իր բաղկացուցիչ տարրերուն վերածեցինք և ստուգեցինք որ Ասորի Պատմագրին գիրքը երկու մասի կը բաժնուի․ Ա. Նախնիներու պատճէններ և Բ. Տարօնի երկու պատերազմներու նկարագրութիւնը։

Փոխանակուած նամակները այլ և այլ անձանց կը վերաբերին և բնական է որ զանց առնենք պահ մը այդ առաջին մասը իբրև ոչ յատուկ Զենոբի։ Արդ բուն Զենոբի վերաբերող մասին գալով՝ ստուգեցինք որ Յարգելի Գր. Խալաթեան Տարօնի կռւին պատերազմներու աղբիւրը չէ կրցեր գտնել և անյայտ ըսելով անցեր է։ Իրաւամբ կը խորհինք թէ այդ իրողութեամբ՝ ըստ արդիական դրութեան, պէտք էր Զենոբի վերաբերող մասը սկզբնագիր և հա-

բաղատ ընդունիլ. ապա թէ ոչ ինչ բանի կը ծառայէր համեմատական ցուցակներ կազմել։

Արդիական քննադատութեան վիճակն ի մեզ ուրեմն անուններու հետ խաղա՛լ էր լոկ. մենք կը հաւատանք թէ անիկայ լուրջ գրութիւն մըն է և իր որոշ սկզբունքն ունի։ Դժբաղդաբար այդ սկըզբունքներուն չը յարգուելուն հետեւանօք, բնիկ թէ օտար բանասէրներ ստէպ նոյն գրական խնդրոյն վրայ զիրար հակասած և իրարու հակառակամարտ վճիռներ արձակած են։

Արդեօք իրեն մասնագիր կ'արժէ՞ սակայն որ Զենոբ Գլակի քննութեամբ աւելի երկար զբաղինք։ Ս. Կարապետի վանքին մենակեացը շնորհալի արտօնութիւնն ունի վաղեմի օրերու ասպետական շահատակութիւնները նկարագրելու վառ գոյներով և այնու արդէն ինքզինքին ապահոված է յատուկ էջ մը Գեղեցիկ դըպրութեան ոսկի մատեանին մէջ։

Յետոյ կանխորոշ է Յարգելի Դր Խալաթեանի արձակած աննպաստ վճիռը քանի որ՝ հազիւ իր քննութեան առաջին տողին սկսած, չի քաշուիր յայտարարելու թէ ինք ալ համամիտ է անոնց որ Զենոբի գրուածքը յետին դարուց մի Հայի կարկատանք կը համարին։ Ներուի մեզ գիտել տալ թէ վճիռը արձակելէն ետք դատաստան չի մնար։

Ուստի Տարակոյս չի կայ որ հակասութիւններ կրցանք մատնանշել մեծանուն բանասէրին կանխակալ յայտարարութեանց մէջ և այս շատ բնական էր քանի որ Լազարեան Ճեմարանի Հայ լեզուի Ուսուցչապետը իր իսկ ձեռնարկած արդիական քննադատութեան Զենոբի նպաստաւոր արդիւնքը կ'արհամարհէր և իր աննպաստ ենթադրութիւններով կը շատանար։

Ինչ որ մանաւանդ ափսոսալի է, սա է թէ քննադատութեան առարկան շփոթած է քննադատութեան ներքային հետ. այսինքն փոխանակ Լազարեան Ճեմարանի մատենագիտական դասարանի թանգարանին մէջ գտնուած այլեւայլ ձեռագիր Զենոբ Գլակներու բաղդատութեան նուազ աղաւաղեալ արդիւնքը իր քննադատութեան

հիմ բանալու՝ Յարգելի Դր. Խալաթեան, հեռուները կ'երթայ գտնելու ամէնէն նոր և ամէնէն աղաւաղեալ տպագիր Զենոբ Գլակը իրեն առաջնորդ առնելու։ Ուրեմն իր նշմարած անհարազատութիւններն անգամ, Զենոբինը ըլլալէ աւելի, անոր եղծուած օրինակին կը վերաբերին։

Բայց որովհետեւ Զենոբի անձէն աւելի շահեկան են անոր նկարագրած վայրերը, և իր պարզած ողբերգական տեսարաններուն գերակատարները, ինչպէս հոն տեղի ունեցած հեթանոսութեան և քրիստոնէութեան ճգնաժամի պայքարը՝ ասոր ուզեցինք մեր սահմանափակ միջոցներուն չափով գիտական քննադատութեան ալ բաժին հանել։

Ընթերցողները մեր հետ վայրկեան մը աչքէ կրնան անցնել Տարօնի կրկին պատերազմներու թատրավայրը այն գեղեցիկ քարտէսին վրայէն զոր արտատպեցինք Լինչի ընդարձակ գործէն։ Հոն են Զենոբէ նշանակուած Հաշտենից տափարակը, Քարքէյ լեռը, Հայկական Տաւրոսը, Աղահունեաց գաւառը, Արածանի, Ողական ամրոցը, Վիշապ կամ Օձ քաղաքը, Գլակայ վանքը, որ իրենց համեմատական դիրքերով այնքան իրականութիւն կուտան Ասորի պատմաբանին նկարագրութեան։

Նաև կը յուսանք՝ առաջին անգամ ըլլալով Ս. Կարապետի (մեր գրքին մէջ խնդրոյ առարկայ եղած) վանքին և Եկեղեցւոյն լուսանկարները մեր ընթերցողաց ներկայացնելով, որչափ հաճելի անակնկալ մը պատճառել, նոյնչափ ալ անհրաժեշտ պէտք մը լրացնել։

Նոյնպէս Ստեփան Մալարմէի պատուական գործէն արտատպելով՝ կը ներկայացնենք Տարօնի մէջ Տրդատայ օրով վերջին անգամ պաշտուած Դեմետրի պատկերը ուր արդարեւ Դեմետր անունի միակութեան հակառակ կը տեսնուին քոյր և եղբայր ինչպէս Զենոբի մէջ կ'անուանուին։ Ուստի տարակոյս չի մնար որ Հռովմի հարկատու Հայաստանի մէջ Տրդատի օրով կը պաշտուէր իրապէս Հռոմէական Դեմետր։

Եւ որպէսզի Տարօնի մէջ Քարքէյ լերան գլուխ գտնուող

գետնափոր տուներուն մէջ կատարուած (Զենոբէ ակնարկեալ) պղծութեանց մասին տարակոյս չի մնար՝ առ այս Ստրաբոնէ և Պլինիոսէ բնագրի հատուածներ իբրև վկայութիւն մէջ կը բերենք։

Զենոբ ուզած Տրդատի արքունեակ ճենացի Մամգունի մը ի Հայս ներկայութեան հաստատութիւնը բաղդին թողուլ և Էլիզէ աշխարհագրողէն յատուկ մէջբերումներով կը հաստատենք թէ ինչպէս Ճենաց և Փոքր Ասիոյ ազգաց մէջ յարաբերութիւններ մշակուած էին ի հնումն որով Զենոբի այս մասին ակնարկութիւններն ալ կ'արդարանան։

Նաև հաստատելու համար թէ ինչպէս հիմնական այլայլումներու ենթարկուած է Զենոբի սկզբնագիրը՝ Պոլսոյ տպագրութեան կողքին նմանահանութիւնը կը զուգադրենք Վենետիկի տպագրութեան կողքին հետ և բաղդատութենէն անմիջապէս յայտնի կ'ըլլայ հնագոյն օրինակի մը լուսատիպն ըլլալը։

Դարձեալ արտաքին հեղինակներու, ինչպէս նաև Ագաթանգեղոսի, Փ. Բիւզանդացւոյ, Մ. Խորենացւոյ, Եզնիկի, Եղիշէի, Յովհան Եպ. Մամիկոնեանի և Զենոբ Գլակի միաժամանակ համեմատութենէն յայտնի կ'ըլլայ թէ Արշակունեաց օտարացեղ արքայական հարստութիւնը յունամոլ էր. իսկ Հայոց նախարարներն ու քուրմերը Պարսից աւանդութիւններուն կը հակամիտէին։

Արշակունիք գահ բարձրանալով հետզհետէ յունական քաղաքակրթութիւնը իր ամէն տարազով ի Հայս մտցնել փորձեր էին և Հայ քուրմերու ազդեցութիւնը հակակշռելու համար Ատրպատականի կրակապաշտութեան եօթը մեհեաններուն տեղ հակառակամարտ եօթը յունական կամ այլ կուռքերու մեհեաններ կանգներ էին։

Ասով չբաւականանալով քրմապետութիւնը յափշտակեցին Վահունեաց ձեռքէն որք ապաստանեցան յԱշտիշատ իրենց գեղը և հոն ութերորդ պաշտօն մը հաստատեցին։ Արշակունիք հոն ալ հասան անոնց ետեւէն և Աշտիշատը յարքունիս գրաւեցին և օտար քուրմեր ընկեր տուին Վահունեաց։

Այդ հեթանոսական կայանին մէջ հետզհետէ Հայկական,

Պարսկական, Յունական, Հնդկական, Հռոմէական կուռքերը նոյննացան և միաժամանակ կամ յաջորդաբար պաշտուեցան։ Կռապաշտական արտայայտութեան վերջին երեւոյթն էր Հռոմէական Դեմետր և այս զարմանալի չէ քանի որ Տրդատայ ժամանակ Հայք հարկատու էին Հռոմայեցոց։

Տրդատ և Շապուհ միացակից էին իրարու Հայաստանի տիրապետութեան մասին։ Շապուհ գրգռեց Տրդատայ նախարարները յապստամբութիւն, քուրմերը նախարարներուն հետ միացան ընդդիմանալու Տրդատայ։ Տրդատ անոնց դէմ ելաւ Յոյն զօրքերով և Հռոմայեցի լէգէոններով, ջախջախեց նախարարներու ընդդիմութիւնը և եօթը մեհեանները կործանեց։

Ութերորդ մեհեանին քուրմերը կանոնաւոր բանակ ունէին և Հաշտենից իշխանը, Աղձնեաց Բդեշխը, Սղուկ և ուրիշներ իրենց հետ էին և Տարօնի մէջ ընդդիմացան Տրդատի։

Զենոբ մեզ կը ներկայացնէ Հայ հեթանոսութեան Տրդատի դէմ կազմակերպած վերջին ընդդիմութեան պայքարը։ Տրդատ Յոյն զօրքով և Հռոմէական լէգէոններով կը ջախջախէ անոնց յետին ընդդիմութիւնը և բնաբարձ եղած քուրմերու տեղ կը դնէ Ասորի եկեղեցականներ և բնիկ անճիտեալ նախարարներուն տեղ կը դնէ Մամիկոնեան եկամուտ նախարարութիւնը։

Նոյէն Զենոբէ դուրս կ'ելլենք և կը շարունակենք դէպքերու ընթացքը և այլ մատենագիրներէ կ'ուսանինք որ Յ. Տ. 302—406 օտար կղերը Հայ ազգին հոգեւոր շինութեան փոյթ չի տարաւ։ Ծիսակատարութիւններն կ'ըլլային ժողովուրդին անհասկնալի Յոյն և Ասորի լեզուներով։ Իսկ Մամիկոնեանք այն աստիճան երկրին մէջ բունացած էին որ առ հասարակ ամէն Հայ հին նախարարութիւնները իրենց ձեռքով անճիտուեցան։ Մինչդեռ Արշակունիք կուավարական հոգերը մոռցած, անձնատուր էին իրենց կիրքերուն։

Օտար եկեղեցականները իրենց տիրապետող դիրքէն ինկան. Հայ աստուածարեալ հայրապետներու շրթունքներ խօսեցան Հայ սրտերու, Արշակունեաց հարստութիւնը կործանեցաւ և Թագաւո-

րութիւնը ինկաւ նախարարներուն, միջակից նախարարներէն Բագրատունիք կազմեցին Արշակունեաց յաջորդ հարստութիւնը։

Այս տեսութենէն կը հետեւի թէ Զենոբի պատմութիւնը՝ Ս. Գ. Լուսաւորչի ձեռամբ քրիստոնէութեան ի Հայս սկսելուն նախընթաց և յետագայ պարագաները իրար կը շղթայէ և պատմական իրողարձութիւնները կը բացատրէ։

Անկից անկախաբար, մեր հետազօտութիւնները երեւան հանեցին թէ Աշտիշատի երեք հեթանոսական բագիններուն տեղ յանուն Ս. Երրորդութեան խորհրդաբար երեք քրիստոնէական տաճարներ կանգնուեցան, ամէն մէկը օծուած Ս. Կարապետի մասունքով և երեք Ս. Կարապետ եկեղեցիներ կային։

Ա. Իննակնեան Ս. Կարապետ.

Բ. Կուառատան Ս. Կարապետ.

Գ. Հառենից Ս. Կարապետ.

Զենոբի մէջ խնդրոյ առարկայ եղող Ս. Կարապետի վանքին աւերակները այսօր կը գտնուին Քարքէոյ լեռան գլուխը ուր ինը աղբիւրներէն երկուքը երկրաշարժներէ ետքը ցամքած են և եօթը դեռ կը բղխին։ Կուառատան Ս. Կարապետէն քիչ մը վար է այս օրուան Ս. Կարապետը որ քանիցս երկրաշարժերէ փլչելէ վերջ նոր ժամանակներ կառուցուած է։ Հառենից Ս. Կարապետը այսօր կործանած է և փլատակը կը գտնուի Քարքէոյ լերան ստորոտը։

Ինչպէս կը տեսնուի մեր յառաջաբանէն՝ մեր գործին մէջ յաւէտ զբաղած ենք Տարօնով և մեր նախկին մատենագիրներով. ուրեմն արդարութիւն չպիտի ըլլար մեր եզրակացութիւնը փակել Ցարգելի Դր. Խալաթեանի մասին աննպաստ վճիռով մը։ Այս հոգը աննախանձ կը թողունք անոնց որ զինք ճամբայ հանեցին, ինչու որ ողբացեալ Ուսուցչապետին անակնկալ մահը զիրենք ի վիճակի դրած է անվերապահ վճիռնին արձակելու անոր ընդհանուր գրական գործունէութեան վրայ։

ՄԻՀՐԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ



# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Զենոբ Գլակի համեմատական ուսումնասիրութիւնը մեր հին մատենագիրներուն վրայ Հայ լեզուով փորձուած արդիական քննադատութեան առաջին նմոյշներէն է եւ կազմուած է ամբողջապէս այն յօդուածներէն, որոնք լոյս են տեսած Տարօնի Պատմութեան մասին Հանդէս Ամսօրեայի 1893ի 3, 4, 5, 8 եւ 9 թիւերու մէջ առանց փոփոխութեան:

Յարգելի Դր. Խալաթեանէ երկու տարի վերջ (Տես Gezler, Die Anfänge der armenischen Kirche, in Werhandlungen der könig, Sächs, Gesellschaft der Wiss. zu Leipsig phil.—hist Klass. 1895. p. 123). օտար վերծանողներու առջեւ քուրմերու պատերազմին պատմագրողը իր նախկին վարկը կը կորսնցնէ եւ իր գործը Թ. դարու մէջ ապրող անձի մը անարժէք աւանդավէպներու հաւաքածոյն կը նկատուի:

Սակայն ինչպէ՞ս կրնայ որ Ղազարեան ճեմարանին հայ լեզուի նախկին ուսուցչապետը Մ. Էմին (Տես Ճռաքաղ Ամսագիր 1859 էջ 167-176, 300-304, 1860-1861, էջ 30-34.) իր գրուածներու ազդեցութեամբ կարծես աւելի հաստատեց Զենոբի հարազատութեան խնդիրը.

մինչդեռ նոյն բարձր հաստատութեան մէջ Հայ լեզուի բեմը իրեն յաջորդող Դր. Խալաթեան այս անվաւեր գրուածքին հաւանական հեղինակ նշանակեց Մամիկոնեան եպս. Յովհանն :

Արդեօք նոյն համալսարանի բեմէն նոյն հեղինակի մասին նման կարծիք յայտնելու անպատեհութի՞ւնը պատճառած էր զյարգելի Դր. Խալաթեան իր նախորդէն տարբեր բան մը զրուցելու: Ամէն պարագայի մէջ Տարօնի պատմութեան հեղինակը Զենոբը համարողին մասին չենք կրնար պնդել որ ազգայնամոլ մը եղած ըլլայ եւ փափաքած ըլլայ հեռաւոր անցեալի մը մէջ Հայ գրականութեան փառքը յաճախուած տեսնել քանի որ Զենոբ ասորի էր:

Արդ, ըստ աւանդութեան, Հայ քրիստոնէական գրականութեան յառաջընթաց մէկ երեւոյթն է Գլակայ վանուց մենակեացին վերագրուած երկը եւ քանի որ յարգելի Դր. Խալաթեան նշմարեր է թէ այդ աղաւաղեալ գիրքը պատառ պատառ կտորներէ բռնազբօս կերպով իրար կցուած է (Տես էջ 77) պէտք էր անոր բազմակողմանի ուսումնասիրութեամբ լուսաբանել մեր հին գեղեցիկ դպրութեան աչքի զարնող այդ մութ կէտը:

Ահա եւ այս նկատումով կ'սպասուէր որ այս համեմատական ուսումնասիրութիւնը աւելի ընդարձակ բռնուէր. եւ հասկցուէր թէ

ի՞նչու, ե՞րբ, ի՞նչպէս այդ կեղծարարութիւնը տեղի ունեցած է. բայց քանի որ ինձ հեղինակներու մէջ Զէ՛նոբ Գլակի ունեցած պատահական նմանութիւնն է միայն այս աշխատութեան նիւթը՝ կը հաստատեմ թէ հազիւ 78 էջէ բաղկացեալ տետր մը չոկ նման եղեր է գրել այս կարեւոր նիւթին վրայ:

Զենոբ Գլակի Համեմատական Ուսումնասիրութեան էջերը հետեւեալ կերպով կրնանք դասաւորել:

**Ա. ԱԶԴ.** Ցարգէլի ուսուցչապետը մեզ կ'իմացնէ թէ առանց փոփոխութեան Հանդէս Ամսօրեայի մէջ նախապէս երեւցած յօդուածներն են որ ի նորոյ կը հրատարակէ:

**Բ. ՈՒՂՂԵԼԻՔ ԵՒ ՅԱՒԵԼՈՒԱԾՔ.** Այս մասին մէջ հեղինակը էջ 1 տող 18. էջ 1 տող 7. էջ 2 տող 13. էջ 3 տող 20. էջ 33 տող 2. էջ 44 տող 2. էջ 47 տող 2. էջ 48 տող 21. էջ 49 տող 3. էջ 61 տող 15, իր ինչ ինչ վրիպակները կ'ուղղէ եւ յաւելուածներ կ'ընէ:

**Գ. ՅԱՌԱՋԱԲԱՆ.** Առաջուց չի ծածկեր թէ ինք եւս համամէտ է այն հայեացքին ըստ որում Զենոբի գրուածքը Ը-Թ դարու մի հայի կարկատած համարուելու է եւ այսպէս կարծակէ իր կանխորոշ վճիռը:

**Դ. ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՔ.** Ուր ի միջի այլոց կիմացնէ թէ Ս. Էջմիածնի թանգարանում կան

ԺԳ. դարէ եւ ԺԵ. դարէ Զենոբ Գլակի գրչագրեր եւ թէ Լազարեան ճեմարանի մասնագիտական դասարաններու մատենադարանում կայ Զենոբի պատմութեան մի բաղդատութիւն Ս. Էջմիածնի 5 ձեռագիր եւ 2 տպագիրներու հետ՝ աշխատասիրութեամբ Գ. Ա. Գիտանեանցի (Թ. 1891) որոնցից սակայն չօգտուիր եւ իր համեմատական ուսումնասիրութեան հիմ կը բռնէ 1832ի Վենետիկի տիպը:

**Ե. ՀԱՄԵՄԱՏԱԿԱՆ ՑԱՆԿ.** Ուր կընդունի թէ բուն Զենոբի վերաբերեալ մասին աղբիւրները իրեն համար անյայտ կը մնան այսպէս:

> Ա. ՊԱՏԵՐԱԶՄ. էջ 25 տող 6-29. էջ 26 տող 1-39. էջ 27 տող 1-39. էջ 28 տող 1-39. էջ 29 տող 1-39. էջ 30 տող 1-39. էջ 31 տող 1-39. էջ 32 տող 1-9 եւ 26-35. էջ 33 տող 1-39. էջ 34 տող 1-39. էջ 35 տող 1-6 եւ 17-36. էջ 36 տող 1-39. էջ 37 տող 1-30:
>
> Բ. ՊԱՏԵՐԱԶՄ. էջ 41 տող 1-39. էջ 42 տող 1-39. էջ 43 տող 1-39. էջ 44 տող 1-39. էջ 45 տող 1-9. էջ 46 տող 1-25. էջ 47 տող 10-35. էջ 48 տող 1-39. էջ 49 տող 1-39:

**Զ. ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆ.** Բաղդատուած մասերու մէջ պատահական նմանութիւններ կը գտնէ Ագաթանգեղոսի, Բուզանդի, Սեբէոսի, Խորենացւոյ եւ Ս. Յակոբայ վարուց ու Տա-

րօնի պատմութեան յարակից մասերու, բառերու, ոճերու եւ հատուածներու մէջ եւ (էջ 72) իւնիքօրներու ազդեցութեան ուշագրաւ պարագան ի վեր կը հանէ որուն վրայ սակայն չը ծանրանար:

Է. ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆ. Մատենանիս կընէ Յովհան եպս. Մամիկոնեան իբրեւ հաւանական կարկասող այս անվաւեր գրուածքին եւ Տարօնի պատմութեան այլեւայլ մասանց հաւաքածոյն Դ. դարէ մղելով դէպի Ը-Թ դար՝ զայն կարդացընէ այսինքն նոր ժամանակի շինծու գրութիւն կը համարի:

Արդ յարգելի ուսուցչապետը իր ազդին մէջ կընդունի թէ իր «աշխատութիւնը մի փորձ է համեմատական ուսումնասիրութեան» եւ կ՚ընդունի թէ նոյնինքն բաղդատութիւնը զուցէ առաջ բերէ եւ այլ մանր փոփոխութիւններ» Նաեւ ՀԱՒԱՆԱԿԱՆՈՒԹԵԱՆ սահմանին մէջ կը թողու այդ գրութեան ենդրեալ նշանակուածին բնկութիւնը: Ուրեմն բաց ասպարէզ կը ձգէ ապագայ հետազօտութեանց եւ այդ արտօնութենէն կօգտուինք մեր դոյզն կարողութեան չափով խնդրոյն լուծման օգնելու:

15 Մայիս 1911 ՄԻՀՐԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ
Կ. ՊՈԼԻՍ

# ԱՐԴԻԱԿԱՆ

## ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆ Ի ՄԵԶ



Արդիական քննադատութիւնը կ'արտայայտուի ի մեզ մեր հին մատենագիրներուն նոր ժամանակներ վերագրելու և նախապէս անոնց յատկացուած թուականէն զանոնք ետ մղելով՝ մեզի աւելի մօտ դարերու մէջ զանոնք տանիլ ձգելու աննպաստ երեւոյթին տակ: Ուստի և այսպէս Գ. Լուսաւորիչ, Զենոբ Գլակ, Ագաթանգեղոս, Բ. Փաւստոս, Եղիշէ, Եզնիկ, Կորիւն, Ղ. Փարպեցի, Մ. Խորենացի, չորրորդ կամ հինգերորդ դարու մատենագիրներ, հի-կան իրենց յարգեն կամ ենթադրուած ժամանակին. տես էջ ԺԳ. Ցոյց. Հայ Հին Դպր. 1897, Վենետիկ:

Ատենով, պատմական իմաստասիրութենէն ներշնչուող բանասէրներ ի հաշիւ կ'առնէին մեր երանաշնորհ նախնեաց ապրած ժամանակի քաղաքական պայմանները, անոնց բնակած երկրին տեղական պարագաները, անոնց միջավայրի հոգեբանական վիճակը և առ հասարակ մարդկային գործոց շարժառիթը. և ըստ այնմ կը պատրաստէին մեր հին մատենագիրներու դասակարգութիւնը պատճառի և հետեւութեան ստոյգ առնչութիւն մը հաստատելով, ինչ որ կը զուգադիպէր աւանդութեան մեզ հաղորդած մատենագիրներու շարքին հետ:

Այսպէս, նկատելով որ հեթանոս Հայաստանի մէջ քրիստոնէութիւնը նախապէս օտար հոգեւորականներու

կողմէ օտար դպրութեամբ քարոզուած է՝ ընդունած էին որ Զենոբ, Գ. Լուսաւորիչ, Ագաթանգեղոս և իրենց անուան տակ ճանչցուած երկասիրութիւնները կը վերաբերին քրիստոնէութեան ի Հայս սկզբնաւորելու շրջանին կամ Դ. Դարու։

Նկատելով որ կարգ մը հակառակամարտ կուսակցական հրատարակութիւններ կործանած երկրորդ արքայական հարստութեան գահուն թեկնածու Բագրատունեաց և Մամիկոնեան նախարարներու հրամանով պատրաստուած են՝ ընդունած էին թէ Մ. Խորենացի, Եղիշէ, Ղ. Փարպեցի կը պատշաճին Արշակունեաց անմիջապէս յաջորդող շրջանին կամ Ե. Դարու։

Նկատելով որ Հայ կղերին աշխարհային գործերու անդէպ միջամտութիւնը անհնարին դարձած էր մարզպանաց և կիւրապաղատներու քայքայուն իշխանութեան պատճառաւ և մեր եկեղեցականներուն կը մնար իրենց կոչման աւելի յարմար միայնակ գրականութեամբ զբաղիլ՝ ընդունած էին թէ Մ. Եղիվարդեցի, Կամիտաս Կաթողիկոս, Յովհան Մամիկոնեան և այլք կը վերաբերին յետագայ Է—Ը—Թ դարերու։

Արդեօք այս աւանդական դասաւորումը անյեղլի կա՞րգ մըն էր և չէ՞ր կարելի ճշդել անցեալին վրիպակները։ Բանավարութիւնը կընդունի ամէն օրինաւոր առարկութիւն և արդիականութիւնն ալ դրութիւն մըն է յարմարցուած պատմական ճշմարտութիւններ երևան հանելու եթէ սակայն լրիւ ի գործ դրուի։ Բայց չենք կրնար ծածկել թէ ի մեզ շատ անգամ միջոցը չփոթուած է նպատակին հետ և արձակուած վճիռները կը մնան առէպ հայեցողութեանց անկայուն սահմանին մէջ։

... Արդարև մեր հին մատենագիրներու նոր ժամանակներ յատկացնելու հետևելով զանոնք կը համախմբենք այնպիսի յետագայ դարերու մէջ որոնց քաղաքական

պայմանները թոյլատու չէին անոնց ամենուն միաժամանակ երեւման, ոչ ալ միջավայրի այլ պարագաները կը նըպաստէին գրական յանկարծադէպ զարթնումի։ Եղիսի, Բուզանդի, Մոհմադի, Վիլթի. Ապուլէթի. Կաչմ մեր բնակավայրը արեան ծով դարձուցած առենը չէր որ յանկարծ ձեռք ձեռքի տուին Զենոբ, Ագաթանգեղոս, Բ. Փաւստոս, Եղիշէ, Եզնիկ, Կորիւն, Մ. Խորենացի, Ղ. Փարպեցի և Սեբէոս, Կաղանկատուացի, Եղիվարդեցի, Կոմիտաս Կաթողիկոս, Յովհան Մամիկոնեան, Ա. Շիրակացի, Ս. Սիւնեցի, Յ. Իմաստասէր և այնքան ուրիշներ։

Մանաւանդ Ս. Գրոց և մէկ քանի ուրիշ կրօնական գիրքերու թարգմանութեանն առքը եթէ բաց թողունք երեք չորս դար՝ գրական անգործունէութեան այս միջոցը ինչպէս կը բացատրուի և առանց փոխանցման այսքան հեղինակներու միատեղ երեւնալը ինչպէ՞ս կը մեկնուի։ Տարբեր ժամանակներու պէտքի ծնունդ գրական երկերը իրար խառնելու արդարացուցիչ պատճառ կա՞յ միթէ, անոնց մէջտեղ դրուած մաքի արտայայտութեան իրերամերժ եղանակները ինչ օրէնքով կը հաշտուին։

Ղ. Փարպեցոյն մէջ կը նշմարուի՞ տաք երկրի մը ժողովուրդին յատուկ արտաքական ոճերու շռայլ ճոխութիւնը, Կորիւնի մէջ հոտը կա՞յ անթեւեթեայ բառերու անվերջ կուտակումներու, Ագաթանգեղոսի մէջ կը գտնուա՞ն թարմատար ձեւեր, Մ. Խորենացոյն մէջ հարաւէն արշաւողներու գաղափարներէն փոխառութիւններ կա՞ն, Եղիշէ մեզ կը խօսի՞ մարգարէին հետեւողներու դաւանդերուն դէմ չահատակողներու մասին, ինչ ապացոյցներ կան որ Զենոբ Գլակի գրոց կրկին պատճէնը Հագարացւոց մերձաւորութեանն ադրուած ըլլայ. քաղաքական փոթորիկներու առեն գեղեցիկ դպրութի՞ւն կը ծաղկի և

է — Ը — Թ դարերու համար արդէն իսկ նշանակուած հեղինակները այդ ժամանակամիջոցին համար միթէ չէ՞ն բաւեր։

Սակայն և այնպէս արևմտեան ազգերու մերթ խնդրական և յաճախ շլացուցիչ մեթոտներու ԱՐԴԻԱ-ԿԱՆ ՔՆՆԱԴԱՏՈՒԹԵԱՆ այս նորոյթն ալ՝ շատ ուրիշ նորոյթներու նման, հեշտ և հրապուրիչ պիտի ըլլար մեզ համար և անշուշտ պիտի փորձուէինք զայն կիրարկել անցեալէն մեզ ժառանգութիւն մնացած գրական հազուա-գիւտ նշխարքներուն վրայ։ Նոյն իսկ խորհողներ ալ եղան թէ այդ ձեռնարկին միջոցին նոր պատրուակի մը տակ մարդուն սրտին հին ունայնասիրութիւնը իրեն յարմար թաքստոց մը գտած ըլլայ։

Եւ «Մագիստրոսութեան աստիճանին բարձրացուած ըլլայ ի Պետերբուրգ, ի Ռուս լեզու իր վերջին հրատարա-կութեան Մ. Խորենացին արդիացնողը. տես էջ ԺԷ Յառ. Հայ Հին Դպրութիւն 1897 Վենետիկ։» Մեր այս գրքին ծրագրէն դուրս է գրախօսութենէ տարբեր խնդրով զբաղիլ և այս յայտարարութեան ճշդութիւնը և նպա-տակը ստուգել, ուստի անցողակի կերպով իբրև տեղե-կութիւն կը հաղորդենք արդիականութեան պատճառած զայթակղութիւնը։

Քննենք սակայն թէ ո՞րոնք են այն անհերքելի հաշուած տարբերութիւնները որոնց կռթնելով կը քան-դենք մեր նախնեաց բարի համբաւը։ Կը կազմենք կարգ մը համեմատական ցանկեր որոնց մէջ բաղդատութեան կը դրուին քննադատեալ մեր հին մատենագիրներու և յետագոյն դարերէ նոր հեղինակներու դիպուածական նմանութիւն ունեցող հատուածներ և այդ հարևանցի նմանութենէն կը հետևցնենք թէ մին միւսէն փոխ առած է անշուշտ։

Սակայն ինչո՞ւ անպատճառ ընդունինք թէ առջի մա-

ձեռագիրները նախնիներէն փոխ առած ըլլան և ոչ նախնիները յաջորդներէն: Բայց ասոր միթէ բանիւ, ոճիւ, ասացուածոց պատահական նմանութիւնները գրագողութիւն վճռող անհերքելի փաստե՞ր են. ասոնց իրարմէ օրինակած ըլլալու՝ գրողներ իրարմէ անկախաբար, նոյն նիւթին վրայ գաղափար յայտնելու միջոցին իրարու չե՞ն հանդիպիր և նոյն գաղափարը միևնոյն կերպով չե՞ն արտայայտեր: Եթէ այդպէս չէ՝ ու ո՞ր կը մնայ բառագիրք որ համաբարբառ բանիւ, ոճիւ և ասացուածոց ճոխ գանձարանն են:

Եւ ո՞վ կրնայ պնդել թէ մեր հնագոյն մատենագիրներու մէջ նորագոյն մատենագիրներէ հատուածներ ձեռնամուխներու կողմէ ետքէն ներմուծուած նպատակաւոր (interpolation) բնագրամիջամուտներ չե՞ն: Կ. Վարդապետ Շահնազարեան և իր համախոհները (տես Դուչանց թուղթ էջ 12 Բարիզ 1862) կը պնդէին թէ ՄԵՐ ՆԱԽՆԵԱՑ ՄԱՏԵՆԱԳԻՐՆԵՐԸ ԱՌ ՀԱՍԱՐԱԿ ԱՂԱՒԱՂՈՒԱԾ ԵՆ ՈՒՆԻԹՈՌՆԵՐՈՒ (ՄԻԱԲԱՆԱՍԷՐ) ՁԵՌՔՈՎ ՀՌՈՄԻ INDEXի ԺՈՂՈՎԻՆ ՀՐԱՀԱՆԳԻՆ ՀԱՄԵՄԱՏ:

Արդարեւ Վենետիկի Մխիթարեան հարք կը յայտարարեն թէ «Դաշանց թուղթը որ կը յիշուի առ Ագաթանգեղ Հռովմայ քահանայապետաց առ կաթողիկոսունս Հայոց գրած թղթոց վրայ յետոյ ուրեմն յօրինուած եւ շինծու գրութիւն է. տես էջ 244 Ագթ. եւ իր Բազմադարեան Գաղտնիքը. 1890 Վենետիկ:» Բայց նաեւ գնահատելի են Վիէննական Մխիթարեան հարք որ չեն ուզած ետ մնալ իրենց տրուած անաչառութեան օրինակէն՝ թելադրելով որ իրենց Վանքի մատենայքին միջոցաւ խնդրին վրան բոլորովին բացուի, այսպէս:

Արդեն Հռոմի յիշատակութիւնը ի դէպ թէ անդէպ Զենոբի պատմութեան մէջ եւ յանկարծ Պօղոս Պետրոսի առաքեալներու Եշիարներու Հայաստան բերելու աւանդու-

## ՑԱՆԿ

### ՈՒՂՂԱԳՐԵԱԼ ԵՒ ԽՆԴՐԱՌԱԿԱՆ ԲԱՌԵՐՈՒ

| | |
|---|---|
| Ա. Ղ. Փարպեցի | 40 |
| Բ. Ագաթանգեղոս | 50 |
| Գ. Բ. Փաւստոս | 176 |
| Դ. Եղիշէ | 26 |
| Ե. Կորիւն | 71 |
| Զ. Ս. Բարսեղի (վեցօրեայ) | 163 |
| Է. Մ. Խորենացի | 71 |
| Ը. Եզնիկ | 23 |
| Թ. Ց. Մանդակունի | 46 |
| Համագումար ուղղագրութեանց | 666 |

Տես էջ 417—429 Ուղ. Ազգ. Մատենագրաց 1907, Վենետիկ:

Արդ եթէ այսօր խօս մէկ անգամէն 666 ուղղագրութիւններ կ'ըլլան բնագրի՝ այլ ինչ ոչչանակութիւն պէտք է ունենայ ամէն քան երիտասարդայինս մաշմաշէն քանուած աղբիւրներին հեղինակութիւնը որ իրմէ հազար հինգ հարիւր տարի առաջ բնագիրը կորսուած իր ձեռքի խանգարուած օրինակին վրայ իր վճիռը կ'արձակէ:

Անկեղծ ըլլանք և չը վարանինք խոստովանելու թէ մի միայն ուղիղ գիտութեանց պատուած է հաւնիլ բացարձակ ճշմարտութեան թէ այլէն իսկ բնական գիտութեանց մէջ մարդիկ սխալուած են իրողութիւնները ապրելու փորձառութիւններով հա՛յակչել: Բայց երբ խնդիրը կը նկատի պատմական գիտութեանց՝ վկայութեան կանչուած անձին համեմատ ՃՇՄԱՐՏՈՒԹԻՒՆ քանին տրուած նշանակութիւնը կը գանազանի, և առընչական է. այնպէս որ ստիպուած ենք մարդկային (autorité)

*հեղինակութեան անզօրութիւնը ընդունիլ և* Pascal*ի հետ գոչել* vérité en deçà des monts, erreur au delà !

*Գերմանացին թէ Ֆրանսացին ասոր հակառակը պիտի պնդեն. անոնք խելացի են և գիտեն թէ պատգամի դարը ալ անցած է. ապա թէ ոչ ինչպէս կ՚ըլլայ որ յարգելի արդիական մը իր անհերքելի կարծած փաստերով մեզ համոզելէն վերջը, նոյնքան յարգելի ուրիշ արդիական մը կը յաջողի իր նախորդին առարկութիւնները ջրել և մեզ կը տարհամոզէ։ Արդէն նոր գրող մը հին գրողէ մը տարբեր բան մը յայտնած ըլլալու համար ի հարկէ նոր բան մը ըսելու է. որ նոր, յայտնութիւն նոր և ամէն հեղ պէտք է դառնալ հողմաղացքին թեւերուն հետ։ Բարեբաղդաբար ճշմարտութիւնը ոչ հին ունի և ոչ նոր ինչու որ յաւիտենական է։*

*Բայց որպէս զի մեր հին մատենագրութիւնը քրքրող արդիականներու մասին այս մեր յայտարարութիւնը չափազանցութիւն չի կարծուի՝ խօսքը նախ յարգելի օտարի մը թողունք որուն հաճելի թուեր է* 1891*էն ի վեր զբաղիլ Մ. Խորենացւոյ գրքերը քննութեամբ։* «Վիեննայի գիտնական Մխիթարեան մը՝ Հ. ՏԱՇԵԱՆ ենթադրութիւն մը կ՚ընէ թէ Աբգարու եւ Սանատրկոյ վերաբերեալ շատ մը դեպքեր՝ Լաբուբնայի անուամբ գրի առնուած պիտի ըլլան: ՏԻՔՍԸՐՈՆ *արդէն* ըսած էր թէ հարկ է որ թերեւս Լաբուբնայի անուամբ յաւելուածներ գոյութիւն ունենան եւ *ատոնցմէ առած* ըլլայ Մ. Խորենացի: Երկու գիտնականներն ալ կը խաբուին: Տե՛ս էջ 37—38 Ազգ. Մատենադարան ԻԲ. Աբգարու զրոյցը. 1897. Վիեննա:»

*Ուրեմն ըստ յարգելի Ա. Կարրիէրի, յայտնի Գիտնական Տաշեան մը և նոյնքան յայտնի Գիտնական Տիքսերոն մը արդարեւ կը խաբուին եղեր, և հետեւաբար կը խաբեն ալ եղեր։ Գոնէ մենք պիտի չը յանդգնէինք այսքան յառաջ երթալ մեր աննպաստ յայտարարութեան*

մէջ, բայց կ'երեւնայ թէ այս է իրաց ներկայ կացու-
թիւնը։

«Աւելորդ չենք համարում յառաջ բերել ՄԱՐՔԱՐՏԻ տուած պարզաբանութիւնը Cyclaces եւ Artabanes ներ-քինիների մասին (Zur Gesch. d. Faust. p. 213): Խիստ ԵՆԹԱԴՐԱԿԱՆ է նորա տուած բացատրութիւնը Artabanes անուան մասին, որին նա մի անյայտ Մամիկոնեանն է հա-մարում: Տես էջ 138. ծանօթութիւն. Ազգ. Մատենադա-րան ԻԹ. 1898 Վիեննա։» Այո՛, Եւրոպական հանճարին երկրպագու մը թող անձնապաստ վճիռը արձակէ որ մեզի ընելիք չի մնայ։

Իսկ գալով մերազնէից «Հ. Մեսրոպ Տէր Մովսէսեան անցեալ տարուայ կէսին էջերը խմբելով այն փաստերի դէմ որ անաչառ քննադատութիւնը բերել էր Խորենացու վաւե-րականութեան մասին, յայտարարում էր թէ Խորենացին է եւ կը մնայ Ե. դարու մատենագիր: Հայր Մեսրոպը նորից հրապարակ դուրս եկաւ «Արարատում, 1898 Մարտ, Ապ-րիլ Ցուեղուած 165-169» մի ընդարձակ յօդուածով, որով իր առաջուայ եզրակացութիւնը, որը Պ. Ստ. Մալխասեանցը հալած իւղի տեղ էր ընդունել, ՎՃՌԱԿԱՆԱՊԷՍ ՍԽԱԼ եւ անընդունելի էր հրատարակում. Տես էջ Ձ. է. Ցոյց. Ազգ. Մատենադարան ԻԹ. 1898 Վիեննա։»

Այս մասին շատ բան կը պարտինք յարգելի Ե. Դաղբաշեանի յայտնութեանց. այսպէս «ծիծաղելի են Հ. Մ. Գարագաշեանի ցեղուագիտական եզրակացութիւն-ները. Տես էջ 11 նոյն.» եւ «Մեծանուն հեղինակ հայր Գաթըրճեան սխալւում է Անտիոքայ գալուստն ի Հա-յաստան պատմական համարելով. Տես էջ 36. նոյն.» Դեռ կրնայինք այս թուումն մասանցը շարունակել, այնպէս որ աւելի լաւ չէ՞ր ըլլար փոխանակ նորից հրապարակ դուրս գալու, առաջուց նստէին եւ այս մեծ մեծ մարդիկ Գաթըրճեան, Գարագաշեան, Դաղբաշեան, Մալխասեան,

Մեսրոպեան, Գարրիէր Տիքսերոն, Մարքարտ, ընկլիք-նուն վրայ միաբանէին որ յետոյ իրենց խօսքը ետ առնելու տխուր հարկին մէջ չի գտնուէին։ Բայց ո՞վ գիտէ դեռ ինչ յետս կոչումներ պիտի ընեն Խորենացին՝ ցնդած, Ջենոբը՝ կարկատանք, Յովհան Մամիկոնեանը՝ խաբեբայ, Եղիշէն՝ չեմ գիտեր ինչ, հաչակողները երբ մէջտեղէն քիչ մը ատեն անցնի և հետաքրքրաշարժ բան մը ըսած ըլլալ ուզեն։

Շատ սպասելու ալ հարկ չկայ և այս քանիս օրինակը տուողներ դժբաղդաբար ամէն դասակարգի կը վերաբերին. առնենք նախ օտար մը այսպէս «Աւ Հ. Յ. Տաշեան ուղղած նամակս անհեհն առաջ ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹԻՒՆ ՄԸՆ է ՄԱԼՈՐՈՒԹԵԱՆ ՄԸ ոռով թաւակաւն ժամանակ սխալ հեսոց եսեւկն զացի: Կը կարծեի թէ Խորենացւոյ ւեջ զսած ըղյալ սոյց հեսքերը անոր Զասկակաւն ժամանակագրութիւն զործածած ըլլալուն: Խաբուած եի Ա. Գարրիեր Տեւ եջ Ը. Յոչ. Ազգ. Մատենադարան. ԺԴ. 1894 Վիեննա.»

Իսկ գալով յարգելի Յ. Դաղբաշեանի իր գլուխ գործոցը կը կէտկէտէ իր համոզումներուն չափանիշը եղող «Կասկածելի է 51 տող 12, Արդեօ՞ք էջ 82, տող 26. Սխալուած ենք ենթադրել· էջ 106 տող 24. Մեզ թուում է ենթադրել էջ 91 տող 30. Ըստ մեզ էջ 153 տող 10. Մեր կարծիքով էջ 16 տող 3. Մեր կարծիքով էջ 42 տող 7. Մեր կարծիքով էջ 93 տող 23. Մեր կարծիքով էջ 106 տող 20. Մեր կարծիքով էջ 155 տող 25. Թերեւս էջ 2 տող 5. Թերեւս էջ 34 տող 5. Թերեւս էջ 160 տող 28. Հաւանական է էջ 165 տող 17. Հաւանաբար էջ 153 տող 7. Հաւանական է էջ 130 տող 11. Հաւանական է էջ 10 տող 9. Կարելի է համարել էջ 93 տող 7. Համարում ենք էջ 84 տող 30 Ազգ. Մատենադարան ԻԹ. 1898 Վիեննա։» Ներուի մեզ դիտել տալ

թէ հաւանականութեան վրայ վճիռ չեն արձակեր և կարծիքով մարդ չեն դատապարտեր:

Ուրեմն ինչ մէկ մըն ալ կ'ելլենք կը բացագանչենք «**Խորենացու ընդարձակութիւնները էջ 13. Խորենացու պատմութիւնը Հազար եւ մէկ գիշերների հէքեաթների շարքն է. էջ 14, Խորենացին պատմութիւնը խարդախում է. էջ 20, Խորենացին սուտ եւ հակապատմական է. էջ 21, Խորենացին գեղեցիկ ճաշակ չունի. էջ 24, Այս տեսակ կեղծիքներ պատահում են Խորենացու մօտ. էջ 33. Խորենացին ծառայական պատմագիր է. էջ 38, Խորենացի պատմութիւնը քաս հաճոյս փոփոխութեան կ'ենթարկէ. էջ 40. Խորենացու տեղեկութիւնները կցկտուր են. էջ 43, Մեր զառամեալ Խորենացին. էջ 44, Այս ծերունին որչափ խարդախ՝ նոյնչափ միամիտ է. էջ 47, Ո՜վ ծերացեալդ Խորենացի, որքան մեծ ծառայութիւն պէտք է մատուցած լինէիր քո ազգին եթէ ապագայ սերունդներուն չթողնէիր քո կեղծ, անշունչ եւ անկենդան Հայոց պատմութեան կմախք. էջ 48, Կեղծիք որ մեր ծերունոյն յատկանշական նախասիրն է. էջ 80. Որքան պէտք է կարմրի Խորենացին. էջ 117, Զզուելի Խորենացի. էջ 127, Անբարեխիղճ Խորենացի. էջ 126, Վարձկան Խորենացի. էջ 150, Տես Ազգային մատենադարան Ի Թ. 1898, Վիեննա:**

Ա՞յս է եղեր որդիական քննադատութիւն, և ի հեճուկս ազգային զգացման ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ կ'անուանենք շարք մը գիրքեր որոնց մէջ կէտ նպատակի դրած ենք Հայ ազգին հին մատենագիրները խաղք ու խայտառակ ընել անոնց գլխուն թափելով փառքի տեղ ամէն երեւակայելի անոճ ու անոպայ խօսքեր: Ինչ ցընդա՜ծ ... զառամեա՜լ ... սո՜ւտ ... խարդա՜խ ... Այս ըրխբայի փափկանկատութեամբ զուգուած մարգարտաշար առղերը Յ. Դաղբաշեանի գրական փառապսակը պիտի կազմէին եթէ սակայն այս ոսկեղարու չքնաղ լեզուին հնարիչը

և սկզբնաւորողը չըլլար նոյն ինքն յարգելի Հ. Մ. Գարագաշեան:

Տարակոյս չկայ որ սրբութեան նուիրուած մենաստանի մը խաղաղ շրջափակին մէջ մեկուսացեալ մաքրակրօն հայրերու ուշադրութենէն վրիպած են այս ու ասոր նման նախատալից ոճով խմբագրուած հրատարակութիւններ. որովհետեւ հոգեւորականներ մենք աւելի լաւ գիտենք թէ փոխան փաստի գրգռիչ խօսքեր զանոնք կարդացողներուն զգացումը կը վիրաւորեն՝ առանց անոնց գաղափարը փոխելու:

Տարբեր է խնդիրը եթէ ասով մէկ նմոյշը տալ ուզած ըլլան այն «Հոյակապ, ընտիր, անեղծ եւ բուն հայկական լեզուին ուղիղ կը կարծուին երբեմն Աստուածաշունչի, Զենոբի, Բ. Փաւստոսի, Ագաթանգեղեայ, Եզնիկի լեզուն. Տես կչ 28 Նկարագիր Ուսմանց Հ. Մ. Գարագաշեան 1845 Վիեննա.» Միայն թէ անկից ի վեր հասկցուած է որ «Նոյն բնին Աստուածաշունչի հայերէնը յիրականին ողողուած է եբրայական, ասորական, եւ յունական ձեւականութեամբ եւ ազդեցութեամբ. տես կչ 38 Ոսկեդարեան եւ ոչ ոսկեդարեանի խնդիր. Հ. Գ. Գալէմքեարեան 1903. Վիեննա:»

Ուստի խորհողներ ալ կը գտնուին որ Վենետիկի և Վիէննայի Մխիթարեանց քոյր միաբանութիւնները երկբեղկող (տես էջ ԺԳ. Ցոլ. Հայ հին դպրութիւն 1897 Վենետիկ.) Ոսկեդարեան և ոչ ոսկեդարեան բանակռուին հին տարազը արդիականութեան վերածելով, անոր նոր երեւոյթ մը տալու և պատասխանատուութենէ զերծ մնալու հարկին առջեւ է որ Հանդէս Ամսօրեայի էջերը դիտմամբ լայն կը բացուին ամէն անոնց առջեւ որ իրենց ստորագրութեան տակ յանձն կ՚առնեն վարկաբեկել ոչ ոսկեդարեան նախաձայնեալ կարգ մը հին մատենագիրներ:

Անգիրը սակայն հին Հայ լեզուի և Գրականութեան չի նկատիր որչափ բարեկրթութեան տարրական սկզբանց, ինչու որ առանց ազգայնամոլ ըլլալու, մարդ գոնէ ինքզինքը յարգած ըլլալու համար, կրնայ աւելի չափաւոր լեզու մը գործածել: Նա մանաւանդ մեր հին մատենագիրներուն հանդէպ ցոյց տրուած արհամարհանքը երբէք չարդարանար, քանի որ ցարդ արձակուած վճիռները կը վերաբերին չէ թէ սկզբնագիրներու այլ անոնց դարեր ետքը խանգարուած օրինակութեան:

Արդ գեղեցիկ դպրութիւնը հայրենիք չունի և համաշխարհական է. այնպէս որ անոր շահն ու վնասը կը վերաբերին ամէն մարդու հաւասարապէս: Եթէ մեր հին մատենագրութիւնը ինքնին ո և է արժանիք ունի՝ ինչ որ Հայը իրենները արհամարհելով կը կորսնցնէ առանձին՝ մարդկութիւնը զայն կը կորսնցնէ հաւաքաբար: Ահա այս նկատումն է որ մեզ կը պարտադրէ աւելի լուրջ վերաբերում ունենալ մեր հին մատենագրութեան հանդէպ և այս օրուան արդիւնքներու քննադատութեան ենթակայ աղաւաղեալ օրինակներէն մօտենալ հետզհետէ քննադատութեան առարկայ սկզբնագիր օրինակներուն:

Մեզ համար սակայն չափազանցութիւն պիտի ըլլար յայտարարել թէ «Մինչ մէկ կողմէն կը յառաջանար խաղաղականակս անձեր ընէր Հայը իր հայրենեաց եւ բոլոր աշխարհի երեսին՝ մեր հին մատենագրութիւնն ալ ինչ համեմատ չի կրեց նոյն միջոցին: Տես կը Ժ Գ. Ցոյց. Հայ հին Դպր. 1897. Վենետիկ. Զարմանալի բան, մեր ափ մը ժողովուրդը աշխարհի ինչ արհաւիրք պատճառած պիտի ըլլայ որ Պետութիւններ համաձայնէին դաւադրել անոր նիւթական և բարոյական կեանքին:

Մենք աւելի կ'ընդունինք որ մարդկային մտքի ռահ-վիրաններ մեր երանաշնորհ նախնեաց հուրէ և սուրէ

անցած հին մատենագրաց բեկորներուն մէջ բաւական արժանիք գտած ըլլան անոնց հետ չափուիլ փիջանելու համար։ Մեզ և ուրիշներուն համար պատճառներն այն է որ մեր նախկին հեղինակները չը շփոթուին «Հնոյն Եղջաղայի եւ Լատինի ոսայօղ առասպելներուն հետ. Տես Ժ.Գ. Ցուց. Հին Հայ դպր. 1897 Վենետիկ։»

Ինչո՞ւ ուրախանանք թէ մեր գրականութեամբ զբաղողներէ ոմանք մեզ և մեր ազգային աւանդութիւններու հանդէպ քաղաքավար վերաբերում կ'ունենան. այն շնորհալի վերաբերումը իրենց բարեկրթութեան պահանջն է։ Եւ ինչո՞ւ տրտմինք թէ մեր անցեալ գեղեցիկ դպրութեան խնձակներով հետաքրքրուողներ իրենց ընդարոյս բարուց յարմար անչափ վարուելակերպ մը ցոյց տան. այն ատեն վարմունքը իրենց նկարագրին արտացոլումն է։

Մեր նախնեաց մատենագիրները իրենց բարի համբաւը պէտք է պարտին իրենց ներքին արժանիքին, բայց նաև երբէք չենք հանդուրժեր որ անարժան ձեռքեր անոնց հոլի յանդգնին։ Մեզ ի՞նչ փոյթ քննադատներուն Հիւպշման մը, Ֆէթթէր մը, Կոնիբիր մը, Պիչոֆ մը, Մարկարտ մը, Գէյցէր մը, Տոմաշէկ մը, Կարրիէր մը, Տաշեան մը, Դաղբաշեան մը, Գարագաշեան մը, Գալէմքեարեան մը կամ Գոլրիկեան մը ըլլալը. խնդիրը անոնց անձին վրայ չէ, անոնց ձեռնհասութեան վրայ է։

Այնպէս որ օրինաւոր քննութեամբ պէտք է հաստատուի այդ գրական նշխարքներուն հարազատութիւնն ու կարեւորութիւնը, կամ լուրջ առարկութիւններով ապացուցուի անոնց անվաւեր ու անկարեւոր ըլլալը։ Մինթէ այդ ակնարկեալ մատենագիրներուն դէմ թուք և մուր տեղա՞լն է հմտութեան գրաւականը, կամ նախատինքո՞վ կ'երաշխաւորուի ձեռնհասութիւն։ Մեր այս պահանջը

այնքան պարզ և վճիտ է որ ոչ ոք պիտի հանդուրժէ արդիական յաւակնութեանց անախորժ կուռքը բարձրացած տեսնել հոն ուր կը կանգնէր երբեմն պաշտելի արձանն նախնեաց սիրուն աւանդութիւններու ։

Մեր երախտագիտութիւնը կը պարտինք ամէն անոնց որ մեզ կը մատչին յանուն գիտութեան մեր սրտի արմատացեալ ազգայնամոլութիւնը կորել նետելու գովելի դիտաւորութեամբ ։ Բայց պէտք չէ մոռնալ թէ մեր սիրտը մերն է և ի հարկէ կը փափաքինք վարպետ ձեռքի մէջ տեսնել հատու գործիքը ։ Եթէ պէտք է վիրահատել՝ պէտք է զգուշաւոր և կարող ըլլայ վիրահատը որ նոյնքան դիւրաբոյժ ըլլայ կսկծալի վէրքը ։

Եւ յետոյ, չենք ընդունիր որ արդիականութիւնն ըլլայ ինքնապարգև տիտղոս մը ․ անիկայ ժամանակի և համբերութեան խնդիր է ։ Մեզ համար երբէք տարբերութիւն չունին Մ. Էմին, Զարբանալեան, Պաիւղօմ, Լանգլուա, Նորայր Բիւզանդացի, Հ. Յ. Գաթըրճեան, կամ Գր. Խալաթեան և ինչպէս դարերու յարգանքի առարկայ Մ. Խորենացի, Եղիշէ Եզնիկ, Կորիւն, Ղ. Փարպեցի, Ագաթանգեղոս, Զենոբ Գլակ պատասխանատու կը բռնուին իրենց գրածին, նոյնպէս օտար թէ բնիկ պատասխանատու են անոնց մասին իրենց ամէն մէկ գրած քննադատական տողին համար ։

Եթէ մեծ տիտղոսները մեծ արժանիքներու առհաւատչեան ըլլային՝ այսօր ոչ մէկը պիտի յանդգնէր մեր երանաշնորհ նախնեաց խնկելի մատեանները խարդախ հռչակելու ։ Խօսքի մը արժէքը պէտք չէ դատել խօսողին դիրքէն, հապա պէտք է հետեւցնել խօսքին կարեւորութենէն և համալսարանի մը աստիճաններէն քանի մը ոտք վեր կամ քանի մը ոտք վար՝ ճշմարտութիւնը ինքնին ճշմարտութիւն է և յաւէտ անայլայլ ճշմարտութիւն կը մնայ ։

Ինչ․ միթէ արդիականութիւնը մենավաճա՞ռ մըն է որ առանձնաշնորհումն ըլլայ այս կամ այն բաղդաւոր էակին։ Մտքի անկախութիւն դաւանողին համար նշանակութենէ զուրկ է ուրիշներուն մտքի համոզումը, մեր ներքին ԵՍը պէտք է հաւանութիւն տայ ճշմարտութեան և ամենուն ընդունելի գաղափարն այն է որ ինքզինքը կ'ենթարկէ ամենուն հակակշիռին անխտիր։

Ուրեմն ո՞վ որ աւելի առաջ մղուի խորհրդաւոր անցեալին մէջ, ո՞վ որ ժամանակով աւելի հին գրչագիրներու վրայ հիմնէ իր ուսումնասիրութիւնը, ո՞վ որ ճշդէ նպաստաւոր խեղաթիւրումներ, ով որ մատնանիշ ընէ աննպաստ յապաւումներ, ո՞վ որ ուշադրութիւն հրաւիրէ բարեմիտ սրբագրութիւններու վրայ, ո՞վ որ խայտառակէ չարամիտ յաւելուածներ, ո՞վ որ հեղինակին նկարագրած վայրերը տեղագրէ և նոյն ժամանակի պարագաներուն մեզ հմտացնէ, ո՞վ որ տարբեր ժամանակի նոյն հեղինակի գրչագիրները իրար համեմատէ և ծանօթէն դէպ ի անծանօթը յառաջանայ՝ յայտնի է թէ այն աւելի կը լրացնէ ձեռնհասութեան պայմանը։

Ինչ փոյթ թէ ճշմարտութիւն խօսողին ընկերական դիրքն ինչ է, ինչ չափով որ ինք կը չափէ ուրիշները՝ նոյն չափով ինք կը չափուի, ինչ դատաստանով որ ինք կը դատէ այլոց մտքի արտադրութիւնը՝ նոյն դատաստանով կը դատուին իր գրիչէն ելած տողերը։ Իմացական էակը խօսքի տեղ փաստ կը խնդրէ համոզուելու համար և ապացոյց կը պահանջէ այն մարդը որ վարժ է բանավարելու։ Միթէ ամենէն մեծ արդիականը աւելի՞ մեծ է քան ճշմարտութիւնը։

Արդ այս ճշմարտութիւնը անկախ է զայն երեւան բերելու համար գործոց կիրարկած մեթոտներէն և արդիականութիւնն ալ միմիայն մեթոտ մըն է։ Բարեբախտաբար արդիականութիւնը չի կայանար հին հեղինակ-

ները երիտասարդացնելու պատրուակով զանոնք նոր ձե-ւով չպարելու կամ քմածին ենթադրութեամբ նախնեաց հին մատենագրութեանց նոր ժամանակներ վերագրելու մէջ. բայց ճշմարիտ արդիականութիւնը կը կայանայ գիտական անխտրականութեան մէջ որ քննադատութեան նոր դպրոցը կը մտցնէ առ հասարակ ամէն երկասիրութեան մէջ և ի մասնաւորի պիտի փափաքէինք որ զայն գործադրուած տեսնէինք Ջենոբ Գլակի համեմատական ուսումնասիրութեան միջոցին ։



# ԶԵՆՈԲ ԳԼԱԿ
## ԻԲՐԵՒ
## ՄԱՏԵՆԱԳԻՐ

Անոնք որ գիտեն հեղինակի մը գրութեան նիւթը, շարադրութեան ոճը, գործածած լեզուն և դպրութեան սեռը իրարմէ զանազանել՝ դիւրաւ կ'ընդունին ըստ Villemainի, թէ չափազանցութիւն կայ պատմական երկասիրութեանց մէջ ամէն բան ժխտելու, ինչպէս ամէն բան ընդունելու մէջ։

Ուրեմն ներուի մեզ Զենոբ Գլակը ներկայացնել մեր ընթերցողներուն իբրև մատենագիր իր գրական առանձին յատկութիւններուն տեսակէտով և յետ որոյ մեզ թոյլ տրուի ծանրանալ անոր պատմական նշանակութեան վրայ։ Այսպէս նախ Զենոբ Գլակը դիտած կ'ըլլանք գեղեցիկ դպրութեան համաշխարհական տեսակէտէն և ի վերջոյ մեզ Հայոցս յատուկ պատմական աւելի սահմանափակ բայց ոչ նուազ կարեւոր քննութեան ձեռնարկելու առաւելութիւնը կ'ունենանք։

Բանանք Զենոբ Գլակի այն էջերը որ հեղինակին իր իսկ յայտարարութեամբ իրեն կը վերաբերին, այսինքն այն հեռաւոր ժամանակներու յատուկ պատերազմներու նկարագրութեան կրկին պատճէնները. ոչ թէ այն պատճէնները որ կը վերագրուին Ս. Գ. Լուսաւորչի (Տես էջ 7. Զ. Գ. 1832. Վենետիկ)։ Ս. Ղեւոնդիոսի (Տես էջ 9. Զ. Գ. 1832. Վենետիկ)։ Տրդատի և իր չորս զահերէց իշխաններուն (Տես էջ 12. Զ. Գ. 1832. Վենետիկ)։ Բեկտոր, Անտատաս, Աքիւղաս և Մարկեղիոսի (Տես էջ

16. Զ. Գ. 1832. Վենետիկ.) զորս պէտք չէր շփոթել նոյն իսկ քննադատուած հեղինակին գործերուն հետ որովհետև անոր գրիչէն ելած չեն։

Այո՛, թողունք այն էջերը որ յետագայից ոմանց կողմէ իրենց հաւատոյ ծաւալման նպատակաւ. յայտնի դիտաւորութեամբ իրենց կրօնական վարդապետութիւններուն պատշաճուած և այս նպատակով եղծուած են, և անցնինք նոյն իսկ Զենոբ Գլակի սեպհական պատմութեան՝ քանի որ ինք ալ նոյնը կը խնդրէ «զի որպէս զայլ տեղեացն չեմ ինչ գրեալ, նոյնպէս եւ զիմս չիշխէ ոչ գրել Տես էջ 39. Զ. Գ. 1832. Վենետիկ:»

Այն ատեն պիտի համոզուինք որ Ս. Կարապետի վանքին մենակեացը իր յարգելի ուսումնասիրողին իրեն շնորհած հազար հարիւր տարիներու հնութեան պատկառելի փոշին իր վրայէն թօթափելէն վերջը՝ կրնայ անգամ մը ևս գրական հրապարակ ելլել այն իրաւունքով որ իրեն կ'ապահովեն մատենագրութեան մէջ իր ցոյց տուած իմացականութեան շնորհալի տուրքը և վառ երևակայութիւնը և ինքզինքին էջ մը երաշխաւորել համաշխարհական գրականութեան ոսկի մատեանին մէջ։

Այն ինչ խիզախ ասպետներ են որ ահի պայմանց ձիերու վրայ հեծած մահը դիմագրաւել կը փութան, այն ինչ շլացուցիչ տողանցում է անպարտելի հերոսներու որոնց շահատակութիւնք Համերոսի նախանձը պիտի գրգռէր եթէ կոյր չըլլար ու տեսնել յաջողէր Աքիլլէսի և Հեկտորի երգիչը։ Ահա այն նոյն խրոխտապանծ ոգիով ի հանդէս կուգան Հայ դու նախարարները ինչպէս դարեր առաջ Թաթուլ կրնար գոչել. «Ով Տուղրիլ, եթէ հարուածը իմս է, իշխանազունը չայրիր:»

Ահա միգամած կ'ընթանան պատերազմին դաշտին վրայ և վեր ու վար ասպարէզը կը չափեն իրարու վրայ արհամարհոտ ակնարկներ շրջելով։ Կարծես կը լսենք

տակաւին իրարու երեսին թքած կսկծեցուցիչ թշնամանքը, կը լսենք սաղաւարտներու գագաթին վրայ իջած մուրճի կոփիւնը, երիվարներու տրոփիւնը։ Վիրաւորները մահուան հոգեվարքի մէջ կը հեծեծան, կը գալարին, կ'իյնան ձիերու թիկունքէն ի վայր և գետնի փոշին կը կրծեն։ Այդ կռիւին ամէն իրադարձութիւններուն ականատես վկան է Զենոբ Գլակ։

## ԱԿԱՆԱՏԵՍԻ ՄԸ ՎԿԱՅՈՒԹԻՒՆՆԵՐՆ

Տես էջ 25 Տող 3. Եւ մեք եղեաք անդի կամեցաք անցանել ընդ Հարք: Տես էջ 26 տող 26. Արք գեղջն հասանոյց եղեն մեզ. եւ մեք հեծեալ իւրաքանչիւր յերիվարս, փախստական գնացաք յամուրն Աղկան եւ արք սեղոյն մուծին զմեզ ի ներքս: Տես էջ 31 տող 13. Իսկ մեք եղեաք յամրոցէն ելաք ընդ նոյն ճանապարհ ընդ որ փախստական գնացաք: Իբրեւ եկաք ի վայրս գեղջն, մոլորեցաք խանգի գիշեր էր: Տես էջ 32 տող 2. Եւ ասացեալ մեր զանձինն, ձայն դղրդի եհաս յականջս մեր: Եւ իբրեւ եկաք հասաք յԻննակնեան սեղիսն, ընդ առաջ եղեն մեզ իշխանքն Հայոց: Տես էջ 33 տող 13. Երեգաք երկու առանձնապէս եւ եղաք անդ զնշխարս Սրբոց Կարապետին: Տես էջ 35 տող 31. Ցոյժ զարմանալի էր տեսիլ նոցա, խանգի սեւք էին եւ զիտաւորք եւ զազրատեսակք, զի զեղով ի Հնդկաց էին: Տես էջ 37 տող 29. Արդ յես երկոտասան աւուրց երթեալ իջանէաք ի խաղաղացեղն Մեղտի եւ եկն այր մի եւ զոյժ եբեր՝ եթէ արք հիւսիսոյ գան ի վերայ մեր: Տես էջ 40 տող 21. Իսկ իմ առաքեալ զՄուրսն Գրիգոր գնայ ի վանսն իմ զի կայր զուկ հիմնարկեալ եւ բազմորն իսկ եղեալ Ցաշտիզ սեղեացն ընդ ընտանեկոցն գնայր: Տես էջ 41 տող 6. Իբրեւ եկաք ի սեղին Իննակնեան բազմորեան հանդերձ խնդիր արարաք Անտոնի եւ Կրօնիդեայ: Տես էջ 42 տող 23. Իբրեւ ածաք զնոսա առ բազմ-

ւորն յարուցեալ համբուրեաց զնոսա: Տես կը 43 տող 32. Բայց առ թագաւորն Տղայս զօրքն որ կային՝ երեսուն հազար միայն էին եւ այլքն ամենայն երթեալ էին ի Մուշն աւան: Արդ ի հասարակել զիշերոյն, մինչ մեք պաշտօն մատուցանէաք առաջի սրբոյ Խաչին, զոր կանգնեաց իշխանն Սիւնեաց: Տես կը 44 տող 13. Եւ սպասն իշխանին մեր եղանել ընդդէմ նոցա ի պատերազմ, քանզի միջօրեայ էր ցուցիլն: Տես կը 44 տող 26. Բայց թագաւորն եւ Գրիգոր մեւք հանդերձ ի փոքր ամրոցին կայաք եւ աղօթէաք: Տես կը 45 տող 19. Զօրքն հիւսիսոյ յարձակեցան ի վերայ գեղջն եւ հանին զմեզ յամրոցէն: Տես կը 49 տող 8. Եւ իբրեւ հասաք զօրացն, հրամայեաց նոցա ունել զիշխանն Աղձնեաց եւ կամէր ծայրատել զոտս եւ զձեռս նորա. զոր արգել Ս. Գրիգոր. Տես կը 49 տող 18. Բարի է երկիրս, եւ վայրքս անուշ օդ եւ բազմաջուր, դաշտաձեւ եւ շուրջ զլեռամբքս բազում ամրոցք:

Այս պարագան Զենոբ Գլակի գրոց հարազատութեան ներքին ապացոյցն է անշուշտ և քրմաց երկու պատերազմները այնքան լաւ պատկերացնելուն պատճառն այն է որ ինքն իսկ դերակատարներէն մէկը եղած է։ Տիտանեան մարտ մըն է այն որ կը մղուի Քարքէոյ լերան կողերուն վրայ և աւելի ճշմարիտ և աւելի սարսռազդեցիկ կռիւ մը քան այն մտացածին դիւցազուններուն երեւակայական գիրկընդխառնումը որ Իլիոնի պարիսպներուն շուրջ տեղի ունեցաւ Յոյն քերթողահօր քնարերգութեան համեմատ։

Բայց թողունք Զենոբ Գլակ որ ինք ի հանդէս բերէ իր լերանց քաջորդիքը. և Ասորի մը ներկայացնէ Հայ անպարտելի ախոյեաններն մեր ընթերցողաց որպէսզի հաստատուի թէ մեր Գրադատական այս ձեռնարկը աւելի ազնիւ շարժառիթ մը ունի քան տոհմային դիւրաւ արդարանալի սակայն անձկամիտ անապարծութիւն մը։ Մանաւանդ այսու ճաշակ մը տուած կ՚ըլլանք դարեր առաջ պատրաստուած նկարագրական հատուածի մը որ կարծուածին չափ արհամարհելի չէ։



# ԶԵՆՈԲ ԳԼԱԿ

## ՀԱՏՈՒԱԾՆԵՐ

*
* *

### Ա. ՀԱՏՈՒԱԾ

Ապա հնչեցուցին զփողս պատերազմացն և դիմեցին իւրաքանչիւր այր ի դէմ առն դիպանաւորի և զօրքն Հայոց զառաջինն յաղթեցին քրմացն։ Իսկ ի նոյն ցեղէ Դեմետրեայ, իշխանն Հաշտենից, որ էր ընդ զօրսն Հայոց, կալեալ եօթն հազար արամբ ի քրմաց կողմն ելանէր և սկսաւ կռուիլ ընդ իշխանս Հայոց։

Իբրեւ տեսին զնա զօրքն Հայոց, լքան և յերկիւ կործանեցան, զի այնպիսի էր այրն այն յաղթող և հմուտ պատերազմի և կարողի մինչ զի ամենայն իշխանքն Հայոց դողային ի նմանէ։ Եւ յանխնայ սկսաւ արեան ճապաղիս հանել և ամենայն զօրքն բարձին զաղաղակ առ իշխանն Սիւնեաց։

Իսկ նա ձայն տուեալ ասէ. Ա՛յ Գայլակորիւն. յիշեցեր զքաջս հօր քո և ի նոյն շողակերութիւն դարձար։ Իսկ նա պատասխանի ետ և ասէ ցնա. Ա՛յ արծուոյ ձագ, թեւօքդ ես հպարտացեալ՝ բայց եթէ ի չար ականատացս անկանիցիս՝ ես ցուցանեմ քեզ զիմ զօրութիւնս։

Եւ իշխանն Սիւնեաց չհանդուրժեաց առ թշնամանսն և յարձակեալ ի վերայ նորա, եհար մրճով ի վերայ սաղաւարտին և կտրեալ զնա ի զօրացն՝ փախստական արար զնա ի վերայ լերինն ընդ արեւելս կոյս։ Եւ հանեալ զնա հանդէպ իննակնեան վանացն՝ դանակաւն կտրեաց զգլուխ նորա։

Եւ զմարմինն գահավէժ արարեալ, ասէ. Տեսցեն զքեզ անդեղք, և գիտասցեն եթէ արծուոյ է հարեալ նապաստակդ։ Եւ ինքն դարձաւ, և մինչեւ այսօր Արծուիք անուն տեղւոյն, Տես էջ ԾԶ-ԾԷ. Զենոբ Գլակ։

*
* *

## Բ. ՀԱՏՈՒԱԾ

Այլ զօրքն Հայոց իբրեւ լուան զձայն գուժին ամենեքեան անդ ի բլուրն հասանէին։ Իսկ Արձանն յառաջ մատուցեալ՝ սկսաւ թշնամանել զիշխանս Հայոց եւ ասէ. յառաջ մատիք, ո՞վ գնդակորդյաք եւ ուրացողք զ՚այրենի աստուածս եւ թշնամիք բարեփառին Դիանեայ։ Ո՞չ գիտէք եթէ այսօր Դիանէ ի պատերազմ ելեալ է ընդ ձեզ եւ մատնելոց է կուրութեամբ։

Իսկ իշխանն Արծրունեաց ի մէջ անցեալ. ասէ. Ո՛վ որ խրոխտաս ի վերայ մեր, եթէ վասն աստուածոցն մարտնչիս՝ սուտ ես. եւ եթէ վասն երկրիդ՝ բնաւ իսկ անմիտ ես, զի աստ են իշխանն Անգեղ տանն եւ Սիւնեաց տանն եւ այլք ի պատուաւորացն՝ զորս դուք իսկ ճանաչէք։

Եւ Դեմետր, որդին Արձանայ ասէ. Լուարուք մեզ, իշխանքդ Հայոց. այս քառասուն ամք են զի ծառայեմք մեծի աստուածոցն եւ գիտեմք զզօրութիւն նոցա ընդդէմ թշնամեացն. զի ընդ թշնամիս պաշտօնէից իւրեանց՝ ինքեանք մարտնչին։ Արդ, մեք պատերազմաւ ընդդիմանալ ձեզ ո՛չ կարեմք. զի այս տուն է թագաւորին Հայոց եւ դուք՝ իշխանք նորա։

Բայց այս ձեզ յայտնի լիցի զի թէպէտ մեք ձեզ յաղթել ոչ կարեմք, սակայն լաւ է այս օր մեռանել մեզ ի վերայ աստուածոցն մերոց, քան զտաճար նոցա ի ձէնջ ապականեալ տեսանել սրով եւ զկեանս ատեցաք եւ զմահ՝ սիրեցաք։ Բայց որ իշխանդ ես Անգեղ տան՝ յառաջ մատիր զի մենամարտեսցուք ես եւ դու։

Յայնժամ ի մէջ անցեալ Արձանն եւ իշխանն Անգեղ տան, սկսան անցանել շուրջ զմիմեամբք, եւ աճապարեալ Արձանն ե՛ար տիգաւ ի վերայ բարձից նորա եւ մերձ տարաւ յընկենուլ զնա։ Յայնժամ իշխանն ի վերայ դարձաւ եւ ասէ. Դիտեա զայս, Արձան զի տեղւոյս այս Արձան են կոչելոց եւ քեզ արժանանալ պիտի այս օր ի տեղւոջս յայսմիկ։

Եւ ի վեր ամբարձեալ զձեռն իւր՝ իջուցանէր զսուրն ի վերայ աջոյ թիկանցն, եւ ի բաց ձգէր զպարանոցն հանդերձ ձախ թիկամբն եւ ոտամբ։ Եւ նորա յերկիր թաւալէր եւ կուտեցին արձան ի վերայ նորա եւ կայ ի թաղման ի նմին տեղւոջն՝ որ եւ դեռ Արձան կոչեն անունն լերինն մինչեւ ցայս օր. էջ ԾԴ. Զենոբ Գլակ։

*
* *

### Գ. ՀԱՏՈՒԱԾ

*Իսկ Թագաւորն հիւսիսոյ առեալ զզօրսն իւր, գնաց ի Հաշտենից տափարակն, և առաքեաց թուղթ առ Տրդատ՝ թէ եկ ի վաղիւն տացուք պատերազմ և եղիցի օր յաւիտենական ի մէջ երկոցունցս, կամ տացես զիշխանսն իմ, և հարկս հնգետասան տարւոյ, ապա թէ ոչ, քանդեմ զերկիրդ քո սրով և գերութեամբ և մահուամբ։ Արդ ըստ այդմ արա զպատասխանիսդ։*

*Եւ ընթերցեալ զթուղթն, ոչ արար նմա պատասխանի, այլ յարուցեալ գնաց երեսուն հազար արամբք ի պատերազմ, և երթեալ յանդիման նոցա իջեւանեցաւ ի Մուշեղամորգն Հաշտենից։ Եւ ի վաղիւն սկսան ռազմն գործել և ճակատ յօրինել, և փողոցս թողեալ պատերազմին դրունս երկու, և դռնապահս տեղեացն զԲագրատունեաց իշխանն կացուցանէր։ Իսկ զաջ թեւն զօրուն տայր ի ձեռն իշխանին Սիւնեաց, և զահեակ թեւն ի ձեռն իշխանին Անգեղ տան։ Իսկ զգահերէց իշխանսն կացոյց թիկնապահս իւր. և այնպէս յօրինեցան երկոքին ճակատքն, և պատրաստեցան ի խումբն։*

*
* *

### Դ. ՀԱՏՈՒԱԾ

*Զայն բարձեալ արքայն հիւսիսոյ, ասէր. Արքայդ Հայոց, ինձ մատիր։ Եւ իբրև եկին ընդդէմ իրերաց, սկսան իբրև զմրճաւորս քարահատաց, կամ իբրև զուռնածս՝ որ պատեն զշանթս հրայրեացս, մինն առնոյր և միւսն իջուցանէր։ Քանզի արքայն հիւսիսոյ մեծահասակ էր և կարող իբրև զՏրդատ. և բազում կոփեալ միմեանց, ոչ ինչ եղև։*

*Բայց սկսաւ պակասիլ արքայն հիւսիսոյ. և գիտացեալ եթէ վնասելոց է, և քանզի ճօպանաւոր էր՝ աճապարեաց և ձգեաց զճօպանն, և արգել զաջ թեւն ընդ պարանոցն և փութանակի քարձաւ և կղթեաց զճօպանն, մինչ զի և չկարաց բնաւ շարժել զձեռն Տրդատ։*

*Եւ մորակեալ զկուշս երիվարին զկնի գեղուեհոնին, այնպէս փութացեալ մինչ զի ոչ ետ քայլել նմա առաջի իւր տասն քայլ։ Իբրեւ եհաս նմա, ասէ. Կատաղի շուն, խառանեցեր զկնի քո ջլացդ։ Եւ ամբարձեալ զաջ ձեռն իւր ի վեր իջուցանէր զսուսերն*

ի վերայ ձախոյ թիկանն Դեղաւեհոնի. և անցուցեալ ընդ գօտին, և զօղն երիվարին հանդերձ գլխովն բաժանեալ յերկիր ձգեաց։

Եւ այն էր զարմանալին, զի գլուխն և աջ ձեռնն և աջ ոտն ընդ միմեանս, և այն երիվարին ընդ մէջ հերձեալ թաւալէին։ Զոր իբրև ետես իշխանն Անգեղ տանն ի վերայ անկեալ զահեակ թեւն, և ձայն տուեալ, ասէր. Իշխանդ Սիւնեաց, ի մէջ ած զգունդ այծուցդ, զի անկաւ Հոնն քօշն։

Իսկ նա ընդ մէջ անկեալ, եհատ զզօրսն. և անցեալ յաջ թեւապեան հիւսիսոյ, ասէ. Աստեղահատ, ինձ մատիր և մենամարտեսցուք։ Եւ մատեան իրերաց, և աճապարեաց Հիւսիսայինն, և կտրեաց զգլուխ երիվարին Սիւնեաց իշխանին։ Իսկ նորա անկեալ զսուրն, եհատ զառաջին ոտն երիվարին Հիւսիսայնոյ. և երկոքեան զոյգ ի վայր անկան բուռն հարեալ զմիմեանց։

Իսկ մին ի ծառայից Սիւնեաց իշխանին մերձ տուեալ, ընկեց զամն ի վայր յերիվարէն. մատուցանէր նմա, ասելով. Ա՛ռ, Տէր և հեծիր։ Եւ աճապարեալ նստաւ ի վերայ նորա, և դարձեալ կտրեաց զգլուխ Հիւսիսայնոյ, և ձգեալ ի մախաղն՝ դարձաւ։

Եւ իբրև ետես իշխանն Անգեղ տան զերսն՝ որ եղեն, և զզօրսն զի փախստական գնացին, ապա ձեռն ի գործ արկեալ՝ բախեցին պատերազմունս ընդ իրեարս. զոր և թագաւորին զհետ մտեալ մինչև ի մուտս արեգականն, յանխնայ կոտորեաց որք դիմադարձն գտան։

Եւ իբրև ի նուրբ տեղիսն դիմեալք, օթեւանս խնդրէին առնել առ եզերբ գետոյն փոքր՝ որ անցանէր ընդ գաւառն Հաշտենից, ուր երթայ ընդ արեւելս հիւսիսախառն. և բնակեցան նոքա յայնմ կողմանէ և սոքա յայսմ կողմանէ։ Զ. Գլ.

*
* *

## Ե. ՀԱՏՈՒԱԾ

Իբրև այգն մերկանայր զառաւօտն, պատրաստեցան մնացեալ զօրքն Հիւսիսականացն, և յարձակեցան ի վերայ զօրացն Հայոց, և սկսան կոտորել յանխնայ։ Եւ այնչափ յանդգնեալ, մինչ զի զիշխանն Ծոփաց ի մէջ առեալ բազմօք պատեցան զնովաւ, և ի նեղ անկեալ, մինչ զի աղաղակեաց ասելով։

Ո՞ւր ես, իշխանդ Սիւնեաց, հաս ինձ ի թիկունս։ Եւ նորա

*հասեալ իբրեւ զորաթուիչ արծիւ, հալածեաց զօրսն ի նմանէ։ Եւ իբրեւ ետես եթէ խոցեալ էին չարաչար ընդ երանօք նորա, առեալ զձեռանէ նորա՝ տարաւ ի բանակն և անդէն մեռաւ։*

*Բայց զօրապետն Հիւսիսային, որ էր թագուցեալ զկերպարանս իւր, ի գիշերին արծարծեալ ըզմնացեալ իշխանսն գնալ ի վերայ արքային, արարին որպէս խորհեցանն։ Ցանկարծ անապարեալ ի վերայ խորանացն արքային, կտրեցին զթեւսն ի միմեանց. և հասեալ ի վերայ արքային, խուն մի և ըմբռնեալ էին զարքայն՝ եթէ ոչ էր դունդ մի խուճապեալ Մեհնունեացն արիք, մինչ ել արքայ ի դրասպակս զօրուն Հիւսիսոյ։*

*Եւ դիմահարեալ միմեանց արքայն և զօրապետն, մինչ զի կարեվէր խոցեաց պահեակ թեկն Տրդատայ արքային որ բարկացեալ մոմեալ իբրեւ զառիւծ յարձակեցաւ ի վերայ նորա, և հարեալ զգլուխ նորա յերկուս ճեղքեաց, և ինքն առաջի եղեալ զզօրսն փախստական արար և տարաւ մինչեւ ի կողմանս Հարքայ, և այլ ումանք հետամուտ եղեալ գնացին մինչեւ ի Կարնոյ քաղաք։*

*Իբրեւ դարձան թագաւորն և իշխանքն յԱրձանն՝ իջին առ Սուրբն Գրիգոր ի տեղին ուր էր Ս. Կարապետ, մեծ գոհութիւն Աստուծոյ և պատարագս ողջակիզաց մատուցանէին ազիտակ զուարակաց եւ Ըռխազաց եւ բազում գառանց. և աղքատաց բազում ողորմութիւնս առնէին։ Եւ համար արարեալ՝ գտաւ սպանեալ ի մերոցս հազար և ութսուն. իսկ ի նոցանէ՝ հնգետասան հազար ինն հարիւր քառասուն և երկու. Ջենոբ Գլակ.*



# ԿԱՆԽՈՐՈՇ ՎՃԻՌ

Վճիռ արձակուելէն ետքը՝ այլեւս դատաստան չի մնար․ մեր երանաշնորհ նախնեաց մատենագրութիւնը արդիացնողներու խոհականութեան կը թողունք այս ճըշմարտութեան հաւանիլ կամ ոչ։ Նախ որչափ գիտենք պէտք է՝ նպաստաւոր և աննպաստ, ամէն առարկութիւն անխտիր մտիկ ընել և թողուլ որ մատենագրին վճիռը հաստատուի․ անկէ ետքը կարելի է հեղինակին ճշդուած կացութեան պատշաճեցնել գրական օրէնքին տրամադրութիւնը։

Թող ներէ ուրեմն մեզ Յարգելի Գր․ Խալաթեան գիտել տալ թէ այս արդարութեան տարրական սկզբունքը կ'անտեսէ երբ ՀԱՄԵՄԱՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԵԱՆ չսկսած՝ կը յայտարարէ թէ «Ինձ եւս հակամէտ է այն հայեացքին ըստ որում Զենոբի գրուածը զեղծ է․ Դարու մի Հայի կարկասանք համարելու է, եթէ ոչ աւելի եւս յետին Ը-Թ դարու գործ․ Տե՛ս էջ 1 տող 15.»

Ետքի ըսելիքը առաջ է ըսեր․ այս կանխադատութեան հետ նոյն է բանաւէրին եզրակացութիւնը․ քանի որ կը վճռէ թէ «Վերջապէս յետ մղելով Զենոբի Պատմութիւնը Դ․ Դարից դէպ ի Ը-Թ Դար կարող է մատնանիշ ընել այն հեղինակի վրայ, որին հաւանականօրէն պատկանում է այդ անվաւեր գրուածքը. դա՝ Տարօնոյ Պատմութեան հեղինակը Մամիկոնեան Եպ. Յովհանն է. Տես էջ 77, տող 31.»

Բանադրուած նիւթին թերն ու դէմը չի պարզուած,

անոր վրայ արձակուած ամէն վճիռ միակողմանի և կան-
խորոշ է։ Յարգելի գրադատին աճապարանքը ո և է
չքմեղանք չունի, կրնար սպասել մինչև որ խնդիրը
լուսաբանուէր։ Այլ է պարագան եթէ հասարակութեան
կը ներկայանայ ոչ իբրև քննադատ, այլ իբրև դատա-
խազ. բայց այն ատեն ի հարկէ ուրիշ մը պէտք է քըն-
նէ խնդիրին միւս երեսը ի սէր արդարութեան։

Եւ սուտգիր Համեմատական Ուսումնասիրութիւնը
կարդացողը շուտ կը համոզուի թէ զայն պատրաստողին
կանխակալ կարծիքը արգելք եղած է իրեն Զենոբ Գլակի
մասին անվերապահ քննութեան մը ձեռնարկելու։ Նոյն
իսկ կարելի է հաստատել թէ անկողմնակալ ոգւով չէ
կշռած իր արժեցնել մշակած փաստերը. զայս ապա-
ցուցանելու դժուարութիւն չկայ։

Լազարեան Ճեմարանի Հայ լեզուի ուսուցչապետը
սա ծանօթութենէն կը մեկնի թէ «Հ. Յովսէփ Գաթրճեան,
Սրբազան Խորհրդամատոյցի Մաս Բ.ի մէջ, յիշելով Ս.
Եփրեմայ աշակերտ Զենոբին, գրում է. «Ո՞չ այն Զենոբ
որ իր համանուն գրով Հայ կարկատանք մըն ի Է. դարու.»
Տես էջ 1 ծանօթութիւն 2.»

Բայց կարկատանքն ի՞նչ է. հինին վրայ նորէն
ձգուած կտոր չէ՞ միթէ. ուստի և այս նկատումէն կը
հետևի թէ ի հարկէ կարկատանքին տակ հին գրութիւնը
գոյութիւն ունի։ Դարձեալ Հ. Յովսէփ Գաթրճեան
կ՚ընդունի Ս. Եփրեմայ աշակերտ Զենոբի մը գոյու-
թիւնը, ուրեմն առնչութիւն մը կար անշուշտ ո և է
կարկատանքի և ո և է Զենոբի անուան մէջտեղ։ Ի՞նչ էր
վաւերաթուղթ կարդախօսին դիտաւորութիւնը, կամ
եթէ նախագոյն հարազատ վաւերաթուղթ կար՝ ո՞վ չառ
ունէր անոր գոյութենէն։ Ուսումնասիրողին կը մնար
սրբել Զենոբ Գլակը կարկատողին չարժանիքը և նոյ-
նիւ կը սահմանէր անոր ինքնութիւնը։

Յարգելի Դր. Խալաթեան անգամ մը միայն կը փորձէ այս ուղղութեամբ հետազօտութիւն կատարել. բայց այնքան նախապաշարուած է Յով. Եպ. Մամիկոնեանի դէմ որ տեսնելով թէ իր նախասիրած հետքին վրայ չի գտնուիր՝ խելոյն ձեռնթափ կ'ըլլայ: Երբէք մտքէն չանցնիր թէ իրական վաւերաթուղթեր գոյութիւն ունեցած կրնան ըլլալ յատկացեալ՝ Յով. Եպ. Մամիկոնեանէն տարբեր անձերու, իսկական չանէր պաշտպանելու եւ աղաւաղեալ ժամանակին երկարութենէն:

Այսպէս, կը կարծէ թէ Յով. Եպ. Մամիկոնեան «Իր վանքին տասներկու մեծամեծ աւանացեղ ապահովել ջանալով. հնագոյն նշանաւոր անձնաւորութիւններու անուամբ կեղծ վաւերաթուղթեր պատրաստած ըլլայ: Տես կէ 61.» Բայց կը մոռնայ թէ նախ այդ ակնարկուած տասներկու մեծամեծ աւանագիւղերն ամբողջովին անուանելու հարկ չէ տեսած Յով. Եպ. Մամիկոնեան եւ անոնց ամբողջութիւնը գտնելու համար մեզ կը ղրկէ այլ վաւերաթղթի որ կը կոչուի Գիր իշխանաց Մամիկոնենից. ուստի Զենոբի հաւաքած տասը պատճէններուն նպատակը՝ Յարգելի քննադատին Յով. Եպ. Մամիկոնեանի վերագրուած նպատակէն բոլորովին տարբեր է:

Նոյն իսկ Զենոբ Գլակէ կ'արտատպենք այն հատուածը որոյ կ'ակնարկէ Յարգելի Դր. Խալաթեան, որպէս զի մեր յայտարարութեան մասին տարակոյս չի մնայ այսպէս: «Եւ Ս. Գրիգոր հիմնարկեաց զեկեղեցին եւ անդ եդող պաշտօնեայս եկեղեցւոյն զԱնտոն եւ զԿրօնիդէս: Եւ զԵպիփան՝ հայր հաստատեաց վանաց ընդ ձեռամբ իւրով եւ երկոտասան դասակերտս ետ նմա, յորոց մին Կուառս եւ Մեկսի եւ Արեխ եւ Մուշ, եւ Խորնի եւ Կեղ՛ եւ Բազու: Զանգի աւանք են սոքա մեծամեծք որպէս կայ ի գրի իշխանաց Մամիկոնենից. Տես կէ 37 տող 1 Զենոբ 1832 Վենետիկ:»

Այս յետոյ մեր աշխատասիրութեան յաջորդ մասին մէջ պիտի տեսնենք թէ Զենոբ Գլակի նիւթն է ԱՍՈՐՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆը և հաւաքուած տասը պատճէններուն տրամադրութիւնը նոյնն է, այսինքն քաղաքային և հոգեւոր իշխանութեանց կողմանէ շնորհուած վաւերաթուղթերու զօրութեամբ՝ Քրիստոնէութեան ի Հայս նոր սկսած ժամանակ, Տարօն եկող Ասորի կղերին յատկացնել Ս. Կարապետի վանքը և անկէ կախում ունեցող սեպհական կալուածներ։

Արդ «Ամենայն գաւառաց Հայոց եպիսկոպոսունք պիտոյ են և քահանայք։ Զի թէպէտ ոմանք ուստեք ուստեք եկեալ են ժողովեալ, բայց զի՞նչ են այնոքիկ առ 620 գաւառս Հայոց։ Զի դեռ մանկունք երկրիս ի դպրոց են և ոչ ոք ի նոցանէ բաւական է քահանայութեան։ Արդ ամենայն վստահութեամբ փութացարուք գալ զկնի արանցդ զոր յղեցաք առ ձեզ։ Եւ եթէ գայցէք, զամենայն երկիրդ Եկեղեաց և Հարքայ ձեր առաջի առնեմք, յոր վիճակի և բնակեսջիք ձեր եղիցի և որք զկնի ձեր. Տես էջ 13, տող 4–18. Զենոբ 1832 Վենետիկ։»

Եւ Ասորի կղերը անգամ մը մեր երկիրը գալէն վերջ՝ իր գլուխ ունենալով Զենոբ, այնքան նախանձախնդիր եղաւ իր այս կալուածատիրական իրաւանց որ նոյն իսկ այդ սեպհականութեանց պարգեւատուն, զՍ. Գրիգոր Լուսաւորիչ, երբ եկաւ յԱւետեաց բլուրն առ Անտոն և Կրօնիդէս որպէս զի (ի քարայրին[1] որ ի հարաւակողմն արեւելեան Քարքէոյ լերան գտանէր և ուր էին Դարափոս[2] խուցք նոցա,) ճգնէր իր ծերութեան

(1) Տես էջ 9 տող 13 Պատ. Տարօնոյ Ց. Մ. 1832. Վենետիկ։

(2) Տես էջ 41 տող 21 Զենոբ Գլակ 1832. Վենետիկ։

օրերուն մէջ, զինքը առօք փառօք չորս ամիսէն վռնտեցին ըսելով «Գնա յանապատ յանմարդաբնակ տեղիս. Տես էջ 7 տող 4 Պատ. Տարօնոյ Յով. Եպ. Մամիկոնեան 1832 Վենետիկ։

Արդարեւ Ասորիք յաջողեցան երկար ատեն Ս. Կարապետի վանահայրութեան մէջ իրարու յաջորդել, և իրենց ազգին վերապահել այս հարուստ մենաստանին կալուածոց վայելումը. մինչեւ որ Հայ կղերական տարրը յետ ժամանակաց զօրանալով սկսաւ առաւելապէս դեր մը կատարել և վերջապէս «Հայր Թոդիկ փոխեաց զամենայն կարգս եւ զԱսորոց ցեղսն բնաւ հալածական արար ի վանացն. Տե՛ս էջ 59 տող 10. Յիշատակարան Պատ. Տարօնոյ Յով. Եպ. Մամիկոնեան 1832 Վենետիկ։

ԱՍՈՐԻ ՎԱՆԱՀԱՅՐՔ Ս. ԿԱՐԱՊԵՏԻ ՎԱՆՈՒՑ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Ա. Զենոբ | տարի | 20 | ԺԱ. Ներսէս | տարի | 7 |
| Բ. Եպիփան | » | 30 | ԺԲ. Յովհաննէս | » | 3 |
| Գ. Ստեփաննոս | » | 15 | ԺԳ. Սահակ | » | 5 |
| Դ. Եփրեմ | » | 28 | ԺԴ. Յովսէփ | » | 6 |
| Ե. Յովհաննէս | » | 10 | ԺԵ. Բարթողիմէոս | » | 4 |
| Զ. Ղիմինդոս | » | 10 | ԺԶ. Աթանաս | » | 10 |
| Է. Մարկոս | » | 18 | ԺԷ. Կոմիտաս | » | 8 |
| Ը. Կիւրեղ | » | 22 | ԺԸ. Ստեփաննոս | » | 6 |
| Թ. Գրիգոր | » | 6 | ԺԹ. Բարսեղ | » | 8 |
| Ժ. Անդրէաս | » | 11 | Ի. ԹԱԴԷՈՍ (Թոդիկ) | | 30 |

Այսպէս Ասորի և Հայ կղերին մէջտեղ Ս. Կարապետի վանուց սեպհականատիրութեան կռիւ մը կար որ վերջացաւ Հայոց յաղթանակով։

Ուրեմն Յովհան Եպ. Մամիկոնեան այս այլամերժ և օտարատեաց ընթացքին արձագանք ըլլալէն վե՞րջն ալ դեռ նոյն օտար Ասորի կղերին ի նպաստ խմբագրուած կեղծ վաւերաթղթերու յերիւրողը կը հռչակուի։ Այս թուղթ կեղծելու վարկածը որչափ անպատուաբեր է Հայ եպիսկոպոսի մը համար նոյնչափ ալ անհիմն է։ Եթէ իրեն Յով. Եպ. Մամիկոնեանի ձեռք՝ շատոնց մէկ անգամէն կը ջնջէր մէջտեղէն կը վերցնէր այն փաստագրերը որ հայ կղերական դասակարգի իրաւունքները միշտ տարակուսական ենթակայ կը դարձնէին։

Ուրեմն ինչպէս կըլլայ որ Յով. Եպ. Մամիկոնեան Ասորց շահը պաշտպանող սոյն պատճէն վաւերաթղթերը չէ փճացուցեր։ Գոնէ այդ մասը մենք իրեն դիւրացնենք։ Յով. Եպ. Մամիկոնեան միամիտ եկեղեցական մըն էր ուստի զգաց երկիւղալի պատկառանք մը Հայ Քրիստոնէական Եկեղեցին սկզբնաւորողին յիշատակին հանդէպ որ իրեն համար նուիրական եղող Ս. Գրիգոր Լուսաւորչի գրիչէն ելած թուղթերը մէջտեղէն վերցնելու արգելք եղաւ։

Եւ ահա ճիշդ այդ նպատակով Ասորիք հին գրչագիրներու ճակատը նոյն իսկ Սրբոյն Գրիգոր Լուսաւորչի պատկերը կը զետեղէին իրենց ի նպաստ տրուած պատճէն վաւերաթղթերը անձեռնմխելի դարձնելու համար։ Բայց որպէս զի ձրի ենթադրութիւն չի կարծուի՝ նոյն հայրապետին նուիրական պատկերը Կ. Պոլսոյ Զենոբ Գլակի 1708ի տպագրութենէն նմանահանելով կը ներկայացնենք մեր ընթերցողաց։



Պատմեսցի յառաւօտու զողորմութիւն քո․
և զճշմարտութիւն քո 'ի գիշերի։

## Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ

Արդ Զենոբ Գլակի վաւերականութեան մասին խնդիրը լուսաբանելու յարմարագոյն եղանակը արդեօք Զենոբի 1832ի տպագրութիւնը այսինչ այնինչ արտաքին հեղինակներու հետ բաղդատե՞լը պիտի ըլլայ․․․

Արդէն Յովհան Եպ. Մամիկոնեան այս այլամերժ և օտարատեաց ընթացքին արձագանք ըլլալէն վե՞րջն ալ դեռ նոյն օտար Ասորի կղերին ի նպաստ խմբագրուած կեղծ վաւերաթղթերու յերիւրողը կը հռչակուի: Այս թուղթ կեղծելու վարկածը որչափ անպատուաբեր է Հայ եպիսկոպոսի մը համար նոյնչափ ալ անհիմն է: Եթէ իրեն Յով. Եպ. Մամիկոնեանի միտք՝ ատոնց մէկ ան-գամէն կը ջնջէր մէջտեղէն կը վերցնէր այն փաստագրերը որ հայ կղերական դասակարգի իրաւունքները միշտ սա-րակուսական ենթակայ կը դարձնէին:

Արդէն ինչպէս կըլլայ որ Յով. Եպ. Մամիկոնեան Ասորոց շահը ապահովող սաղ պատճէն վաւերաթղթե-րը չէ փճացուցեր: Գոնէ այդ մասը մենք իրեն դիւ-րացնենք: Յով. Եպ. Մամիկոնեան միամիտ եկեղեցա-կան մըն էր ուստի զգաց երկիւղալի պատկառանք մը Հայ Քրիստոնէական Եկեղեցին սկզբնաւորողին յիշատակին հանդէպ որ իրեն համար նուիրական եղող Ս. Գրիգոր Լուսաւորչի գրիչէն ելած թուղթերը մէջտեղէն վերցնելու արգելք եղաւ:

Եւ ահա ճիշդ այդ նպատակով Ասորիք հին գրչա-գիրներու ճակատը նոյն իսկ Սրբոյն Գրիգոր Լուսաւորչի պատկերը կը զետեղէին իրենց ի նպաստ սարքուած պատճէն վաւերաթղթերը անձեռնմխելի դարձնելու համար: Բայց որպէս զի ձրի ենթադրութիւն չի կարծուի՝ նոյն հայրա-պետին նուիրական պատկերը Կ. Պոլսոյ Ջենոր Դպիրի 1708ի տպագրութենէն նմանահանելով կը ներկայացնենք մեր ընթերցողաց:



Պատմեցից յառաւաւտու զողորմութիւն քո․
և զճշմարտութիւն քո ՚ի գիշերի։

## Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ

Արդ Զենոբ Գլակի վաւերականութեան մէջէն խըն-դիրը լուսաբանելու յարմարագոյն եղանակը արդեօք Զենոբի 1832ի տպագրութիւնը այսինչ այնինչ արտա-քին հեղինակներու հետ բաղդատե՞լը պիտի ըլլայ․․․

Ինչպէս կ'ափսոսանք այս մասին, 1832ի տպա-գրութեան բանասիրական արժէքը կը սահմանուի Վենե-տիկի վանքի երբեմնի բազմահմուտ և արդիւնաշատ Մխիթարեան Հարց կողմանէ ամենայն անկեղծութեամբ. այսպէս:

«Որպէս գրեալ առաջնոյն շարագրածս ի ձեռն գրչա-գրաց համեմատս առ մեզ. եւ առաւել սա ժամանակաց երկայնութեամբ աղաւաղեալ գտանի: Զտպագիրս զայս ա-րարաք, հնգեակ օրինակաց բաղդատութեամբ ըստ կարի ուղղագրեալ: Ուրեք ուրեք էին եւ հատուածք ինչ, որ թէ-պէտ յերիս եւ չորս օրինակս պակասէին, այլ մեք ոչ թո-ղաք զայնս ի բաց: Մանաւանդ զի երեւի ուրուք ի յետնոց զհատուածսն զայնոսիկ յաւելեալ՝ ագահելով ի ժամանակին եւ ի մագաղաթ: Բայց թէպէտեւ համարիցին հատուածքն այն յետոյ յաւելեալ, այլ կամ նոյն իսկ մատենագրին եւ կամ ուրուք ի յաջորդաց նորա: Տես Զեկոյց Զենոբ 1832. Վենետիկ.»

Ահա, այս «հատուածքն այն համարիցին յետոյ յա-ւելեալ» բռնած տպագրութեան վրայ է որ Լազարեան Ճեմարանի Հայ լեզուի ուսուցչապետը կ'երթայ կուգայ և մեր բաղդէն իր համեմատական ուսումնասիրութեան խախուտ հիմը կը զետեղէ: Ամէն մարդ իրաւունք ունի պնդելու թէ Զենոբի առաջին հեղինակներու հետ նմա-նութիւն ունեցած հատուածները ճիշդ անոնք են որ 1832ի տպագրութեան ծառայող հինգ օրինակներէ չորսին մէջ չկային և յաւելուած կը համարուէին: Ուստի աւելի աղէկ չէ՞ր ըլլար որ փոխանակ առաջին հեղինակներու հետ բաղդատելու՝ Զենոբ Գլակի այլ և այլ գրչագիրները իրարու հետ բաղդատէր և ստուգագոյն բնագիր մը որո-նէր իր համեմատական ուսումնասիրութեան:

Չենք ընդունիր որ Սարգիսի Դր. Խալաթեան իր սովորական լրջութեամբ վարուած ըլլայ երբ նոյնիսկ իր

դատախօսած «Լազարեան Ճեմարանի Մասնագիտական դասարանների (Լիկէոնի) Մատենադարանում կայ Զենոբի Պատմութեան մի բաղդատութիւն (ձեռագիր) Ս. Էջմիածնի 5 ձեռագիր եւ 2 տպագրեալ հրատարակութիւնների հետ աշխատասիրութեամբ Գր. Ա. Գիտանեանցի 1891 թ.) Տե՛ս էջ ծանօթ. 3» Եւ այդ թանկագին օժանդակէն չօգտուիր իր Համեմատական Ուսումնասիրութեան մէջ։

Արդ քանի որ Գր. Ա. Գիտանեանցի շահեկան ձեռագիրը Լազարեան Ճեմարանի մասնագիտական դասարաններու Մատենադարանին մէջ մնալու դատապարտուած է. մենք՝ մեր սահմանափակ միջոցներուն մեզ արտօնած չափով, պիտի ջանանք Զենոբ Գլակի այլեայլ ժամանակի գրչագիր օրինակաց իրարու հետ համեմատելու կարեւորութիւնը երեւան հանել, երկու տպագիր Զենոբ Գլակներէ մի քանի էջ իրարու հետ բաղդատելով։

Արդէն տեսանք թէ Սրբոյն Գրիգոր Լուսաւորչի պատկերը 1708 կ. Պոլսոյ տպագրութեան ճակատը զարդարելով կը հովանաւորէ ամբողջ գիրքը և անոր վաւերականութեան կնիքը կուտայ, ինչ որ կը պակսի 1832ի Վենետիկեան տպագրութեան սկիզբը։ Հիմա մեր գրքին համեմատական էջերուն վրայ բաղդատութեան դնենք 1708 և 1832ի տպագրութեանց կողքերը. այսպէս




Այս զուգադրուած կողքերու նմանահանութիւնը շատ նշանակալից է և կը հաստատէ թէ երբ մեզի ժամանակով մերձաւոր տպագիր օրինակէն գիտենք Ջենովի նախատիպ օրինակին՝ նոյն համեմատութեամբ բնագրի ընթերցուածոց իմաստի կնճռոտութիւնները կը պարզուին։

ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

# ՆԱԽՆԵԱՑ

---

## ԶԵՆՈԲ ԳԼԱԿ ԱՍՈՐԻ

*Արդարեւ, Վենետիկի տպագրութիւնը պատրաստող պատուական Մխիթարեանք դժուարութիւն կը կրէին իրենց հինգ գրչագրաց մակագրի առեղծուածային ԶՈՐ ԹԱՐԳՄԱՆԵԱՑ ԶԵՆՈԲ ԱՍՈՐԻ հատուածը, և գրքին տպագրութեան սկիզբը իրենց դրած Զեկոյցին մէջ տոխպ-*

†

# Պ Ա Տ Մ Ո Ւ Թ Ի Ւ Ն

## † ԵՐԿՐԻՆ ՏԱՐՕՆՈՅ։

Զոր գրեաց Զենոբ ասո
րւոյ Եպիսկոպոսն. Հրա
մանաւ Լուսաւորչին
Մերոյ Սրբոյն
Գրիգորի

†



Պատմական այսմիկ առ ուխ.
Ականջադրուկ թէ եղի ցխ.
Ղօղել գործոց մերոյ առձ մխ.
Տեղեակ ոմանցն առ լինի ցխ։
է Պատ

տուած էին յայտարարել թէ «երկ զբարգմանեցն ոչ փո-խանակ պատմագրելոյ առնել, եւ համարիցի զսա հայերէն գրեալ՝ ոչ ինչ կամակարել զիմաստ բանին. Տես Զենոբ էջ 5 տող 15. Զենոբ 1832 Վենետիկ.»

Այս դժուարութիւնը անմիջապէս կը հարթուի

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# Տ Ա Ր Օ Ն Ո Յ

ԶՈՐ ԹԱՐԳՄԱՆԵԱՑ

## ԶԵՆՈԲ ԱՍՈՐԻ



**Ի ՎԵՆԵՏԻԿ**

**Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ**

ՅԱՄԻ 1832 ՌՄՁԱ

1832ի տպագրութենէն 124 տարի առաջ կատարուած 1708ի տպագրութեամբ քանի որ հոն բացէ ի բաց կ'ըսուի. «Պատմութիւն երկրին Տարօնոյ զոր գրեաց Զենոբ Ասորոց եպիսկոպոսն հրամանաւ Լուսաւորչին մերոյ Սրբոյն Գրիգորի. Տես կողմ էջ 2 Զենոբ. 1708 Կ. Պօլիս:»




Բայց ինչպէ՞ս կ՚ըլլայ որ Վենետիկի Մխիթարեան բազմահմուտ Հայրք Կ. Պոլսոյ տպագրութենէն չեն օգտուիր։ Ասոր բացատրութիւնը շատ դիւրին է գտնել ժամանակին կրօնական երկպառակութեանց մէջ և այն ողբալի բաժանման մէջ որ այս գիրքին տպագրութենէն

# ԶԵՆՈԲԱՅ ԳԼԱԿԱՅ

## ԱՍՈՐԻՈՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՏԱՐՕՆՈՅ



*Պատճէն առաջին սրբոյն Գրիգորի զոր առաքեաց ի Կեսարիա առ Ղեւոնդիէ*

ԶԱՌ Ի ՎԵՐՈՒՍՏ *պատուեալ և 'ի մարդկանէ գովեալ, երիցս երանեալ տեառն և*

*տարի մը վերջ 1833ին տեղի ունեցաւ Հայ կաթոլիկ հասարակութեան զատ պատրիարք մը տրուելով և անշուշտ՝ այդ տաք կռիւներու միջոցին, պէտք չի կրնային իրենց ուղղափառութեան արատ բերել օգտուելով Պաղտասար դպրի հսկողութեամբ տպագրուած Զենոբ Գլակէ։*

կը հաստատուի Զենոբ Գլակի վաւերական ըլլալը և սակայն ձեռնամուխ գրիչներու կողմէ յետոյ խեղաթիւրուիլը։

Բայց յարգելի Գր. Խալաթեան՝ որ Զենոբ Գլակի վրայ քիչ մը արտորնօք անվաւերութեան կանխորոշ վճիռը կ'արձակէ, ինքն ալ շատ լաւ գիտած է թէ «Ուրիշներից Անդրէի եւ Ղուկասու Աշխարհների պատմութիւնը ճոխացուեց է Պետրոս եւ Պօղոսի մասունքներով եւ սրանց ի դէպ թէ անդէպ Հռոմի յիշատակութիւնը Զենոբի էջ 11, 14, 16, 17, 23, 24 եւ 49 եւ Պօղոս Պետրոս առաքեալների Աշխարհների Հայաստան բերուելու աւանդութիւնը որպէս եւ առաջաւորաց պահոց ՀՌՈՎՄԱՅ ՍԵՂԲԵՍՏՐՈՍ Հայրապետից ընդունուիլը Թ-Ժ դարու ազդեցութեան նշան համարելու է, Տես էջ 71-72:

Միայն թէ մեր ըսելիքը ինք ըսելէն ետքը և ճշմարտութեան այսքան մօտենալէն վերջ՝ չենք գիտեր ինչո՞ւ յանկարծ Լազարեան վարժարանի հայ լեզուի ուսուցչապետը «չէ կանգնում այս առթիւ երկար քննութեան մէջ մտնել. Տես էջ 71:» Ուսկի՞ց կը քաշուի, ուսկի՞ց վախնալիք տեղ մը ունի։ Չէ՞ մի որ փոխանակ Վիեննայի՝ կարելի էր իր գիրքը Թիֆլիզ հրատարակել և Հանդէս Ամսօրեայի տեղ Արարատ կրնար իր յօդուածները հիւրընկալել։

Եւ գիտնալէ վերջ թէ՝ «Ս. Էջմիածնայ մատենադարանում ԺԴ դարից մնացած գրչագիր Զենոբ Գլակ է գտնվում. Տես էջ 14 ծանօթութիւն:» Արդեօք ճիշդ ա՞յդ պատճառաւ եկեր գացեր անկէց 600 տարի ետքը տպագրուած գրքի մը վրայ հիմներ է իր կանխորոշ վճիռը. ափսո՜ս գիրք մը՝ որուն աղաւաղուած ըլլալուն կը վկայեն նոյն իսկ զայն հրատարակողներ իրենց զեկոյցին մէջ։

Արդեօք Վենետիկ աւելի՞ մօտ էր իրեն քան Ս. Էջմիածին որ հինգ անթուակիր և այլայլուած օրինակ-

ներու վրայէ տպուած գիրքէ մը դատելով՝ առանց քաշուելու ի լուր աշխարհի կը հռչակէ թէ Յովհան Եպ. Մամիկոնեանն է այդ անվաւեր Զենոբ Գլակի կարկատողը։ Ո՛չ, այդպէս արդիականութիւն չըլլար. Թող ներէ մեզի դիտել տալ Յարգելի Քննադատին թէ նախ պէտք է միեւնոյն Զենոբ Գլակի այլ եւ այլ օրինակները իրարու համեմատել՝ եւ թուականով հնագոյն եւ նուազ աղաւաղուածը քննադատութեան հիմ բռնել։

Սակայն, մենք այս ամէն քննադատութեան պայմաններու զանցառութիւններէն վերջն ալ՝ ի վիճակի ենք հաստատելու թէ ոչինչ կրցած է հաստատել եւ յայտնածը հակասական գաղափարներ են միայն. ոչ գիտէ Զենոբ Գլակի ո՛ր դարու մէջ գրուած ըլլալը եւ ոչ գիտէ անոր որու կողմէ կարկատուած ըլլալը։

Իր միակողմանի համեմատական ուսումնասիրութեան ծամածուռ Լաբիւրինթոսին մէջ՝ կը հետապնդենք Լազարեան ճեմարանի հայ լեզուի ուսուցչապետը։ Դ. դարէն մինչեւ Ժ. դար ուզածին պէս եւ առաջ տարեր բերեր է Յովհ. Եպ. Մամիկոնեանի վերագրած այս գիրքը. անգամ մը կեցեր է Է. դարու վրայ, յետոյ քշուեր է մինչեւ Թ. դար, Թ. դարէն ցատկեր է Ժ. դար, հուսկ ուրեմն Է—Թ դարերու մէջտեղ տարուբերեր է։

Ո՛հ, իսկապէս տարօրինակ է Յարգելի Դր. Խալաթեանի այս ծփանքը, եւ Յովհ. Եպ. Մամիկոնեանի անունը լքնելէն ետքը՝ իրմէ կսպասուէր աւելի կտրուկ ընթացք մը։ Ո՞վ պիտի հաւատայ եթէ աչքովը չը տեսնէ եւ չը ստուգէ, հետեւաբար տարակոյսներու այս եւէջը կը ցանկագրենք ի միամտութիւն ընթերցողաց։

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՆ ՎԱԻԹԱՆԵՐ

ԳՐ. ԽԱԼԱԹԵԱՆՑԻ

Ա. էջ. 1. տող. 17. Զենոբի գրուածքը արդարև Է դարու մի հայի կարկատանք համարելու է։

Բ. Ուղղելիք և յաւելուածք. — Զենոբի գրուածքը գոնէ Է դարու մի հայի կարկատանք համարելու է եթէ ոչ աւելի յետին Ը—Թ դարու գործ։

Գ. էջ 72. տող. 8. Իմ կարծիքով Պօղոս Պետրոսի մասունքների ի Հայս բերուիլը և Հռոմայ յիշատակութիւնը ի դէպ թէ անդէպ և ՍԵՂԲԵՍՏՐՈՍ Հայրապետից ընդունուիլը Թ—Ժ դարու ազդեցութեան նշան համարելու է։

Դ. էջ 77. տող 32. Ետ մղելով Զենոբի պատմութիւնը Դ. դարից դէպ ի Է—Թ դարը՝ կարող ենք մասնանիշ ընել և այն հեղինակի վերայ որին հաւանականօրէն պատկանում է այդ անվաւեր գրուածքը, դա՝ ինքն է Մամիկոնեան Եպ. Յովհաննէն։

Հիմա ընթերցողներու դատաստանին թողունք. Զենոբ Գլակ մը կայ մէջտեղը, և չենք գիտեր ճիշդ թէ Դ դարո՞ւ կը վերաբերի, թէ Է դարու կը վերաբերի. թէ Ը դարո՞ւ կը վերաբերի, թէ Թ դարու կը վերաբերի. թէ Ժ դարու կը վերաբերի. չենք ալ գիտեր թէ Յովհան Եպ. Մամիկոնեան ինքն է գրեր թէ ուրիշը և անոր կարկատանքը ըլլալը հաւանական կը նկատենք։ Ուրեմն ինչ որոշած եղանք. կըցա՞նք ո և է վախճանի հասնիլ։

ԱՌԱՋԻՆ ՀԱՄԽՄԲԱՑՈՒԹԵԱՄԲ մը տեսանք թէ նոյն իսկ 1832ի տպագրութիւնը անվերապահ ոգւով աչքէ անցուցողը կը կռահէր թէ Գլակայ հարուստ մենաստանին սեպհականատիրութեան առթիւ վէճի մէջ էին երկար դարեր Հայ և Ասորի կղերը, թէ Զենոբի ձե-

ւամբ հաւաքուած պատճէններ կը կազմեն փաստաթղթեր որոնց կռթնելով Սարիք իրենց կալուածական իրաւունք կը հաստատեն։ Ուստի Յով. Եպ. Մամիկոնեան, չէ թէ ջնջած տեղէն այդ կարգի թղթեր յերիւրել՝ այլ նոյն իսկ եղածներն ալ փճացնելու մէջ շահ ունէր և անշուշտ պիտի փճացնէր ալ եթէ փաստաթուղթերը նուիրագործող Ս. Գ. Լուսաւորչի երկիւղը չըլլար։

ԵՐԿՐՈՐԴ ՀԱՄԵՄԱՏՈՒԹԵԱՄԲ տեսանք թէ երկու տպագիրներ իրարմէ կը տարբերին, և տողէ տող, էջէ էջ, մէկ տպագրութիւնէն միւսը զանազանութիւն կայ։ Նոյնպէս են նաև գրչագիր օրինակները. ինչ որ ապացոյց է վաւերական սկզբնագրին խեղաթիւրուած ըլլալուն։

ԵՐՐՈՐԴ ՀԱՄԵՄԱՏՈՒԹԵԱՄԲ տեսանք թէ ի դէպ թէ անդէպ Հռոմի յիշատակութիւնը յետագայ դարերու մէջ. ձեռնամուխ գրիչ մը ներթագրել կուտայ։

Ուրեմն միայն մէկ ելք մը կը մնար Յարգելի Գր. Խալաթեանի, քանի որ որոշ վախճանի մը յանգած չէր, պէտք էր տակաւին սպասել և իր խօսքովը «հաց ու կտոր, պատառ պատառ եւ ենթակաց կերպով ամբողջութիւնից խաշուած հանուած կտորների վրայ որոնք միայն արուեստական ձեւ բռնազբօս կերպով կցուած են իրարու հետ. Տես եր 77 տող 3.» զգուշութեամբ քակել, կարկտանները մէկդի վերցնել որպէս զի տակի հինը մէջ տեղ ելլէ՝ ինչպէս որ էր ի սկզբան և այսպէս իր քննադատութեան, ներթակայէն քննադատելի առարկային հանել։

---

# ՔՆՆԱԴԱՏՈՒԹԵԱՆ

## ԱՌԱՐԿԱՆ ԵՒ ՆՊԱՏԱԿԱՆ

*Մեր նախընթաց անծանօթ եղող արդիական քննադատութեան հակակշռին յետաձնար խառնութիւններուն կ'ենթարկենք մեր վաղեմի մատենագիրները և անշուշտ ասիկայ մեզի պզտիկ փառք մը չենք սեպեր. քանի որ ի հեճուկս ազգայնամոլներու, մեր հմտութեան չափին վրայ կ'աւելցնենք մեր անխտրականութեան պարծանքը։ Բայց գէթ արդարութիւնը կը պահանջէ որ նաև մենք յարգենք մեր նախավարկած դրութեան տարրական սկզբունքը մեր անողոք քննադատութեան պահուն, և մեր աճիւնացեալ հեղինակներու գիրքերը խօսեցնել տանք ի պաշտպանութիւն իրենց դատին։*

*Ատո՞ր համար է արդեօք որ մեր ծերունի մատենագիրները նախ երիտասարդացնելու հոգ կը տանինք որպէս զի մեր եռեւէն հասնող արդիական ընկերը իրաւունք ունենայ գոչելու թէ այսինչ հեղինակը իրեն վերագրուած ժամանակէն շատ ետքը գրուած է: Արդարև հին գրչագրի մը անհասկնալի մնացած հատուածները մեր ըմբռնումներով իմաստին համեմատ կը սրբագրենք և ինչպէս տեսանք, մէկ անգամէն 66ի փոփոխութիւններ կը մտցնենք անոր ասոր գրածին մէջ առանց հարցնելու թէ արդեօք մեր կատարած սրբագրութեանց համար հաճութիւն ունի՞ն նոյն գրութեանց նախկին տէրերը. (Տես էջ 15 այս գրքին)։*

*Եւ գիտնալով թէ բնագիրները ըստ կամս փոխուած և վրանին զանազան յաւելուածներ ալ եղած են (Տես*

էջ 52 տող 21 այս գրքին) և այնպէս ալ ապագրուած. չեն ընդունիր որ Զենոբ Գլակ վաւերական սկզբնագիր մը ունենայ և ԺԳ կամ ԺԴ դարու մէջ խեղաթիւրուած առ այս չա՛ ունեցողներու կողմէ: Բայց աւելի դիւրին կուգայ այս աղաւաղուած գիրքը Յով. եպ. Մամիկոնեանի չինծուն հռչակել առանց օրինաւոր առարկութեան:

Արդ, խօսքը մասնաւորելով Յարգելի Դր. Խալաթեանի, ազնիւ պարսաւագրողը մեզ կրնա՞յ իմացնել թէ Զենոբ Գլակը, Դ. դարէ մինչեւ Ժ. դար, յաջորդ դարերուն ամէն մէկուն վրայ պտտցնելէն ետքը և հաւանականութեան վրայ հիմնուելով Հայ Եկեղեցւոյ Հովիւ մը կարկառող հռչակելէն վերջ, գոնէ ձեռք անցուցած ըլլայ անոր վաստահամբաւեալ (Է-Թ) դարու նախագիր (prototype) չինծուն: Նոր հեղինակին նոր երկը մէջտեղ կը դնեն, հին գրողին հին գրութիւնը երեւան կը հանեն, առանց այդ վաւերական (authentique) նախագրերու ով ինչ ըսէ անվաւեր և ենթադրական է:

Մանաւանդ ուղղամտութիւնը կը պահանջէ մենէ որ դատափետեալին ալ պատեհութիւն տանք քանի մը խօսք խօսելու ի պաշտպանութիւն իր դատին: Յարգելի Դր. Խալաթեան միթէ չը՞ գիտեր թէ Տարօնոյ պատմագիրը իր ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԸ ունի և հոն տրուած բացատրութիւնները պէտք էին իր ուշադրութիւնը գրաւել, զանոնք կը յանձնենք մեր ընթերցողներուն գնահատութեան:

* * *

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ

### ՅՈՎՀԱՆ ԵՊ. ՄԱՄԻԿՈՆԵԱՆԻ

*Ժամանակագրութիւնս այս՝ սկսեալ առ Սրբով Գրիգորիւ Զենոբայ Ասորւոյ ի նոյն եկեղեցին, կոչի ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱՍՈՐԻՈՅ։ Զի այն հարանց անուանքն որ գրեալ կան մինչեւ ի Թոդիկ, ամենեքեան Ասորիք էին, և ասորի գրով և պաշտամամբ վարեալ էին մինչեւ ի Թոդիկ։ Եւ նա փոխեաց զամենայն կարգս և զԱսորւոց ցեղսն բնաւ հալածական արար ի վանացն։*

*Այլ թէ ինչ գործեցաւ ի Տրդատայ մինչ ի Խոսրով՝ ի ՏԱՆՆ ՄԱՄԻԿՈՆԵՆԻՑ յետ բազում որոնման տեղեկացայ յումանց թէ՝ ի կողմանս Ուռհայի է կրօնաւոր ոմն անուն Մարմառա և երթեալ առ նա գտի առ նմա գիրք մի հին գրեալ ի յիննականեան վանսն և նա ի զօրաց ուստեք ի Պարսից կամ այլոց ունէր զգիրսն։ Եւ թարգմանեալ ի նմանէ 28 պատճէն պատմութեան և 10 որ ի գրի յառաջնմէ առ իս կայր ի մի գիր համաքելով թողի մանկանց եկեղեցւոյ։*

*Արդ որ ինչ զկնի մեր գործիցին՝ գրեալ դիցեն ի սմա եկեալքն զկնի մեր, զի այսպէս ընկալաք պատուէր ի հարցն։ Եւ խնդրեմ ի ձէնջ ես Յովհաննէս եպիսկոպոս մի ծաղր թուեցին բանքս այլ և ՋՍԱԿԱՒ ՊԱՏՃԷՆՍ ԻՄ գրեսջիք ընդ այլ գրեալսդ ի սմա։ Իսկ թէ թերի մնօք կալցին շարագրեալս՝ թերի և ինքեանք ընկալցին զվարձս։ Տես էջ ԺԵ—ԺԷ պատմութիւն Տարօնոյ 1708 Կ. Պոլիս։*

Այս յիշատակարանը կ'ակնարկէ իրարմէ տարբեր երեք պատմութիւններու. Ա. Ինքնագիր պատճէն որ Յովհան. եպ. Մամիկոնեանի ժամանակի պատահած դէպքերուն կը վերաբերի. Բ. Գիր Տանն Մամիկոնենից որ յիննականեան վանս ասորերէն լեզուով գրուած էր ուսկից 28 պատճէն պատմութիւն թարգմանեց և Գ. Ասորւոց պատմութիւն 10 պատճէն զոր գրեց Զենոբ Ասորի և որ ի գրի իր մօտ կար։

ՆԱԽ ՀԱՄԵՄԱՏԵՆՔ ինքնագիր պատճէնը՝ Ասորւոց պատմութեան հետ ոճի տեսակէտով , ինչ անհուն տար-

բերութիւն, հակակշիռը ինքն իր մէջն է։ Եթէ իրաւ է որ (le style c'est l'homme) տարակոյս չի մնար թէ Զենոբ Գլակ և Յովհ. եպ. Մամիկոնեան երկու տարբեր անձինք են և երկու տարբեր գիրք գրած։ Արդարեւ երկուքն ալ վառ երեւակայութիւն ունին բայց անոնց արտայայտութեան եղանակը իրարու ներհակ է։ Մինչ Զենոբ կը ծածկէ պարկեշտութեամբ հեթանոսական պղծութեան լպիրշ տեսարաններ, ինք Յովհ. եպ. Մամիկոնեան ախորժելով կը հոլանէ զանոնք։

Յարգելի Դր. Խալաթեան ինքն ալ դիտած է թէ «Ոչ մի խօսքով չէ յիշում ի՞նչ էր Աֆրոտիդի եւ Վահագնի եւ Աստղիկի տաճարներում մէջ կատարուած արարքը, եւ թէ ինչո՞վ նա տարբերվում էր հեթանոսական միւս հաւատքներից եւ ԳԱԾՏՕՆ ԳՂՄՈՒԹԵԱՆի նման անորոշ խօսքեր կ՚ըսէ Զենոբ, Տես էջ 59 տող 11։»

Իսկ Յովհան եպ. Մամիկոնեան կը մերկացնէ պէտք չեղած տեղերն ալ. այսպէս «Եւ Վահան ձգեաց զձեռն իւր ի սուրն՝ կտրեաց զբլխասն Պարսկին եւ եդ ի բերան նորա։ Եւ մինչ չոք որ զգլխասն կտրեաց, ասէ. Տուր բանից ինձ եւ ես պարգեւեցուցանեմ զքեզ։ Եւ նորա տուեալ բանից նշան եւ պատուէր՝ բազում երդմամբ ասացեալ զոր նա եւ նա միայն գիտէր։ Տես էջ 25 տող 1-10. Գաւ. Տարօնոյ Յով. եպ. Մամիկոնեան 1832, Վենետիկ։

Այլ օրինակ Յովհ. եպ. Մամիկոնեանէ. «Եւ Վահան յղեաց նմա պատասխանի, այսպէս. Վաս եւ քոյդ անձին Վախտանգայ եւ խոզ քոյոց դասուց՝ որք զաղբս նաշակեն, ողջոյն։ Երբ սէր եկիր առնել, զինչ ի նես ընդդե՞ր ածիր. միթէ որդի՞ խնդրես յիրանաց մերոց. Տես էջ 31 տող 4-8, Գաւ. Տարօնոյ Յովհ. եպ. Մամիկոնեան 1832 Վենետիկ։»

Այս ոճը պէտք է ընդունինք որ կոշտ ու կոպիտ է, մինչդեռ Զենոբին ոճն է քողածածուկ և յղկուած, ուս-

կից տարակոյս չի մնար թէ անոնք երկու տարբեր նըկարագրի տէր անձերու գրիչէ ելած են։

ԵՐԿՐՈՐԴ. ՀԱՄԵՄԱՏԵՆՔ Ինքնագիր պատճէնը՝ Ասորւոց պատմութեան հետ լեզուի տեսակէտով, ինչ անհուն տարբերութիւն, հոս ալ հակակշիռը ինքն իր մէջն է։ Արդարև երկուքն ալ ոսկեդարու հայերէնը չեն գործածեր և լեզունին անկման դարուն կը վերաբերի։ Բայց անոնց գրելու կերպը իրարու հակադարձն է։ Արդարև երկուքն ալ վրիպակներ ունին բայց մինչդեռ Զենոբ խրթին հայկաբանութիւն մը կը ծեքծեքէ և սխալներ կ'ընէ, Յովհան Եպ. Մամիկոնեան կախորժի ռամկաբանութենէ և իր լեզուն բանուկ է։

Իրաւ ալ Յով. Եպ.ի լեզուն սխալ ըլլալէ աւելի՝ աշխարհաբարի սկզբնաւորութիւնն է։ Ժողովուրդին կեանքն է որ կապրի և անոր խօսելակերպն է որ կանդրադարձնէ իր պատմութեան մէջ։ Նոյն իսկ չը վարանիր գիւղացի պարաւոր կանանց գովասանքը յիշելու. ուստի իր գռեհիկ ձեւերը կը ներենք իրեն։

«Եւ էր հանեալ կանանց՝ ահին: Կերան գազանք զմարմինս դիակացն Վարազայ եւ գիրացան: Կուզ կերեալ, ուռաւ որպէս զարջ. եւ աղուէս հպարտ եղեւ քան զառիւծ. գայլ, քանզի շատակեր էր, պայթեաց եւ արջ քանզի զոր ուտէր՝ չմնայ առ ինքն, ի սովոյ մեռաւ: Անգեղք, քանզի ագահն էին, եւսան եւ այլ ոչ կարացին վերանալ. մրջիւնք, քանզի շատ կրեցին ի ծակսն, ոտքն մաշեցան: Տես էջ 42 տող 21. Պատ. Տարօնոյ. Յով. Եպ. Մամ. 1832. Վենետիկ.»

Բայց մեր ո՞ր գաւառաբարբառին մէջ, կամ մեր ո՞ր խեցբեկ լեզուն ունի հետեւեալ օտար հնչմանց և խժաբանութեանց ու սխալներու տարազը։ Զենոբին սխալները օտարի մը ինքնութիւնը մատնող հետքեր են և Յով. Եպ. Մամիկոնեանէ բոլորովին տարբեր երեւոյթ մը կուտան Ասորւոց պատմութեան լեզուին։ Ուստի անոնց զոյգն մէկ մարդը կը յանձնենք ընթերցողին ուշադրութեան։

ՕՐԻՆԱԿՆԵՐ

Էջ 7 Տող 1. (Ջառ)ի վերուստ պատուեալ.
» 8 » 20. Նա իսկ է դրունն (դուռն) դժոխոց.
» 9 » 3. Աղաչեմ զի մի ևս ընձայս (ընծայս) մատուցես.
» 10 » 16. Եւ դու ընդրեցար (ընտրեցար) ի տեղի ընդրելոց
» 10 » 27. Կացուցանես (կացուսցես).
» 11 » 7. Պէտք վանուց ի Նոցանէ վճարեսցի (վճարեսցին).
» 12 » 18. Եւ Տրդատ գրեաց գահերէց իշխանին չորեսին (իշխանօքն չորեքին).
» 14 » 2. Որք ի Կեսարիայն եկին (Որք եկին ի Կեսարիոյ).
» 15 » 5. Զոր (որք) երթեալ խուզեցին աւուրս բազումս.
» 15 » 33. Հանեցաւ բնակել ի տաճարս (ի տաճարին) յայսմիկ.
» 17 » 24. Ի քրմաց անդի (անտի).
» 18 » 15. Զոր (որում) հաւանեալ Զենոբայ.
» 20 » 1. Խոսրովայ որդւոյ (Խոսրով որդի) Վաղարշայ վրէժխնդիր լինէր.
» 21 » 19. Առեալ կին զմեծատուն ուրեմն (ուրումն) քոյր.
» 44 » 31. Իբրեւ տեղեկացաւ եթէ ի ճն (յիրոց) զօրաց և և իշխանաց է (են) իրքն.
» 45 » 25. Սակաւք փրծան (պրծան).
» 46 » 29. Արքայն Հիւսիսոյ գիտացեալ եթէ վնասելոց եմ (է)։

Զենոբ Գլակ 1832 Վենետիկ.

Ասկից ալ յայտնի կ'ըլլայ թէ Զենոբ և Յովհան եպ. Մամիկոնեան տարբեր ժամանակներու մէջ ապրող տարբեր մարդիկ են և պէտք չէ զանոնք իրարու հետ շփոթել։

ԵՐՐՈՐԴ. ՀԱՄԵՄԱՏԵՆՔ Ինքնագիր պատճէնը՝ Ասորւոց պատմութեան հետ Ապասայինն տեսակէտով. ի՞նչ անհուն տարբերութիւն. հոս ալ հակակշիռը ինքն իր մէջն է։ Յովհ. եպ. Մամիկոնեանի նպատակն է հրաշալի պատմութիւններու միջոցաւ գրգռել ռամկին եռանդը հեթանոս Պարսիկներուն դէմ և կրօնական պատերազմ հրատարակել։ Իսկ Զենոբը կ'ուզէր իր ձեռք պահել այն հարուստ մենաստանը ուսկից վաղ անգամ վտարուելու երկիւղ ունէր և ուրկէ վերջ ի վերջոյ ար-

տաքսուեցան արդարեւ։ Որով անգամ մը եւս կը հասկցուի թէ Զենոբ եւ Յովհ. եպ. Մամիկոնեան տարբեր ժամանակի տարբեր անձինք են։

Թողունք որ նախ Յով. եպ. Մամիկոնեան ինք խօսի. «Եւ գնացին ի պատերազմ եւ արձակեցին առ հայրն Գրիգոր որ խաւն եւ հինգերորդն էր եւ նստաւ յաթոռ հայրապետութեան ամս ութն եւ տարան ի պատերազմ երեք հարիւր ութսուն եւ հինգ կրօնաւոր կենդով։ Իբրեւ խմբեցաւ պատերազմն յեզերս Արածանւոյ, առ անտառովն որ կոչի Կաղամախեաց բլուր, կրօնաւորքն ամրացեալք էին մազեղէնօք եւ կենդաւորք եւ ընդ տասն առնն ժամահար մի, եւ ընդ երկուսն խաչանրոշ պարձրապուն, զոր տեսեալ թշնամիքն զարմանային։

Եւ իբրեւ խմբեցաւ պատերազմ ընդ իրեարս, եւ կամէին փախչել Պարսկաստանցին, յայնժամ նոցա ծունր կրկնեալ՝ միաբան աղաղակեցին առ Աստուած աղօթիւք եւ ցի ասացին։ Ով Տէր, հար զմեր պատերազմն, ով Կարապետ, զարթիր ի ձայն պաշտօնէիցս։ Եւ զայս ասացեալ միաբան՝ յոտն կացին եւ զնշան խաչին դարձուցանէին ի վերայ թշնամեացն եւ հարին զժամանակարան յանդուգն։

Եւ հայեցեալ Վահանայ ի գունդ կրօնաւորացն, եւ տես յաջ թեւս նոցա երիտասարդ մի՝ անուանեալ Տաճատ, եւ թագ ծիրանի ի գլուխ նորա եւ խաչ. եւ ի նանգերձից նորա հուր փայլատակէր։ Եւ այլ երկուս երիտասարդական հասակաւ տեսանէր, որք առաջի կային թեւաւորք։ Զոր եւ թշնամեաց տեսեալ՝ յիմարեցան, եւ ի գետ անկեալ ցգան. եւ որք ի գետոյն յայն կողմ անցին, Մեղսայ ուշ արարին։ Իսկ Վահան ձայն տուեալ յորդին իւր Տիրան, յաջ զօրուն առ. Ահա տէրն արարածոց Քրիստոս երեւի ի մէջ ծառայից իւրոց, զի ինքն է պարգեւոր նոցա եւ ամենեցուն։ եւ էջ ի փրկել մեզ. Տես էջ 50–51, Պատ. Տարօնոյ Յով. եպ. Մամիկոնեան 1832 Վենետիկ։»

Մինչդեռ ինչ փափախուն ընչաքաղցութեամբ լի է-ջեր երեւան կ'ելլեն Զենոբի Ասորւոց պատմութեան մէջ։ Իր ցեղակիցներէն չորս ցաւագար ծերունիներ՝ իրենց խօսքով «Բեկոռ ջերմէն կը տանջուի. Մարկեղէսի աչքերը վառած են, Անաստաս և Աքիւղաս անկար են ի նուաղ կենաց Տես էջ 17 Զենոբ 1832 Վենետիկ» և պաշտօնի ի խնդիր կը դեգերին ի Բիւզանդիոն և անձկանօք յուր կ'ուզեն իրենց ապրուստը ապահովելու համար։ Որոնց կը փութայ Զենոբ պատասխանել առ այս նախանձորդներուն դրած արգելքը վերցնելէ ետքը։

Երկ կամիք գալ յերկիրս այս, բարի է երկիրս եւ վայրքս են անուշ օդ եւ բազմաջուր դաշտաց եւ շուրջ զլերամբքս բազում անտառք են: Երկիրս խոտաբեր է եւ մեղրաբուխ եւ որպէս մանանայ իջանէր յերկնից առ Հրեայսն, նոյնպէս եւ աստ ի վերայ անտառացն իջանէ քաղցր առատել քան զմեղր: Իշխանքս կռոնաւորք վերակացուք եկեղեցեաց եւ տասուչք անկանցուն: Նաեւ երկիրդ ձեր խորշակահար է եւ հացապակաս, իսկ այս երկիրս ամենայն բարութեամբ լի է. Տես էջ 42 Զենոբ 1832 Վենետիկ:

Կարդացողին բերնի ջուրերը վազած ըլլալու են. բնաւ խեղճ ժողովուրդին հոգեւոր չինութեան խօսքը չի կայ գոնէ իբրեւ ձեւ բանի, ծայրէ ծայր ՀԱՑԻ խնդիր։ Այնպէս որ դեռ անկից 106 տարի առաջ Ասորի կղերը հոն կը յաճախէր «Գնա ի վանս Գլակայ եւ երկու մասունս առանց զմբէթի յորոց մին է յանուն Ս. Աստուածածնայ առ ընթեր եւ յարակից Ս. Ստեփաննոսի տաճարին ի հիւսիսային կողմանէ ուր պատարագեն Ասորի քահանայք ութսուն չորսակալ տեղեաց ի ճգնութ իւրեանց Տես էջ 195 տող 34 Աշխ. Ասիա Ա. հատ. Հ. Ղ. Վ. Ինճիճեան 1806 Վենետիկ»: Ուստի երկինք և երկիր որչափ իրարմէ հեռու են՝ նոյնքան միջոց կայ Զենոբը գրելու մօտ չարժանիքին և Յովհ. եպ. Մամիկոնեանը գրե-

լու դիտաւորութեան մէջ տեղ և այդ Դիրքերը զատ զատ մարդոց գրիչէ ելած են։

ՉՈՐՐՈՐԴ. ՀԱՄԵՄԱՏԵՆՔ Յովհ. եպ. Մամիկոնեանի ինքնագիր պատճէնը Զենոբի Ասորւոյ պատմութեան հետ տեղական գոյնի տեսակէտով։ Երկուքն ալ իրենց չուրջը պարզուած տեսարաններէն կ'ազդուին և զանոնք կ'անդրադարձնեն իրենց գրութեան մէջ։ Զենոբ կը տեսնէ Չինացի Մամիկոնեաններուն գլուխուն վրայ մեզի ծանօթ Չինացոց գլխու մազի պոչը որ մինչեւ այսօր իրենց մէջ նուիրական է և կ'ըսէ

«Զի ազգն այն յորժամ ի Քրիստոս դարձան, չէին կատարեալ ի հաւատսն եւ էին ԳԻՄԱՌՈՐԴՔ եւ զհայրենի օրէնսն չիշխէին յայտնի ունել, այլ խաբէութեամբ զայս հնարեցան. ԾԱՄ միայն թողուլ ի գլուխ մանկանցն զի զայն տեսեալ՝ յիշեսցեն զպաշտօն պղծութեան իւրեանց: Զոր եւ ես աղաչեմ զձեզ, զգոյշ կացէք՝ զի մի այս եւ ի ձերում երկրիդ սերմանեսցի եւ մի լինիցի ընդ անիծիւք. Տես էջ 36 տող 26. Զենոբ 1832 Վենետիկ:»

Այս ԾԱՄԸ չէր այն «չնաղատես հերք փարոյց Ներսիսի տես էջ 70 տող 10 Փ. Բուզանդացի 1889 Վենետիկ» որ «Յորժամ զհերսն փրայրն ի Ներսիսէ, առ յոյժ զեղեցկութեանն, բազում յարտասուս հարան. Տես էջ 71 տող 25 Փ. Փաւստոս 1889 Վենետիկ» Այլ այն որ «Մամիկոնեան» ծենորդւոյն Արտաւազդայ դերձեալ էր զգլուխ եւ ցցունս էր թողեալ եւ զէս արձակեալ. Տես էջ 205 տող 17 Փ. Փաւստոս 1889 Վենետիկ:

Իսկ գալով Յովհ. եպ. Մամիկոնեանի՝ պէտք է չինական բարքերէն անցնիլ՝ արաբական յատկանշող բարուց այսպէս «Եւ առեալ տանէր մինչեւ ի դուռն Օձ քաղաքին զչորս հազար ընտիր Պարսիկս, եւ Վահան զհետ մտեալ սպառ կոտորեց, ինքն ասպի եւ քաղաքացիքն անտի: Եւ հրամայեաց զամենեցուն զքթիսն կտրել եւ արկանել

ի մախաղ. Տես էջ 22–23 Պատ. Տարօնոյ, Յովհ. Եպ. Մամիկոնեան 1832 Վենետիկ:

ՀԻՆԳԵՐՈՐԴ. ՀԱՄԵՄԱՏԵՆՔ երկու պատմագրողներու տուած ժամանակները։ Յովհ. Եպ. Մամիկոնեանի համար արդէն մէջտեղէն այնչափ առնել անցած է որ, թէեւ ինք անուամբ Մամիկոնեան բայց, իր նախնեաց ծագման վայրին խօսքը անգամ չըներ և զայն չահեկանութիւնէ զուրկ կը գտնէ. ուստի ԾԵՆՔ բառը գոնէ անգամ մը իր գրչին տակը չի գար։ Իսկ Զենոբ՝ այնքան մօտ կ'ապրի Ողկան ամրոցը դաւաճանութեամբ գրաւողին, որ անոր յիշատակը թարմ է իր մաքին մէջ և գոնէ երեք անգամ կը կրկնէ ԾԵՆՔ բառը «Տես էջ 20 և 22. Զենոբ Գլակ 1832 Վենետիկ»։

Այլ, Փ. Բիւզանդացիին անգամ անծանօթ չէ այս տարածուած նախապատուութեան նախկին հայրենիքը «զի նախնին Մուշեղայ թողեալ զթագաւորութիւնն Ճենաց աշխարհին՝ եկին առ մեզ (էջ 204 տող 8. Փ. Բիւզանդացի 1889 Վենետիկ.) և Մանուէլի ըսել կուտայ «զի մեր նախնիք թողեալ էին թագաւորս յաշխարհին Ճենաց եւ վասն եղբարց խռովութեան, զի արիւն մեծ անկեալ է ի վերայ՝ եկեալ աստ դադարեալ եմք:» Որոյ կը պատասխանէ Վարազդատ. «Զի քեզն իսկ ասացեր, թէ յաշխարհէն Ճենաց եմք եկեալ եւ այսր պանդուխտ եմք եկեալ, արդ ըստ օրինակի չարագործ եղբօր քոյ Մուշեղայ մի մեռանիր. երթ յերկիրն Ճենաց եւ անդէն թագաւորեսցիր յերկիրն քում. էջ 248 տող 6. Փ. Բիւզանդացի 1889 Վենետիկ.»

Իսկ ծերունի քերթողահայրն մեր, չէ թէ միայն գիտէ Մամիկոնեանց նահապետին Մամգունի նախկին տիրադրուած մը ըլլալը և դաւաճանութեամբ Ողկան ամրոցին տիրանալը. հապա գիտէ նաև թէ ե՞րբ և Ճենաց աշխարհին ո՞ր կողմէն ի Հայս գաղթեց իր աղխիւն։

Այսպէս «ի սորա (Տապինոյ) աւուրս եկն ի Հայս նախնին Մամիկոնէից, ՅԱՐԵՒԵԼԻՑ ՀԻՒՍԻՍԱԿԱՆԷՆ, ի գլխաւոր աշխարհէն ասեմ խոյ զՃԵՆԱՑՆ: Եւ սահմանեալ է աշխարհն այն առատութեամբ պտղոց, բրնձաւէտ, սիրամարգաշատ եւ բազմամետաքս» Տես էջ 343--345. Մ. Խորենացի 1881 Վենետիկ: Ուրեմն ըստ Խորենացւոյ Մամգուն Չինաստանէն եկաւ, սակայն ոչ թէ այն երկրին մեծ պարիսպին արեւելեան հարաւային կողմէն, այլ անոր արեւելեան հիւսիսային կողմէն կամ Մանչուրիայէն: Օր մը սակայն մետաքսի աշխարհին ոչ հիւսիսը պիտի մնայ ոչ հարաւը և արդի քաղաքակրթութեան ընթացքը Չինաբնակչաց գլխու տգեղ ցցունքը ի սպառ պիտի վերցնէ:

Այս համեմատութիւններէն վերջ Յարգելի Տր. Խայաթեան պէտք է ընդունի թէ Յով. Եպ. Մամիկոնեան իրենը ըլլալը ինք իր կողմէ յայտարարած ԻՆՔՆԱԳԻՐ ՊԱՏՃԷՆԻՆ մէջ պարզած տեսարանները, մաքի արտայայտութեան ձեւերը, քօղարկած նպատակը, իր գրութեան քերթուածական տարազը, իր ապրած ժամանակը բոլորովին տարբեր են Զենոբի անուամբ ծանօթ ԱՍՈՐԻՈՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ոճէն, լեզուէն, տեղական գոյնէն, գրութեան դիտաւորութենէն, գրողին ժամանակէն և թէ քննադատութեան նիւթական պէտք է տեղի տայ քննադատութեան առարկային:

Յովհ. Եպ. Մամիկոնեան կ'ընդունի թէ իր ինքնագիր պատճէնին կը վերաբերի մինչեւ հոն ուր կ'ըսէ. «Վճար եղեւ պատերազմին Տարօնոյ ի ձեռն առաջնոյն իշխանացն Մուշեղայ, Վահանայ, Սմբատայ, Վահանայ Կամսարականին եւ Տիրանայ. Տես էջ 13 Պատ. Տարօնոյ. Յովհ. Եպ. Մամիկոնեան 1832 Վենետիկ»: Գալով այն մասին որ, ինչպէս ինք կ'ըսէ, յառաջնմէ առ ինքն կային ի վանս Գլակայ և որ ԱՍՈՐԻՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ կը կոչուի իր բուն անուանովը՝ անոր Տէր կը կանգնի Զենոբ Ասորի և մեր գործը իրեն հետ է:

Կեդրոնացնենք ուրեմն մեր ուշադրութիւնը այն թղթոց գրութեան ձեւին վրայ, անոնց հաւաքածոյին ճակտու թուղթին վրայ և անոնց մէջէն դատենք այն պատճէնները որ նոյն իսկ Ջենոբ Գլակի գրիչէն ելած են։ Ոչ մէկը պէտք է զարմանայ եթէ՝ այդ հաւաքուած տասը պատճէն փաստաթղթոց գրութեան ձեւը թղթակցական ըլլալուն հետեւանօք, անոնց սկիզբը և վերջը քիչ շատ նման կղերէ առ կղեր ուղղուած ամէն նամակներու, քանի որ զանոնք պէտք էր պատշաճեցնել՝ ընկալեալ սովորութիւններու համեմատ, եկեղեցական դասակարգի ծանօթ աստիճաններու և ընդհանուր բառաձեւ մը կար զոր կանուխէն կը սորվեցնէին տիրացուներուն որպէս զի ապագային անոնց ղրկելիք նամակները ըլլան ձուլուած միօրինակ կաղապարի մը վրայ։

Արդ, բան մը որուն շատ աւելի կարեւորութիւն կուտայ Յովհ. Եպ. Մամիկոնեան և սակայն որուն խօսքը երբեք չըներ Յարգելի Գր. Խալաթեան, այդ նամակի պատճէններուն թիւն է։ Անոնք տասը հատ էին և այսօր խնդիր է գիտնալ թէ անոնցմէ քանի՞ հատը մեր ձեռքը ողջամբ հասած են, թէ քանի՞ հատը պակաս են, թէ քանի՞ հատը մնագրամիջուած է և թէ ո՞վ շա՞հ ունէր պակսած պատճէններուն պարապ թողած միջոցները յարմարագրութեամբ լեցնելու։

Այս պէտք էր ըլլալ ճշմարիտ արդիւնականին առաջին պարտականութիւնը որովհետեւ նոյն իսկ իր ուսումնասիրութեան հիմ բռնած 1832ի Ջենոբ Գլակը տպագրողները իրենց զեկոյցին մէջ կ՚ընդունին թէ իրենց ձեռքի գրչագիրներն այլայլած, յապաւուած և աւելցուած են։ Այս իրողութեան վերահասու ըլլալու համար կը բաւէ օրինակել այն նիւթոց ցանկը զոր 1708ի Կ. Պոլսոյ Ջենոբ Գլակը ի լոյս հանողներ պէտք տեսեր են կցել իրենց հրատարակութեան։

## ՑԱՆԿ ԶԵՆՈԲ ԳԼԱԿԻ

(ԸՍՏ 1708Ի ՏՊԱԳՐՈՒԹԵԱՆ)



Յայտնի կը տեսնուի թէ պատճէնները պակսած են և ձեռնամուխ գրիչ մը պարապ մնացած մասերը հրաշքներու առասպելներով, Հռոմի և Սեղբեստրոսի յիշատակութեամբ և Խոսրովու ու Անակայ պատմութիւնով՝ ուզեր է իր վարդապետած կրօնական տեսութիւններուն համաձայնեցնել զանոնք և անոր համար չէ քաշուեր նոյն

իսկ բնագիր պատճէնները տեղ տեղ յապաւել և տեղ տեղ այլայլել ։

Արդ, ո՞վ էր այս կարկառանքը ի գլուխ հանողը, ի՞նչ չա՞ր ունէր Հայ եկեղեցւոյ ինքնագլխութիւնը ջնջելու և Հռովմայ հայրապետներուն գերագահութիւնը հաստատել տալու մէջ ։ Որո՞ւ ի նպաստ կատարուեցաւ այս խեղաթիւրումը, որն էր օգտուող կղերականութիւնը ։

ՆԱԽ. Այս կարկառանքը ի գլուխ հանողը տարապարտուց դատափետեալ Յով. Եպ. Մամիկոնեանը չէր կրնար ըլլալ. այս բանը իր նուիրական չահերուն հակառակ էր, իր գիրքին գրական յատկութիւններն ալ գլխովին կը տարբերին Զենոբ Գլակի մատենագրական հանգամանքէն. նա մանաւանդ իր կրօնական խիղճն իրեն երբէք թոյլատու չէր Հայ Եկեղեցին Լատին եկեղեցւոյն ստորադասող կարկառանք մը ընելու. Ինք կ՚ապրէր Ներսէս Գ. Շինող կաթողիկոսին օրով որ Դունայ(*) Ե և Զ ժողովները գումարեց և այդ ժողովին կանոններուն մէջ երբէք չենք տեսներ Հռոմի Հայրապետին գլխաւորութիւնը ։

ԵՐԿՐՈՐԴ. Այս կարկառանքը ի գլուխ հանողը ցայսօր Սարուց Պատմութեան հեղինակ ճանչցուող Զենոբ Գլակ ինք չէր կրնար ըլլալ ։ Իր իսկ խօսքով ինք աղաչած էր «զՍուրբն Գրիգոր սկիզբն առնել պատմութեան իւրոյ ի մահուն Տրդատայ եւ ոչ հաւանեցաւ Ս. Գրիգոր այլ բաւական համարեաց գրել ԶԱՌԱՋԻՆ ՊԱՏԵՐԱԶՄՆ եւ ԶԵՐԿՐՈՐԴՆ. Տես էջ 18. Զենոբ 1832 Վենետիկ.» և «Եթէ զբազում ժամանակին ոչ գրեաց՝ վասն զի Ս. Գրիգոր ոչ հրամայեաց գրել: Տես էջ 19. Զենոբ, 1832, Վենետիկ». «Զի բազում ժամանակագիրք գոն. Տես էջ 39 Զենոբ 1832 Վենետիկ:»

---

(*) Ե. ժողով Դունայ. Կը մերժուի Քաղկեդոնի ժողովը. Կ՚որոշուի եկեղեցական ժառանգաւորաց խնդիր. Տարականաց ընտրութիւն: Զ. ժողով. Կը մերժուի Քաղկեդոնականութիւն: Տես էջ 302—304 Պատ. Հայ. Առք. Ս. Եկեղեցւոյ. Մ. Եպ. Մուրատեանց. Երուսաղէմ 1872:

Ուրեմն, ինչպէս յարգելի Դր. Խալաթեան զգացեր է, ի դէպ թէ անդէպ Հռոմի յիշատակութիւնը և Սեղբեստրոս Պապի զրոյցը յետագայ դարերու պէտք է վերագրել և «Այս յօդուածներ համառօտութիւն են Ագաթանգեղի ընդարձակ պատմածին եւ այնպիսի ոճով որպէս զի փոխառութիւնը ուղղակի չի նկատուի: Նոյն նպատակով ընդհատած են այս յօդուածներ եւ ընդարձակ միջանկեալ ներմուծուած Տես էջ 51 Տող 7—13»: Եւ այսպէս ըստ յայտարարութեան Յարգելի Դր. Խալաթեանի՝ Խոսրովու, Անակայ, Տրդատայ Բուրդարայ և Կոստանդիանոսի պատմութիւնները նախապէս գոյութիւն չունէին Զենոբի սկզբնագիրին մէջ և լոկ (interpolation) ընագրամիջումներ են:

Արդ. քանի որ Ս. Գրիգոր Լուսաւորիչ արգիլած էր Զենոբ Գլակի գրել Խոսրովու և պարագայից պատմութիւնը և քանի որ Յարգելի Դր. Խալաթեան կը կարծէ թէ անոնք Ագաթանգեղոսէ առնուած յետամուտ հատուածներ են՝ քակելով զանոնք պէտք էր հանել ամբողջին մէջէն: Անոնց ելլելովը միատեղ իրենց հետ ցանցի մը պէս պիտի քաշէին դուրս հանէին ի դէպ թէ անդէպ Հռոմայ յիշատակութիւնները և Սեղբեստրոս Հայրապետի գլխաւորութեան փափուկ հարցը զոր կը թողունք կրօնական խնդիրներով շահագրգռուողներուն ուսումնասիրութեան:

Կը մնան նախկին վաւերաթղթերէ հետեւեալներ

Ա. ԳԱՏՃԷՆ Թղթոյն Ս. Գրիգորի առ Ս. Ղեւոնդէս.
Բ. ԳԱՏՃԷՆ » Ս. Ղեւոնդեայ առ Ս. Գրիգորիոս
Գ. ԳԱՏՃԷՆ » Ս. Տրդատայ առ Եղիազարոս
Դ. ԳԱՏՃԷՆ » Բեկարի առ Ս. Գրիգորիոս
Ե. ԳԱՏՃԷՆ » Ա. Պատերազմ
Զ. ԳԱՏՃԷՆ » Բ. Պատերազմ

Այս պատճէններէն ո՞րը սակայն կը վերաբերի նոյն իսկ Զենոբ Գլակայ, որո՞նց համար ինքզինք պատաս-

խնամատու կը ճանչնայ։ Անոնցմէ առջի չորսը գրուած են Ս. Գրիգոր Լուսաւորչէ, Ս. Ղեւոնդէսէ, ի Սրբոյն Տրդատայ և ի Բեկարէ։ Միայն Ե. և Զ. Պատճէնները և զանոնք ներփակող նամակը կը վերաբերին նոյն իսկ Զենոբ Գլակի ըստ իր ասութեան. Ուստի միայն անոնք Զենոբ Գլակայ գրիչէն ելած են և անոնց մասին միայն պէտք է հաշիւ պահանջել իրմէ։

Ինչպէս տեսանք, ի Բիւզանդիոն դեգերող չորս ցուցակը և ծերունի Ասորի եպիսկոպոսներ Ս. Գրիգոր Լուսաւորչի գանգատագիր մը գրեցին Եղիազարու մասին և զինքը ամբաստանեցին, այսպէս «Պատճառ արգելման մերոյ Եղիազարու եղեւ որ ի Միջագետս շրջէր. Տես կջ 17 տող 2. Զենոբ 1832. Վենետիկ.» Իրաւունք ալ ունէին միթէ ամբաստանելու այն Եղիազարը չէ՞ր որ զիրենք յուսադրէր թողեր և Հայաստան գալով տիրացեր էր Եղիազարու կամ Ասորւոց հայրենաց վանքին։

Դժբաղդաբար այս ի նուազ կենաց եպիսկոպոսները աւելի հզօր նախանձորդներ ունէին քան Զենոբայ փախըստական (տես կջ 11 տող 23 Զենոբ 1832. Վենետիկ) եղբայրը (կջ 13 տող 22. Զենոբ 1832. Վենետիկ)։ Արդարև երբ մանր դիտուի յամի կըլլայ թէ Յոյն կղերն էր որ յաջողեցաւ ատեն մը արգիլել տարածումն Զենոբայ հրաւէրի թղթոյն և ընդ նմին քուրմերու պատերազմի պատմութեան, մինչև որ Յոյն կղերին դիւրացգած արժանապատուութեան գոհացում տուեցաւ Ագաթանգեղոսի պատմութեան պատրաստութեամբ։ Ապա ուրեմն Ս. Գրիգոր Լուսաւորչէ հրաման ելաւ «անհախանձ զիւրեանց պատասխանին յիշել. Տես կջ 19 տող 12 Զենոբ 1832 Վենետիկ։»

Ահա այն ատեն Զենոբ գրեց մեր քննադատութեան առարկայ այն յաւակնութեան նամակը՝ իր ցեղակիցները հրաւիրելու, անոնց ապահովութիւն տալով թէ իրենց

առկայծեալ կեանքին համար վախնալիք բան մը չունէին, թէ այն Տարօնոյ Վանքը ուր մտադրած էին յօրանալ՝ կը գտնուէր յարմար դիրքի մէջ և լաւ ալ պաշտպանուած էր։ «Բայց երբ դուք զայլ կամիք բարի և երկիրս եւ վայրքս անուշ օդ եւ բազմաջուր, դաշտաձեւ եւ շուրջ զլեռամբքս բազում ամրոցք: Իշխանքս կրօնաւորաւորք եւ վերակացուք եկեղեցւոյ, Տեւ կը 49. Զենոբ 1832. Վենետիկ։» Որով կը ծրագրէ տեղագրութիւնն Տարօնոյ և իր պատմական վայրերուն։



# ՏԱՐՕՆ
## ԵՒ
# ԵՐԶՆԿԱՅԻՑ ՊԱՏՄԱԿԱՆ
## ՎԱՅՐԵՐԸ



Շատ դժուար է այս օրուան աշխարհը տեղագրել, ո՜ւր կը մնայ ուրեմն պատմական վայրերու նկարագրութիւնը։ Դիւանագիտութիւնը պետութեանց սահմանէն անդին քօղածածուկ ոտնձգութիւններ կը կատարէ և քաղաքականութիւնը կը պատրաստէ ի գլուխ հանուած երկրակալութիւններ, այնպէս որ զօրաւորին հետապնդուած շահերուն համեմատ կ'որոշուին այսօր սեպհականութեանց վիճակը։ Պէտք չէ լաւագոյն բան մը սպասել նախկին մարդոց վարուելու կերպէն իրենց անհատական կամ հաւաքական կեանքի արտայայտութեան մէջ. ներկայ ընչաքաղց մարդկութիւնը անցեալին տխուր կրկնութիւնն է։

Նոր ազգեր իրենց ժամանակակից փորձառութիւնը ունին, հին ազգեր բազմադարեան շրջանի մը էջերը վըկայութեան կրնան կոչել։ Թողունք որ այս մասին մեզի աւելի մօտիկ եղող մեր քերթողահայրը խօսի որ, ինչ ալ ըսեն, դարձեալ շատ բան գիտէ նախնեաց կեանքի իրադարձութեանց մասին։ Այն ատեն պիտի հաստատուի թէ յիշատակարան և դաշնագիր կ'եղծուին եղեր, մուրհակներ և արձանագրութիւնք կը խեղաթիւրուին եղեր, դրացնութեան սահմաններ մարդոց բիրտ ուժին համեմատ հոս առաջ կը քշուին եղեր և նոյնչափ դժուար է անցեալ դարերու պատմական վայրերը քաղաքականօրէն

սահմանել՝ որչափ դժուար է ժամանակակից մարդոց յաւակնութեան չափ և կշռոյ որոշել։

«Յետ ամենայն գործոց ուղղութեան՝ Արտաշէս հրամայէ զսահմանս գիւղից եւ ագարակաց որոշել քանզի բազմացոյց զաշխարհս Հայոց։ Եւ նշանս սահմանաց հաստատէ այսպէս, հրամայէ տաշել քարինս կոփել չորեքկուսիս եւ պնակաձեւս փոսել զմէջ ծածկելով յերկիր եւ չորեքկուսիս ի վերոյ յարուցանել ամբարտակս սակաւ ինչ բարձրագոյն յերկրէ։ Ընդ որ նախանձեալ Արտաշրի, որդւոյ Սասանայ, զնոյն նման հրամայէ առնել եւ ի Պարսից աշխարհին եւ յիւր անուն անուանել զի մի եւս յիշեսցի անուն Արտաշէսի։ Տես կէ 287 - 288. Մ. Խորենացի 1881 Վենետիկ.»

«Նաեւ զսահմանս հաստատեալս յԱրտաշիսէ. զքարինս կացուցեալս յերկիր նորոգեաց եւ յիւր անուն փոխելով՝ Արտաշիրական անուանեաց եւ կալաւ զաշխարհս մեր որպէս զմին յաշխարհաց իւրոց հանդերձ Պարսից գործակալօք, ամս քսան եւ վեց. եւ յետ նորա որդին նորին, որ անուանեցաւ Շապուհ, որ զսի՝ արքայի մանուկ, զբաղաւորեալն Տրդատայ, ամ մի. Տես կէ 334—335. Մ. Խորենացի 1881 Վենետիկ։

Այսպէս հողային խնդրոց մէջ պէտք է զգուշել շահադիտական նպատակներուն բաժինը եւ մարդկէն ածանցուած վկայութիւնը պէտք է ընդունիլ վերապահութեամբ։ Արդարեւ հողին ստացումը մարդուն համար մահու և կենաց խնդիր է, մարդ իր նիւթական կեանքը անով կը պահէ, իր ֆիզիքական աճեցումը առատագին փոփոխութեամբ ձեռք կը բերէ։ Մարդուն կեանքը յարատեւ ճգնաժամ մըն է դիզ մը հողի համար ուտել և ուտուելու, սպաննել և սպաննուելու։

Այս բնութիւնը ոչ կ՚աւելնայ և ոչ կը նուազի ու յաւիտեան նոյնն է և եթէ ինքն իր մէջ անընդհատ կը ձեւափոխուի՝ սակայն նոյն իսկ այդ զանազանութիւնը

այնքան յամրընթաց է որ դարեր ետքը տակաւին անզգալի կը մնայ։ Երկրագունդի տեւականութեան օրերը մարդուն կեանքի խուսափուկ վայրկեաններէն անհամեմատ երկայն են և մինչդեռ մարդուն հետքը արագ արագ կը կորսուի՝ երկրին բնական սահմանները զգալի փոփոխութիւն մը չեն կրեր և անոնց ընդհանուր երեւոյթը համեմատաբար նոյնը կը մնայ։

Բնական աղէտք, Ջրհեղեղ, փոթորիկ, երկրաշարժ, հողերու փլուում, փլուզում, անդառնալի կերպով կը քայքայեն անշուշտ երկրիս մակերեսը սակայն դանդաղ և անզգալի է իրենց պատճառած աւերը։ Աւերման գործին արագութեան մէջ մարդ կը գերազանցէ բնութիւնը․ անտառները հրդեհի կուտայ, մշակելի արտերը խոպան դաշտերու կը վերածէ, շէն քաղաքները հիմն ի յատակ կը կործանէ, անառիկ ամրոցները փլատակներու կոյտի կը վերածէ և ժամանակ մը ետքը փառապանծ յիշատակարաններ՝ իրականութենէ աւելի, մարդոց երեւակայութեան մէջ գոյութիւն կ'ունենան։

Այս խորհրդութեան վերահասու ըլլալու համար կը բաւէ աչքէ անցնել Լինչի պատրաստած Հայաստանի քարտէսին այն մասը որ նմանահանելով կը ցուցադրենք հանդիպակաց էջին վրայ։ Անիկայ կը վերաբերի Տուրուբերանի որ իր մէջ կ'ամփոփէ Տարօն ու շրջակայից պատմական վայրերը։ Կարծես ան ասկից հազարվեց հարիւր տարի առաջ լուսանկարուած է այնքան լաւ կը զուգադիպի Զենոբի նկարագրած վայրերուն։ Նոյն Ջրաշատ վայրերը, նոյն դաշտաձեւ երկիրը, նոյն երկրի հողամասերու բնական շրջագիծը և միթէ Տարօնի նոյն բերանը չէ՞ նաև այսօր որ կը բացուի Եփրատի մէջ թափելու այս երանաւէտ հովիտներու ջուրի քամուքը։

Բայց ո՞ւր են հիմա «յերկրին Տարօնոյ մեհեանն մեծայանն, զի ոսկով եւ արծաթով եւ բազում նուէրս մե-

ծաւալեալ թագաւորաց ձօնեալ անդ, ութերորդ պաշտօն հռչակեալ, անուանեալն միջնաբերդն Վանայնի. ՅԱՃՏԻՑ ՏԵՂԻՑ ԹԱԳԱՒՈՐԱՑՆ ՀԱՅՈՑ ՄԵԾԱՑ, ի սնարս չերինն Քարքեայ ի վերայ գետոյն Եփրատայ, որ հանդէպ հայի ի մեծ լեառնն Տաւրոսի, որ եւ անուանեալ ըստ յաճախապաշտամանն տեղեացն յԱշտիշատ, զի յայնժամ եւս դեռ չէր կային երեք բագինք ի նմա:

Առաջին մեհեանն Վահեվահեան: Երկրորդ Ոսկեմոր Ոսկեծին դից, եւ Բագինն իւր յայս անուանեալ՝ Ոսկեհատ Ոսկիամօր դիցն: Եւ երրորդ մեհեանն անուանեալ Աստղկան դից, սենեակ Վահագնի կարդացեալ ըստ յունականին, որ է ընդ Ափրոդիտէս. Տես էջ 602—603 Ագաթանգեղոս 1835 Վենետիկ:»

Զենոբէն պէտք էինք մանրամասն տեղեկութիւն առնել այս մասին, սակայն ինք չուզեր Ագաթանգեղոսի բառերը և ոճերը գործածել, և թէպէտ Ս. Գրիգոր Լուսաւորչէ հրաման կ'ընդունի ի Բիւզանդիոն դեգերող իր ազգակիցներուն «ամենախաւար զպատասխանիսն յիշել» բայց չը մոռնար թէ «ունէաք արգելուց հրամայեցին՝ չը գրել զպատասխանին. Տես էջ 19 Զենոբ 1832. Վենետիկ.» Չը մոռնար թէ սաստիկ պատերազմէն վերջ երբ ի գլուխ արձանին յիշատակն մը կանգնուեցաւ՝ Ասորիներուն մրցակից Յոյն կղերը պնդեց որ արձանագրութիւնը ըլլայ կրկին «Ասորի եւ Հելլենացի գրով եւ Յոյն Խալդեացի եղանա». Տես էջ 31 Զենոբ. 1832 Վենետիկ: Եւ թէ նախանձորդներ ունի:

Հայաստանի մէջ քրիստոնէութիւնը տարածելու հրաւիրուող Յոյն և Ասորի կղերին այս միջամտութիւնը և հակառակամարտ ընթացքը պատճառ եղաւ որ Զենոբ իր պատմածները իրեն յատուկ եղանակով մը աւանդէ: Այս փցուն վէճերու և խուլ հակառակութեան անցեալին հետանկարը վաւերականութիւն կուտայ Զենոբի գրուած-

քին, բայց նաև անոր գրածը տարբեր կընէ Ագաթանգեղոսի գրածէն։ Պէտք է ամփոփել իր Տարօնոյ հեթանոսական կեդրոնի մասին ամէն պատմածները և Ջանալ անցեալին քօղը վեր առնելու։

* * *

### ՔՈՒՐՄՔ

Դեմետր և Գիսանէ իշխանք էին Հնդկաց և եղբարք ցեղովք. դաւ խոյ խորհեալ նոցա Դինաքսեայ արքային իւրեանց՝ առաքէ զօր ի՞հետ նոցա, կամ սպանանել, կամ յերկրէն հալածական առնել. Տես էջ 35 տող 34։

Իսկ նոքա անկան առ Վաղարշակ և նա ետ նոցա զերկիրն Տարօնոյ իշխանութեամբ և շինեցին քաղաք զոր կոչեցին ՎԻՇԱՊ։ Որք եկեալ յԱշտիշատ և կանգնեցին զկուռսն ղոյնոսիկ զոր ի Հնդիկսն պաշտէին։ Եւ յետ հնգետասան ամի սպան Թագաւորն զերկոսին եղբարսն և ետ զիշխանութիւն երից որդւոց նոցա Կուառայ և Մեղտեայ և Հոռենայ:

Ցետ ժամանակաց Կուառ, Մեղտէս և Հոռեան ելեալք ի լեառն Քարքեայ, գտին զայն տեղին բարեհամ և կանգնեցին երկուս կուռս զմին յանուն Գիսանեայ և զմիւն յանուն Դեմետրեայ։

Գիսանէս էր գիսաւոր և վասն այնորիկ նորա պաշտօնեայք գէսս էին թողեալ զոր հրամայեաց իշխանն կարել։ Այլ խաբէութեամբ զայս հնարեցան, ծամ միայն թողուլ ի գլուխ մանկանցն։ էջ 36 տող 2։

* * *

### ԳԻՍԱՆԷ ԵՒ ԴԵՄԵՏՐ ԿՈՒՌՔԵՐԸ

Ոմանք յիշխանացն զգացուցին Ս. Գրիգորի եթէ ի գաւառն Տարօնոյ երկու բագինք մնացեալք են՝ որ դեռ ձօնեն դիւաց։ Իսկ նորա դէմ եդեալ գայր զի և զայնս քանդեսցէ և եկեալ յերկիրն Պալունեաց յաւանն մեծ Գիսանէ ի քաղաքագիւղն

Կուառս՝ իշխանն Հաշտենից տեղեկացոյց եթէ առ վաղիւն կործանելոց են զԴիտանէ և զԴեմետր և քուրմք գիշերագնաց եղեալ ցեին զգանձս ի տունս գետնափորս։ Եւ ինքեանք աղդ արարին յԱշտիշատ ի քուրմս եթէ ժողովեցէք արս պատերազմողս և վաղիւն հասէք առ մեզ։ Եւ ինքեանք առեալ զօրս՝ որք ի ԿՈՒԱՌԱՏՈՒՆՆ էին, արս իբրեւ չորեքհարիւր ելին ի վերայ լերինն և մնացին մինչեւ այլ զօրքն ուստեք եկեսցեն նոցա յօգնականութիւն։ Էջ 25 տող 4։

Իսկ Ս. Գրիգոր առեալ զիշխանն Արծրունեաց և զիշխանն Անձեւացեաց և զիշխանն Անգեղ տան և զօրս իբրեւ երեք հարիւր ել ընդ բլուրն։ Եւ իբրեւ մերձ եղեն ընդ ելս զառիվերին, յառաջ մատուցեալ Արձանն և Դեմետր և հնչեցուցին զփողն պատերազմին և յանդգնաբար յարձակեցան ի վերայ։ Զօր լուեալ իշխանքն ընդոստեան. զի յորժամ լուան երիվարքն զձայն փողոցն, սկսան վրնջել և պատերազմ յուզել. Էջ 26 տող 27։

Իշխանն Անգեղ տան տայ զՍ. Գրիգոր ի ձեռն իշխանին Մոկաց և ասէ. փութացո յամուրն ՈՂԿԱՆ.

Իշխանն Մոկաց առեալ զԳրիգորիս, դառնայ ընդ զառիվայր բլերն կամելով իջանել ի ԿՈՒԱՌՍ։ Իսկ արք գեղջն հետամուտ եղեն մեզ և մեք հեծեալք յիւրաքանչիւր երիվարս, փախստական գնացաք յամուրն ՈՂԿԱՆ։ Իսկ արք գեղջն եկեալ անցին յայնկոյս ի քաղաքն ԿՈՒԱՌՍ և աղդ արարին նոցա զմէնջ. զոր լուեալ յայսկոյս անցին Մեղտեայ և զամրոցն սկսան պաշարել։

Իսկ մեք յղեցաք գիշերագնաց զոմն առ իշխանն Անգեղ տան և թղթով ծանուցաք զիրսն։ Եւ նա առաքեաց արս ընտիրս սուսերաւորաց որք ի վաղիւն եկեալ անցին յայնկոյս գետոյն և յետ երից աւուրց պաշարեալ զքաղաքն աւերեցին և զպարիսպն հիմնայատակ արարին և զմարդիկ քաղաքին բերեալ ի Մեղտի անցուցին։ Էջ 27 տող 9։

Եւ իշխանքն իբրեւ լուան՝ ելին ի վերայ բլերն և տեսին զԱրձանն զի արս չորեքհարիւր լոկ ունէր ընդ իւր։ Եւ ի մէջ անցեալ իշխանն Անգեղ տանն և Արձան իշխանն իջուցանէր զսուրն և Արձանն յերկիր թաւալէր և կոտեցին արձան ի վերայ նորա և Արձան կոչի անուն լերինն։ Էջ 27։

Եւ մինչ այսպէս գործեցաւ, եկին հասին զօրքն քրմաց ի ՎԻՇԱՊ քաղաքէ և արք Պարտկայ և արք Մեղտոյ և այլք յԱՍՏՂՕՆԻՑ։ Իբրեւ հասին ի գլուխ լերինն՝ ձայն գուժեաց յերկոսեան գունդսն և միաւորեալք դասք քրմացն յարձակեցան ի վերայ

զօրացն Հայոց և իջուցին զնոսա ի զառիվայր լերինն ընդ գեղջն կողմանէ։

Եւ կային մնային իշխանքն մեր զօրուն իւրեանց, զի դեռ ամենեքեան չէին ժողովեալ. քանզի չորեքհազար այր դեռ ի Մեղտի զգերիսն ունէին, իսկ երեք հազարքն անցին ընդ Բասեան և ընդ Հարք և այլքն ի դաշտի անդ ասպատակէին։ Տես էջ 28. տող 4։

Եւ ի նոյն ցեղէն Դեմետրեայ՝ իշխանն Հաշտենից, որ էր ընդ զօրսն Հայոց, կտրեալ եօթն հարիւր արամբ ի քրմաց կողմն եկանէր։ Եւ իշխանն Սիւնեաց հանեալ զնա հանդէպ ԻՆՆԱԿՆԵԱՆ ՎԱՅՐՈՒՑՆ դանակաւ կտրեաց զգլուխ նորա և զմարմինն գահավէժ արար և Արծուիք կոչեն ցայս օր տեղւոյն. Տես էջ 29 տող 6։

Իսկ իշխանն Արծրունեաց տարաւ փախստական զքրմապետն ԱՇՏԻՇԱՏԱՑ որոյ անուն էր Մետակէս, մինչեւ ի գլուխ լերինն և զգի նորա դարահոս արար զոր և Մետսակող կոչեն զանուն տեղւոյն. Տես էջ 30։

Եւ իշխանն Անգեղ տան կտրեաց զգլուխ Դեմետրեայ և ձգեաց ի մախաղն իւր և հնչեցոյց իշխանն Սիւնեաց զփողս պատերազմին ի խաղաղութիւն և լռեցին երկոքին կողմանքն ի կոտորելոյ զմիմեանս։ Եւ քուրմք աղաչեցին զիշխանսն զի թաղեսցեն զմեռեալս իւրեանց և կանգնեցին ի վերայ գերեզմանաց արձանս և գրեցին ասորի և հելլենացի գրով և յոյն և խոմայեցացի նշանաւ. Տես էջ 30 տող 17։

Եւ ինքեանք իջին երեկօթս առնել ՑԻՆՆԱԿՆԵԱՆ ՏԵՂՈՋՆ և փութապէս կոչնական արարեալ Ս. Գրիգորի ինքեանք մնացին անդէն։ Ոմանք ի դիտանոցն մնացին, և այլ զօրքն ի մարգահովին իջեւանս կալեալ առ քաղցր ԱՂԲԵՐՆ ԱՆՏԱՌԻՆ։ Տես էջ 31։

Իբրեւ եկաք իջաք ՑԻՆՆԱԿՆԵԱՆ ՏԵՂԻՆ, տեսաք զԴեմէտր որ հնգետասան կանգուն էր, ընդ չորս բաժանեալ։ Եւ Ս. Գրիգոր հրամայեաց կործանել զԳիսանէս քանզի պղնձի էր՝ երկոտասան կանգուն երկայնութեամբ. Տես էջ 32։

Իբրեւ կործանեցին զօրքն զկուռսն սկսաւ Ս. Գրիգոր հիմն արկանել եկեղեցւոյն։ Եւ քանզի ոչ գոյր նոցա նիւթ պատրաստ, առեալ քարինս անկազմ անտաշս և դնեալ կիր ի բնակութիւն կռոցն. ՍԿԻԶԲՆ ԱՐԱՐ ԵԿԵՂԵՑԻՈՅ Ի ՏԵՂԻՄՆ՝ ՈՒՐ ԿՈՒՌՔՆ ԴԵՄԵՏՐԵԱՅ ԷՐ ԼԵԱԼ՝ ԸՍՏ ՆՈՐԻՆ ՉԱՓՈՑ։ ԵՒ ԱՆԴ ԴՆԷՐ Ի ՏԱՊԱՆ ԲՐՏԵԱՑ ԶԱՋ ԹԵԿՆ ՄԻՆՉԵՒ ՑԱՐՄՈՒԿՆ ԵՒ ԶՁԱԽ ՁԵՌՆ ԹԻԿԱՄԲՆ, ՀԱՆԴԵՐՁ ԵՒ ԶՈՍԿՐ ԲԱՐՁՈՒՑ ԱՋԱԿՈՂՄԱՆՆ ԵՒ ԱՅԼ ՄԱՍՆ ՈՍԿԵՐՍ Ի ՄԱՐՄՆՈՑ ՍՐԲՈՑ ԿԱՐԱՊԵՏԻՆ. Տես էջ 23։

Իսկ ի վաղուն ածեալ առաջի Սիւնեաց իշխանին քուրմ մի աղաչէին զծածկեալ տեղիս գանձուցն ցուցանել և զդրունս գետնափոր տանն և ոչ ասաց և մեռաւ ի նոյն կախաղանին։ Եւ ոչ եղեւ հնար գտանել թէպէտև կարծէին ընդ ՀԻՄԱՄԲ ԵԿԵՂԵՑԻՈՅ ԼԻՆԵԼ, ՈՒՐ ԴԵՄԵՏՐԵԱՑ ՏԱՃԱՐՆ ԷՐ. ՔԱՆԶԻ ՀԻՄՆ ԵԿԵՂԵՑԻՈՅՆ ԵԴԱՒ Ի ՆՈՅՆ ՏԵՂԻՍ ՆՈՅՆ ՉԱՓՈՎ ԼԱՅՆՈՒԹԻՒՆՆ ԵՒ ԵՐԿԱՅՆՈՒԹԻՒՆՆ. բայց միայն զի նոքա յարեւմուտս երկրպագէին. Տես էջ 34։

Նոյնպէս քննէին զտաճարն Դիսանէին ի վեր բերել որ էր ԱՌ ՑՈՐԴ ԱՂԲԵՐՆ, ՑԱՐԵՒԵԼԻՑ ԿՈՒՄԷ, որպէս երկուս քայլս մարդոյ հեռի գոլով և ոչ գտին. Տես էջ 35։

Իբրեւ հիմնարկեաց Ս. Գրիգոր զեկեղեցին և եդ անդ զնշխարսն և կանգնեաց անդ փայտեայ նշան տէրունական խաչին ի ԴՈՒՌՆ ԵԿԵՂԵՑԻՈՅՆ և ի տեղի կռոցն Դիսանեայ. Տես էջ 36։

Իսկ իմ աղաչեալ զՍ. Գրիգոր գնալ ի Վանան իմ. զոր ինքն հիմնարկեաց յանուն Ս. Կարապետին զի լոկ կայր միայն հիմնարկեալ. զոր Թագաւորն իսկ յանձին կալեալ գալ ի տեսութիւն տեղեացն՝ ելեալ ի յԱշտից տեղեացն Թագաւորն ընդ լեռնակողմն գնայր։ Տես էջ 40։

Եւ եկն բնակեցաւ ի ԳԼՈՒԽ ԱՐՁԱՆԻՆ վասն ընդարձակութեան վայրուցն և եկաք ի տեղին ԻՆՆԱԿՆԵԱՆ Թագաւորաւն հանդերձ։ Եւ Անտոն և Կրօնիդէս գային յանտառէն յարեւմտից կուսէ ի քաղցրահամ աղբերէն։ Եւ եկեալ ի բլուրն արեւելեան ի տեղիս ապարացն Դիմետրեայ զոր կոչեմք ԱՐԵՒՈՒ ԲԼՈՒՐ զի անդ էին դարափոս խուցք նոցա ի կողմանէ արեւելից էջ 41։

Եւ կացեալ անդ աւուրս հնգետասան, Թագաւորն Տրդատ ի նոյն տեղին կանգնէր զտէրունեան նշան մեծանդամ քարակոփ ի տեղի տաճարին՝ ուր Դիսանէսն էր, ԱՌԱՋԻ ԱՂԲԵՐՆ՝ ՈՒՐ ԲԺՇԿՈՒԹԻՒՆ հիւանդացն կատարէր։ Տես էջ 42։

Զի մինչ Տրդատ ՑԻՆՆԱԿՆԵԱՆՆ խաչն կանգնեաց, իշխանն Անգեղ տան կանգնեաց զխաչն Հուենից և իշխանն Սիւնեաց կանգնեաց զխաչն Կուառացն Տես էջ 43։

*
* *

## ԵՐԵՔ ԲԱԳԻՆՆԵՐ



Անցեալ դարերու մեր տեսութենէն սքօղած պատմական վայրերուն տեղը ճշդել շատ դժուար պիտի ըլլար եթէ ի հարկէ չունէինք մարդուն և բնութեան գործելու եղանակին տարբերութիւնը։ Բնութիւնը աւերակներու թանձր մոխիրին տակ հաւատարմութեամբ կը պահպանէ իր փլատակները մինչև որ պեղումներ անոնց տեղը երևան հանեն. մարդը իր նմաններուն հետքը կորսնցնելու այն աստիճան կը ճգնի որ վերջ ի վերջոյ զանոնք ինք ալ կը մոռնայ։

Նոր կրօնքն այսպէս հին պաշտամանց սրբավայրեր ինքզինքին կը յատկացնէ. այս է յաջորդութեան բերմունքը. բայց նոյնացումը այն աստիճան ճարտարութեամբ կը կատարուի որ նախկինը անհետ կը կորսուի և փոփոխութիւնը չը նշմարուիր։ ՎԱՀԷՎԱՀԷի մեհեանները կը սրբուին և կը դառնան ԵՀՈՎԱՅԻ տաճարներ, այն բագինները որոնց վրայ կուռ զոհ կը մատուցանէին՝ նուիրագործուելով խորաններու կը վերածուին և այնուհետև անոնց վրայ կենդանի Աստուծոյ պատարագ կը մատուցուի։

Եւ յետոյ ժամանակին վարագոյրը մեր անուշադիր աչքերէն կը ծածկէ իրողութիւնները, բաց ասպարէզ թողլով ենթադրութիւններ ընելու անոնց որ փորձառութեան հասունցուցած ուսումնասիրութիւնը հրատարակելու չեն սպասեր։ Բայց կրկին և կրկին բնագիրները աչքէ անցնողները այն ժամանակի դէպքերը իրենց բուն գոյնով նկարուած կը տեսնեն։ Արդարև եթէ լարուած ուշադրութեամբ կարդանք մեր ձեռք գտնուած պատմութեանց հատկոտորները, ապա ուրեմն կը համոզուինք

թէ քրիստոնէութիւնը Հայաստան մտցնողներն նոյն այն իշխաններն էին որ երբեմն կռապաշտ էին և մէկ օրէն միւը չէին կրնար մոռցած ըլլալ իրենց հեթանոսական ախորժակը և ի հարկէ նոր կրօնը հինին վրայ պիտի պատուաստէին ։

Իրենց գործնական ըմբռնման համեմատ՝ կործանելիք բագիններուն տեղ պէտք էր անշուշտ համարժէք մը դնել և ժողովուրդին դարաւոր ունակութեան կերպով մը գոհացում տալ ։ Ահա ճիշդ այս նպատակով իրենց հետ Կեսարիայէն բերին Ս. Կարապետի մասունքը և իրենց կործանած երեք բագիններուն տեղ դրին և այն վայրագ ընթացքը որով ձեռք բերին իրենց պէտք եղած Ս. Կարապետի մասունքը՝ հակաքրիստոնէական ըլլալուն հանդերձ, անժխտելի ապացոյցն է մեր տեսութեան վաւերականութեան ։

«Թէպէտ բազում անգամ Ս. Գրիգոր խնդրեաց զնշխարս Ս. Կարապետին, այլ Ս. Ղեւոնդէս ոչ կառ յանձն տալ եւ ի փաղիւն բազում պաստառագմունս սպաս ցինել եւ նախարարքն առեալ բռնութեամբ զնշխարս Ս. Կարապետին, եդին ի քաղաքէն մինչ ցի խորհուրդ առեալ իշխանն Անգեղ տանն հարկանել զքաղաքն (Կեսարիա) ի գիշերի հրով: Զոր իմացեալ Հայրապետին, համոզեաց զնոսա ի խաղաղութիւն եւ հազիւ կարաց արձակել զնոսա հաշտութեամբ եւ սիրով· Տես եջ 24 Զենոբ 1832 Վենետիկ:

Ուստի կը տեսնենք թէ սերտ աղերս մը կայ Ագաթանգեղոսի յիշած «Ցաշտից տեղիք թագաւորացն Հայոց մեծաց, ի սնարս լերինն Քարքեայ ի վերայ Եփրատ գետոյ, որ հանդէպ հայի ի մեծ լեառնն Տաւրոսի զի յայնժամ դեռ եւս չէր հային ԵՐԵՔ ԲԱԳԻՆՔ ի նմա. Տես եջ 603 Ագաթանգեղոս 1832 Վենետիկ» և յետոյ նոյն սրբագործուած պաշտամանց վայրերուն մէջ տեղ . այսպէս «1. Զի մինչ Տրդատ զԻննակնեան բագինն կանգնեաց, 2. իշխանն Անգեղ տանն կանգնեաց զխաչն Հոռեաց եւ 3. իշխանն Սիւնեաց

կանգնեաց զխաչն Կուառացն եւ Ս. Գրիգոր երթեալ զխաչսն օրհնեաց՝ հիմն եկեղեցւոյն արկանէր: Տես էջ 24. Ձեռն 1832 Վենետիկ :»

Արդ Տարօնոյ մէջ կային ուրեմն երեք Ս. Կարապետ երեք նախկին բագիններուն տեղ։ Անոնցմէ ԱՌԱՋԻՆԸ Քարքէոյ լերան գլուխն էր, ԵՐԿՐՈՐԴԸ ստորեւ քան զայրս հարաւակողման լերինն, ԵՐՐՈՐԴԸ նոյն լերան ստորոտը։ Այսօր կանգուն կը մնայ երկրորդը զոր երկրաշարժէ փլելէ վերջ, 1788ին նորոգել տուաւ անուանի Ստղուպ ակնցին։ Ուրեմն այս երեք նախորդ բագիններուն եկեղեցւոյ վերածուելէ եւ քը կրած փոփոխութիւններուն անցեալը վերակազմենք, ծայրաքաղ առնելով մեր պատմիչները։

ԱՌԱՋԻՆ ԲԱԳԻՆ. Եկն Ս. Գրիգոր ի տեղին Իննակնեան թագաւորաւն հանդերձ ի բդուռն արեւելեան, ի տեղին աւագացն Դեմետրեայ: Տես էջ 41. Ձեռն. 1832 Վենետիկ՝ Տրդատ կանգնեաց զԻննակնեան խաչն. էջ 43, նոյն. Եւ թագաւորն Տրդատ ի նոյն տեղին կանգնէր զՏէրունեան նշան մեծանուան խաչակնքի ի տեղի տաճարին առաջի աղբերն ուր բժշկութիւն հիւանդացն կատարէր. Տես էջ 43. նոյն. Քանզի հիմն եկեղեցւոյն եդաւ ուր Դեմետրեայ տաճարն էր, ի նոյն տեղին, նոյն չափով լայնութիւնն եւ երկայնութիւնն. բայց միայն զի նոքա յարեւմուտս երկրպագէին Տես էջ 34 նոյն: Իբրեւ կործանեցին զործն զինուորն՝ Ս. Գրիգոր սկիզբն արար եկեղեցւոյ, ուր կուռքն Դեմետրեայ էր չեալ եւ ԱՆԴ ԴՆԷՐ Ի ՏԱՊԱՆ ԲՐՏԵԱՑ ԶԱՋ ԹԵԿՆ ՄԻՆՉԵՒ ՑԱՐՄՈՒԿՆ ԵՒ ԶՁԱԽ ՁԵՌՆ ԽԻԿԱՄԲՆ ՀԱՆԴԵՐՁ ԵՒ ԶՈՍԿՐ ԲԱՐՁՈՒՑ ԱՋԱԿՈՂՄԱՆՆ ՄԱՐՄՆՈՅՆ ՍՐԲՈՅ ԿԱՐԱՊԵՏԻՆ. Տես էջ 33. Քանզի Կարապետին մասունս առ անկեալ դրանն Արշակունին, թագաւ մի հնոց զսանես գրեւեալ նշանին ի մէջն կէս թագաւորն ի զինսոյն եւ յայլս Եկեղեցւոյն: Տես էջ 33. նոյն:

Այս հատուածներէն բացայայտ կը տեսնուի թէ Քարքեայ լերան գլուխը Սրբուս բլուրին վրայ Դեմետրի տամն և հինգ կանգուն բարձրութեամբ արձանը կործանելէն վերջը տաճարին ճիշդ ու ճիշդ տարածութեամբ Եկեղեցի մը շինուեցաւ որուն խաչը կանգնեց Տրդատ զոր օրհնեց Ս. Գրիգոր Լուսաւորիչ և Դեմետր կուռքին տեղ դրին Ս. Կարապետի մասունքէն մեծ մաս մը։ Հիմա տեսնենք թէ նոյն տեղը դեռ ինչ շինուեցաւ։

Զշինուածս մեհեանն մի՛ շինեցես բնակութիւն կրօնաւորացդ, այլ կացուցես ի նմա քահանայս եւ քորեպիսկոպոսս: Տես կջ 11. Որոշեցի նմա դասսակերտս եւ շինեցես նմա աղքատանոցս որպէս զի որք գայցեն ի բժշկութիւն մի լիցի տրտունջ որպէս առ դրան նեղեցուցանիցեն զուխտաւորսն. Տես կջ 11. Իսկ իմ (Զենոբ) աղաչեալ զՍ. Գրիգոր գալ ի վանս իմ զոր ինքն հիմնարկեաց յանուն Ս. Կարապետին, զի ոչ կայր միան հիմնարկեալ. զոր թագաւորն իսկ յանձին կալեալ գալ ի տեսութիւն տեղացն եկեալ ի յԱշտից տեղացն թագաւորն ընդ լեռնակողմն գնայր. Տես կջ 40. Ս. Գրիգոր ժամանակս ինչ մնաց ի Տարօն դադարեալ աւուրս քսան եւ հինգ ի ՎԱՆՍ ԳԼԱԿԱՑ յԻննակնեան տեղիսն Գրուանեայ կոչեցն ի կայան նշխարացն Սրբոյ Կարապետին Տես կջ 14. Իսկ եկիրն Մամիկոնից եթէ հաճոյ թուեցի ձեզ, որպէս եւ դու իսկ ասէիր՝ եթէ զԻննակնեան տեղիսն ինձ տուր եւ անդ զիս եղբայր իմ ձեռնադրեալ եւ ըստ կարի աղաչանացն զանուն տեղւոյն փոխեցաք յիւր աւելի անունն. Տես կջ 13 նոյն.»

Ուրեմն Իննակնեան տեղին կար ընդարձակ վանք մը, ուր կը դիմէին բժշկուելու եկող ուխտաւորներ. նաև հոն կը բնակէին բազմաթիւ կրօնաւորներ ու վանքին անունն էր ԶԵՆՈԲ ԳԼԱԿ։ Հիմա տեսնենք թէ հոն նաև ուրիշ ինչ շինուեցաւ։

«Եւ տեղեկացեալ յիշխանէն Հաշտենից թէ առ վաղին

կործանելով են զմեծ աստուածսն Գիսանեայ եւ Դեմետ-րեայ, զիշերացնաց եղեալ ի տեղի աստուածոցն, եւ ցցին զգանձս ի տունս զետնափորս: Տես էջ 25: Եւ ի վաղիւն ածեալ առաջի Սրբենաց իշխանին Խուռն մի, աղաչէին զծածկեալ տեղիսն գանձուցն ցուցանել եւ զդրունս զետ-նափոր տանն եւ ոչ ասաց այլ մեռաւ ի նոյն կախաղանին. Տես էջ 34: Եւ ոչ եղեւ հնար գտանել, բայց կարծէին ընդ հիմամբքն եկեղեցւոյն լինել. ուր Դեմետրեայ տաճարն էր: Նոյնպէս քննէին եւ զտաճարն Գիսանէին ի վեր բերել որ էր առ յորդ աղբերն յարեւելից կոյս որպէս երկու քայլս մարդոյ հեռի զոլով, եւ ոչ գտին. տես էջ 35. Երաս բարեաց տան ձեզ զԻննակնեան տեղիսդ շինեացիր բնակու-թիւն դասուց կրօնաւորաց, զի զԵպիփան աշակերտ Ս. Ան-տոնի հաւանեցուցի զայս ի նոյն Իննակնեան տեղին ունելով ընդ ինքեան այրս ընտիրս քառասուն՝ ճգնաւորս խարազ-նազգեստս, պարկեշտս վարուք, հրաժարեալք յաշխարհէ: Տես էջ 10. ժողովեցան ի նոյն տեղիս հարիւր արանց չափ եւ ինքեանք միայն աղօթից եւ ճգնութեանց պարապեցին Տես էջ 11. եւ Անտոն եւ Կրօնիդէս գային յանտառէն ի բլուրն արեւելեան ի տեղիս առարոց Դեմետրեայ զոր կոչէին Առեւու բլուր զի անդ էին դարափոս խուցք նոցա. Տես էջ 41. Ս. Կարապետ, որ յԻննակնեան տեղին էր, փլաւ՝ զի շարժ խստացոյն եղեւ. վասն որոյ եւ տունք որք ի ներքոյ նորա ի շարժս անտի փլան. Տես էջ 28 Պատ. Տարօնոյ Յով. Եպ. Մամիկոնեան 1832 Վենետիկ:»

Ուրեմն լերան գլուխ այրաբնակ (troglodyte) ճգնա-ւորներ կային և նոյն իսկ Ս. Կարապետի տակը ԳԵՏ-ՆԱՓՈՐ տուներ կը գտնուէին։ Հիմա տեսնենք թէ ինչ պատահեցաւ։

«Ի նոյն ամի Ս. Կարապետ որ յԻննակնեան տեղին էր փլաւ զի շարժ խստացոյն եղեւ վասն որոյ եւ տունք որք ի ներքոյ նորա ի շարժս անտի փլան: Իսկ եկեղեցին,

քանզի հիմն ի վերայ նոցա էր, շարժեցաւ եւ պատառեցաւ. զոր Մուշեղ Տարօնոյ իշխանն հրամայեաց քարակոփ շինել. բայց ոչ ժամանեցին շինել որպէս արժան էր զի զօրքն Պարսից նեղէին զնոսա. Տես էջ 28. Պատ. Տարօնոյ: Յով. Եպ. Մամիկոնեան 1832 Վենետիկ:

Ի սոյն ամի Արղուահիմ քակէ զեկեղեցին Ս. Կարապետին յԻննակնեան. Տես էջ 58. Պատ. Տարօնոյ Յով. Եպ. Մամիկոնեան 1832, Վենետիկ:

Ահա այսպէս այլեւայլ իրադարձութիւններէ վերջ, այսօր Իննակնեան Ս. Կարապետը քարուքանդ եղած է։ Հիմա տեսնենք թէ նոյն վայրը ինչ վիճակի մէջ է։

Հողմանց ներհակաց պատահեալ մրրկաց ի ներքոյ երկրի, յանկարծ իսկ թնդմամբ շարժեցաւ երկիր ի հիմանէ: Ո՛հ եւ եղուկ ժամուն այնմիկ թէ զինչ գործեցաւ եւ որպիսի թշուառութիւնք զմեզ պատեցին: Զի այնքան անհագին էր շարժումն որ զանշարժելի լերինն ի միմեանս հարկանէր եւ զանազգի մեծամեծ վէմսն պատառէր եւ զգնացս գեղեցիկ աղբերաց արգիլեալ ի բազում ժամս ի ցամաքութիւն փոխէր զտեղին. Տես էջ ՄԷ. Զենոբ Յիշատակարան 1708 Կ. Պոլիս:

Իսկ ի գլուխ լերինն մերձ առ իրեարս են եօթն աղբիւրք կամ ակունք ականակիտ ջուրց որք ի հնումն էին ինն յորմէ եւ այս մենաստանն կոչէր ստէպ ԻՆՆԱԿՆԵԱՆ ՎԱՆՔ Այլ այժմ երկուք ի յակնանց ցամաքեալ կան. Տես էջ 197 Աշխարհագրութիւն մասի Ս. Ասիա Հ. Ղ. Ինճիճեան 1806 Վենետիկ:

Վարդուկ է փարախ խաշանց ի գլուխ լերին Ս. Կարապետին յորում են տակարին աւերակք մեծի գիւղաքաղաքի. Տես էջ 198 Աշխ. մասն Ս. Ասիա Հ. Ղ. Ինճիճեան 1806 Վենետիկ:

Երբ Լինչ այս կողմերէն անցաւ՝ արդէն ձմեռը սկըսած էր և գետինը ձիւնով ծածկուած. (Տես էջ 174-197

Armenia Travels and Studies by H. F. B. Lynch 1901 London)., *այնպէս որ մտքէն իսկ չանցաւ Ինճիճեան Ս. Վարդապետի հետքը փնտռել. բայց ահա տեսանք թէ անոր տեղը ուր է և զայն կը նշանակենք ապագայ խուզարկուներու հետազօտութեան:*

ԵՐԿՐՈՐԴ ԲԱԳԻՆ.— Եւ իշխանն Սիւնեաց կանգնեաց զխաչն Կուառացն էջ 44 Զենոբ 1832 Վենետիկ եւ որ գլխաւոր քուրմն էր, անուն Արծան, եւ որդւոյ նորա՝ Դեմետր, առեալ զօրս՝ որք ի Կուառատանն էին արս իբրեւ չորեքհարիւր, եւ ելեալ ի վերայ լերինն՝ մնացին մինչեւ այլ զօրքն ուտեք եկեսցեն նոցա յօգնականութիւն: Տես էջ 25:

*Այս հատուածէն յայտնի կ'ըլլայ թէ Կուառսի մէջ կար ընդարձակ ԿՌԱՏՈՒՆ մը, ուր կը գտնուէին գլխաւոր ոմն ի քրմանց՝ Արծան, և իր որդին Դեմետր և բազմաթիւ զօրք:*

Երթեալ իշխանն Սիւնեաց յաւանն Կուառս, հաւանեցոյց զզօրս գեղջն՝ գալ ի մկրտութիւն, որք յանձն առին եւ եկին ընդ նմա: Եւ առեալ սրբոյն Գրիգորի իջուցանէ զնոսա ի ձորն Այծասանայ յարեւելից կուսէ հանդէպ ԱՍՏՂՕՆԻՑ բերդին: Եւ որք մկրտեցանն էին արք եւ մանկտի ոգիք հինգ հազար եւ յիսուն: Եւ հրամայեաց քահանայիցն նշան փայտեայ կանգնել ի մէջ գեղջն եւ զկանայսն անդ մկրտել: Եւ լուեալ իշխանն Անգեղ տանն եթէ պաշտօնեայք կռոցն եւ մանկունք նոցա ոչ առնուն յանձն դառնալ առ Տէր Աստուած, էտ տանել զնոսա ի ՓԱՑՏԱԿԱՐԱՆ քաղաքն ի տուն բանտի արս չորեք հարիւր երեսուն եւ ութ՝ գերծեալ ԶԳԷՍ նոցա: Տես էջ 35 նոյն:

*Ուրեմն կռոց պաշտօնեաները և իրենց գլխաւորները նախապէս հաստատուած էին այս ընդարձակ աւանին մէջ որ ունէր երեք հազար տասն երկու տուն և հազար հինգ հարիւր հեծեալ. Տես էջ 37:*

Իշխանին անցեալ գնացին մինչեւ ի դուռն ՄՈՒՇ քաղաքին. եւ տեղեկացեալ զի ոչինչ գոյր եւ ապա դարձան եկին ընդ առաջ մեր եւ դարձուցեալ զմեզ յեզերացն ԱՐԱԾԱՆՈՒ, ոմանք անցեալ մտին ի քաղաքն յառաջագոյն իսկ ոմանք ընդ մեզ երթային: Իբրեւ հեռացաք ի գետոյն իբր ձիու արշաւանօք երկու կամ երեք եւ իբրեւ մերձեցաք առ փոքր ձորակին եւ կամէաք անցանել միաբան եւ գնալ ի տեղի մեհենիցն, քանզի անդ իսկ էր խորհեալ դնել զմնացեալ նշխարսն, ապա ջորիք կառացն այնկոս ձորոյն ոչ կարացին անցանել եւ նստան:

Եւ անդ ձեռն ի գործ արկեալ շինուածոյ եկեղեցւոյն եւ նոյն օրինակաւ ի գիշերի կազմեցաք զտեղի նշխարացն եւ եդաք ի քարեայ տապան անձաւափ զերկուց վկայիցն մերձ առ դուռն եկեղեցւոյն յաջակողմն, զԱթանագինէին զհասարակն եւ զԿԱՐԱՊԵՏԻՆ ԶՈՍԿԵՐՍ ԲԱՐՁՈՒՑՆ ՁԱԽՈՅ ԵՒ ԵՐԿՈՒ ՍՐՈՒՆՍՆ ԵՒ ԶՄԱՍՆ ԻՆՉ ՈՍԿԵՐԱՑ ՈՂԻՆՆ:

*Ուրեմն այս վանքն ալ իր մէջ կը պարունակէր եկեղեցի մը նուիրուած Ս. Կարապետի անուան:*

Ստեփաննոս աշակերտ նորա եկաց հայր վանացն ամս հնգետասան: Սա շինեաց եկեղեցի, ուր Ս. Գրիգոր զնշխարսն պահեաց յայնկոյս Կուառացն առ յորդաբուխ աղբերն. Տես էջ 7 Պատ. Տարօնոյ Յովհ. Եպ. Մամիկոնեան, 1832 Վենետիկ:

*Արդ այս Կուառատան Ս. Կարապետի վանքին մէջ տեղաւորին այն ատեն միայն երեք խորաններ կային այսինքն 1. Ս. Կարապետի, 2. Ս. Աթանագինեայ, 3. Ս. Ստեփաննոսի. ուրեմն ինչպէս կամ ե՞րբ աւելցած են 4. Ս. Աստուածածնայ. 5. Ս. Գէորգայ. 6. Ս. Խաչի. 7. Ս. Պօղոսի. 8. Ս. Պետրոսի. 9. Ս. Յակոբայ և 10. Ս. Լուսաւորչի խորանները որ այս օր առ հասարակ խորանները թիւը տասնի կը բարձրացնեն այս վանքին մէջ:*

Կը խնդրենք մեր ազնիւ ընթերցողներէն որ հաճին անգամ մը դիտել այն լուսանկարներուն նմանահանութիւնը որ Լինչի ընդարձակ գործէն արտատպելով յաջորդ էջերուն վրայ կը ցուցադրենք։ Այն պատկերներէն առաջինը կը ներկայացնէ այսօրուան Ս. Կարապետը իր թանձր պարիսպներով շրջապատուած և Քարքէոյ լեռան հարաւակողմի պորտին ստորեւ կառուցուած։ Միւսը կը ներկայացնէ այսօրուան Եկեղեցին իր զանգակատունով, առանց ամէնքը համեմատաբար նոր ժամանակի շէնքեր են ինչպէս պիտի տեսնենք։

Զենոբ Ասորւոյ պատմութեան տպագրութիւնը կատարել տուողը՝ ինք կ'ընէ սոսկալի երկրաշարժէ մը վերջ առաջին նորոգութեան մը ստոյգ պատմութիւնը և այնքան ուշագրաւ է որ զայն ծայրաքաղ առնելով կը ներկայացնենք մեր ընթերցողներուն։

*
* *

ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ՊԱՏՄԱԳՐԱԲԱՐ

Գրիգոր և Յովհաննէս սպասաւորք Սուրբ Աւետարանին զկնի վախճանման հոգեւոր հօրն մերոյ Տեառն Վարդանայ Աստուածաբան րաբունապետի հողմավարեցաք ի բարձրահամբաւ համալսարանիս մերմէ որ է ի Զորրորդ մասին Հայոց ի Սալնոյ ձոր կերտեալ ի բդեշխաց Արծրունեաց որ կոչի ԲԱՂԷՇ։ Ի սոյն քաղաքիս շինեալ ի բլրոջ գագաթան տաճար յանուն Ս Յ. Կարապետի: Արեգակնածագ կողմամբն են զարմանաշար աղբերակօք և փոքր պարտիզիւ։ Իսկ յարեւմուտն յորդ ընթացիւ գետով և հեզաքայլ առուիւ գեղազարդեալ ծառաստանիօք։ Զսոյն Ս. Վանքս ի հիմանէ նորակերտեալ խաչակուռ կաթուղիկէիւ, աշակերտական գրովք և ճոխ վարդապետական մատենիւք, եկեղեցական զգեստիւք պսակեաց հայրն մեր վերոգրեալ։ Եւ զի թէպէտ գոն յայսմ քաղաքիս այլ վանորայք, սակայն այս անդրանիկ գոլով և նախամեծար քարոզի։



Ս. Կարապետի Վանքը

Որ և Ս. վարդապետն ԲԱՍԻԼ ԱՂԲԱԿԵՑԻ եգիտ գիտութեան արտաքնոց զշաւիղ և ուսուցանելով զհին կորուսեալ և զնոր գտեալ իմաստութիւն զայն գիտութիւնս ի մէջ ազգիս մերոյ սփռեաց որպէս վկայաբանէ Առաքել վարդապետ իսկ ի թուաբերութեանս մերում (Ռ ճ Խ Դ) 1695 ամփոփեցաւ յիշման աւուրն Լուսաւորչի ի վերայն՝ ի գամբարանի նեղ յատակի սոյն Ս. Տաճարի առ ընթեր վերոյ ասացեալ Ս. Բարսղի ուստի և հանգեաւ ի յոքնավէշտ աշխատութեանց թէ յայլասեռից և թէ ի մերայնոց ամբարտաւանից և գոռոզակրօն ինքնահաճից որք նախանձէին ընդ լուսակրօն վարս նորա։ Յետ հովուիս մերոյ առ Տէր գնալոյ՝ ցրուեցան գառինք և ողբացելոցս դէմ եդեալ յերկիրն Տարօնոյ չուեալ անտի յԱպահունիս և անտի ի Վաղարշակերտ, գնալով ի Վիշապաձորն ուխտ Թաթլոյ և Վարոսի և անտի զԳաբեղինեօք և զԿրօք մինչ ի վանքն ՀՈՌՈՄՈՑ տեսաք ոչ սակաւ մարդասիրութիւնս. յաւելին զհրաւէրն եթէ կացէք աստ։ Նա ելեալ անտի դարձաք ընդ կրունկն հասաք ի Ցործանք գիւղին և Տէր լուսաւորեսցէ զհոգի Կարապետ եպիսկոպոսին վերադիտողին Ս. Գլակայ քանզի կարի սիրով ընկալան զմեզ։ Նա իբրև մտաք ի ձորն ընդ լուսանալ առաւօտուն և մեք սկսաք զԱՐԵԳԱԿՆ ԱՐԴԱՐՈՒԹԵԱՆ, երեւեցաւ լուսաճաճանչ տաճարին Սրբոյ դէմ որ հայի հանդէպ Մամիկոնեան դաշտին և Տարօնոյ բաժնի։ Նա իբրև հասաք ի տեղին՝ լցաք անպատմելի խնդութեամբ։

Տեղւոյն վայելչութիւնք, եթէ Սրբոց շիրմիւք հրեշտակախումբ տաճարացն և զտեսողն ածին յափշտակութիւն զի ունի գեղեցիկ մայր՝ գեր քան զԼիբանան. պսակեալ անուշահամ լեռնաքուխ աղբերակօք բազմեալ ի լեառնս Քարքէոյ։ Այլ զՄարաց անգութ լինելն և զարիւնս մեր ծծելն անասելի է որք գիշատէին զմեզ և տառապէին ի մայրս և ի ծերպս վիմաց փախստական առնելով մաշէին զմեր կեանս։ Նա զայս ոչ միայն յանհաւատից կրէաք, այլ և ի մեր ազգէ։ Զի յորժամ տեսանեմք զոք աստուածապաշտ գնացիւք գիտութեամբ՝ ջանամք զայնս խափանել յայնպիսի գնացից և այսպէս երբեմն ի ՀԱՒԱՏՆ դնեմք արատ որպէս ասէին զումեմնէ սրբոյ թէ ԾԱՑԹ է և երբեմն զվարս անուղիղս համբաւեմք զնոսա ունել։

Իսկ ի հազար հարիւր յիսուն և հինգ (1706) թուականին նորոգեցան սագերն սրբոյ Կարապետին և Սրբոյն Ստեփաննոսի ի սոյն, ամի Սարգիս վարդապետն՝ որ էր ի մեր դասատունէս, նորոգեաց զեզրորդի Վանուցն։ Նա զբովանդակ շինուածոյն ծախսն

խնքն հոգացի։ Եւ որպէս գրեցաք եհաս թուական (ՌՃԾԸ) 1709 Եւ էր սովորութիւն ի հարցն առաջնոց ի ձմեռնային եղանակին շրջէին քարոզել զբանս Աստուածայինս և ի գարնանային հրապակին դառնային և ըստ այսմ սովորութեան դարձաք ի Ս. Վանս ի տեղեացն յորս շրջէաք և իբրեւ առեալ զոգեպահիկ կերակուրն զետեղեալ լինէաք իւրաքանչիւրքս ի մենարանիս՝ հողմոց ներհակաց պատահեալ միմեանց ի ներքոյ երկրի, յանկարծ իսկ թնդմամբ շարժեցաւ երկիր ի հիմանէ անտի սկսանելով յեկեղեաց գաւառէն և հասանելով առ մեզ։ Ա՛հ, եւ եղուկ ժամուն այնմիկ թէ զինչ գործեցաւ և որպիսի թշուառութիւնք զմեզ պատեցին զի այնքան ահագին էր շարժումն որ զանշարժելի լերինս ի միմեանս հարկանէր և զահագին մեծամեծ վէմս պատառէր և ըզգընացս գեղեցիկ աղբերաց արգելեալ ի բազում ժամս ի ցամաքութեան փոխէր զտեղին, առ ի վայր գնացքն Եփրատայ ահագին գետոյն ընդ կրունկն դարձեալ՝ ջուրքն ընդ երեսս դաշտին սփռէին։ Եւ հանդերձ ամենայն միաբանիւք իբր արք հարիւր արտասուագոչ հառաչմամբ արտաքս ոստէաք, բացաք զաչս մեր և յառեցաք ի տեսանել զբարձրադիտակ Կաթուղիկէ Սրբոյ Կարապետին և ահա ոչ երեւիւր զի անկեալ էր յերկիր ընդ որում և այլ շինուածք մեծի ուխտին քայքայեալ և կործանեալ էին։

Եւ դիմեցաք անտի ի բարձր բլուրն արեւմտեան որ հայի ի վերայ Վանիցն և առ տաճարն և տեսաք զնոսա ոչ որպէս յերէկն և յեռանդն, այլ յայլ իմն դարձեալ կերպարան։ Եւ իջեալ անտի ի հողաբլուրն անցաք առ դամբարանօք և մնացաք անդ ի կողմն հիւսիսոյ զերիս աւուրս առ հուպ վանիցն։ Եւ զկնի երից աւուրց՝ եկին հասին ի Մուշեղաշինայ Մարիշխանէն և դատաւորէն արք որք տեսեալ զիրսն՝ ծանուցին մեծի Խանին որ ի Բաղէշ և մեր գնացեալ ընդ նոսա առնուլ հրաման և շինել զանկեալսն և ետ հրաման նորոգ կերտելոյ։

Եւ երթեալ ընդ կողմն հիւսիսոյ հասանելով յաղբիւրն բարեհամ, անցանելով զջուրն որ առաքելոց և աւագական ակունք ասի ելանելով ի կատար նոյն լերինն Քարքէոյ ընդ մէջ գնալով երկուց բարձրակատար գագաթանցն և իջանելով զառիվար միւսոյ կողման վազս առնելով ընդ ջրոյն կողմն որ կայ հանդէպ Մանդակունեաց գաւառին յարեւմուտս Շամունեաց. գտաք անդ պէս պէս տեսակ քարանց և բերեալ շինեցաք զԿաթողիկէն գեղեցկագանդակ յօրինմամբ. Նմանապէս և զաւիթ կամարակապ քարեայ սեամբք և զանկակատուն կաթուղիկեայ խաչիւ պսակեալ և Ս.



Ս. Կարապետի եկեղեցին

Հոգւոյ սեղանին զարդարեալ և այլ շինուածք թանապիք և խրճիթք։

Սակայն պարտուց անկաք ի ներքոյ որոյ վասն եկեալ ի սրբոյ ուխտէն տարադէմ հասաք ի քաղաքն Կոստանդնուպօլիս և վերադարձող նորին Եպիսկոպոսն Խաչիկ ընկալաւ զմեզ բազում սիրով և յորդորեաց զժողովուրդն որք ետուն զողորմութիւն լիալիր որով և ազատեցաւ Ս. Վանքն ի պարտուցն և գերազանցապէս շքեղացաւ և մեզ յորդորիչ էր գլուխ և դէտ հայրս մեր Գրիգոր րաբունապետն սրբակրօն։ Ընդ մեզ էր և եղբայրն իմ Աբրահամ վարդապետն որ այժմ վերատեսուչ և առաջնորդ Տարօնոյ և դռնակալ Սրբոյ Ուխտին այնորիկ։ Իսկ և Ներսէս ծերունի վարդապետն և Յովհաննէս վարդապետն և այլ բազում կարգաւորք, սարկաւագունք և կրօնաւորք։ Հուսկ եւ ես Յովհաննէս որ աստ և զյիշատակարանս գրեցի։ Տես էջ ԽԴ—ԿԲ. Յիշատակարան Զենոբ Ասորի 1708 Կ. Պոլիս։

*
* *

Բաղէշի Ամիրտոլու վանքը այս յիշատակարանին մէջ կը կոչուի համալսարան. Աղբակեցի ԲԱՍԻԼ վարդապետ մը արտաքին գիտութեանց մէջ կը զարգացնէ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿՈԼՈՏ Բաղիշեցին (որ յետոյ պատրիարք եղաւ 1715ին և վախճանեցաւ 1741ին Յովհաննէս Կոլոտի ընկերը Գրիգոր, այս գրքին մէջ մեր նմանահանած գծագրութիւններէն դատելով, քաջ նկարիչ էր ԿՈՆՈՆՈՍԻ ՎԱՆՔԷՆ։ Յովհաննէս ինքզինքին համար կ'ըսէ թէ ՀՌՈՄՈՑ վանքն այցելեց Վաղարշակերտէ վերադարձին. նաև կը գանգատի թէ իր ժամանակի եկեղեցականներ իրեն նման զարգացումն առածներուն ՄԱՑԹ կըսէին։ Անշուշտ Իւնիթօրներու անուղղակի ազդեցութիւնը կրած էր և ի նորոյ 1709ին կառուցած Ս. Կարապետի վանքին մէջ Ս. Պօղոս և Պետրոսի մատուռները ինքը աւելցուց։

*
* *

Արդ «Ս. ԿԱՐԱՊԵՏ ի Թուրքաց կոչի Զանկը ֆեյի-սա մեծատեղի եւ ուխտատեղի հռչակաւոր 6 ժամու հեռի

ի Մշոյ, 7 ժամու ի Կեղոյ եւ ի Ճապաղջոյ իբր 3 ժամու յԵփրատայ ի հիւսիսոյ կառուցեալ ստորեւ քան զպորտ հարաւակողման լերին. պատեալ կայ բերդանման պարըսպաւ եւ երկաթի ճարտարագործ դրամբք ամրացեալ:

«Եկեղեցին է տափարակ տանեօք կամարակապ ի վերայ 16 քառակուսի սեանց հաստատեալ: Աւագ խորանն է յանուն Ս. Խաչին, յաջմէ աւագ խորանին է դուռն մատրան Ս. Ստեփաննոսի. աստի եւ անտի այսր դրան՝ են երկու փոքրիկ խորանք յանուն Ս. Պետրոսի եւ Ս. Պօղոսի եւ մերձ ի խորան Պետրոսի է այլ խորան յանուն Ս. Յակոբայ Տն. եղբօր. ի ձախմէ աւագ խորանին է դուռն մատրան Ս. Կարապետին, առընթեր որոյ է խորան Ս. Լուսաւորչին:

Մատուռն Ս. Ստեփաննոսի անկանի յաջմէ աւագ խորանին. եւ է իբր տաճար համօրէն եկեղեցւոյն ունելով ի վերայ կաթուղիկէ մեծ, ի սմա վճարեն ուխտաւորք զդարպաս իւրեանց: Իսկ մատուռն Ս. Կարապետին է ի ձախմէ կամ ի հարաւակողմ աւագ սեղանոյն փոքր քան զՍտեփաննոսին, նոյնպէս ունելով ի վերայ Կաթուղիկէ. ուր են երկու դամբարանք քառակուսիք ի մուտս դրան, յաջմէ Ս. Աթանագինեայ եւ յահեակ Ս. Յովհաննու, զարդարեալ ոսկւով եւ արծաթով, քառեակ աստիճանօք բարձրացեալ յերկրէ:

Ամենայն ուխտաւորաց խոստովանեալ եւ ի ծունկս իջեալ այնպէս մտանեն յայս մատուռն. իսկ ի կանանց ի սկզբանէ անտի ոչ ումեք թողուն մտանել ի ներքս, իսկ զաջն արտաքոյ եղեալ ի ջերմեռանդութիւն ուխտաւորաց քառեակ մատամբքն. զի ճկոյթ մատն եղեալ կայ ի Մատնեվանքն. եւ սակս այսորիկ նշխարաց սրբոյս՝ կոչի տեղիս ի ժողովրդենէ Ս. Կարապետի գերեզման:

Անդ են երկու մատրունք առանց գմբեթի, յորոց մին է յանուն Ս. Ածածնի, առընթեր եւ յարակից Ստեփաննոսի տաճարին ի հիւսիսոյ կողմանէ ուր պատարագեն ասորի քահանայք ուխտաւորք շրջակայ տեղեաց ի ջեզու իւրեանց,

ուր եւ կայ այժ գերեզմանն: Երկրորդն է ի հարաւոյ կողմանէ յարակից Ս. Կարապետի գերեզմանին յանուն Ս. Գէորգայ: Զանգակատունն եկեղեցւոյս 4 զանգակաւքն է ի վերայ հարաւակողման դրան ժամատանս որ հայի յարեւմուտս հարաւոյ, յորոյ միջնայարկի է խորան Ս. Հոգի կոչեցեալ: Յաւուրն Վարդավառի հաւաքին ի սմա բազմութիւնք ուխտաւորաց, պատուելի է տեղիս նաեւ առ քուրդս շրջակայս որք զոհս մատուցանեն ըստ օրինի իւրեանց եւ երդնուն յանուն սորա ասելով ՏԷՐ ԷԼ ԷՍՊԻ:

Յամին 1784 եղեւ երկրաշարժութիւն ի Ս. Կարապետ եւ կործանեցան բաց յայլ շինուածոց պարիսպք հարաւակողման, սենեակք, սեղանատունն (զոր նորոգեալ էր անուանի Եաղուպն ակնցի՝ որ յաւուրս Սուլթան Մահմուտին), կողմն ինչ զանգակատան (զոր քարակերտ սեամբք զարդարեալ նորոգեալ էր նոյն Եաղուպն. եւ խաչ եդեալ ի գլուխն.) կաթուղիկէն Ս. Ստեփաննոսի, բայց որ ի վերայ կաթուղիկէին Ս. Յովհաննու. եւ ի ներքոյ աւերակաց մնացին քանի ինչ անձինք, ընդ որս եւ երեց մի, այլ Պէյն Մշոյ հրամանաւ ետ առաջնորդին շինել զայս աւերեալն զոր կատարեցին 1788ին բազում ծախիւք:

Եւ ի շինելն ի ներքս առեալ զգաւիթն ընդարձակեցին զեկեղեցին յաւելմամբ 8 սեանց, զզանգակատունն նորոգեցին բարձրագոյն եւ վայելուչ քան զառաջինն. զՍ. Հոգի խորանն որ յառաջ էր ի գաւիթ՝ ի ներքոյ զանգակատան փոխադրեցին: Առաջնորդարանն է ի հիւսիսակողմն եկեղեցւոյ. իսկ աւանդատունն ի հարաւակողմն. ի նոյն կողմն են եւ սենեակք միաբանից. ի ներքոյ նոցա սեղանատունն:

Յարեւելակողմն եկեղեցւոյն ի խաչքարի անդ՝ որ է յարակից մատրանց Ս. Ստեփաննոսի եւ Ս. Կարապետի՝ են գերեզմանք ինչ առաջնորդաց Վանուց: Ջուր մենաստանիս առատ է. զի յաղբերաց լերին, մանաւանդ որ կոչի ԱՒԱԳ ԱԿՆԵՐ՝ ուղխօրէն հաւաքեալ մտանէ ի մենաստանն

*եւ բաշխի յերկուս խառանկիւնս նորա եւ ի տեղատունն ապա միացեալ դարձուցանէ ջրաղաց ի մէջ նոյն մենաստանին, յետ երանելոյ արտաքս՝ ոռոգէ զպարտէզս եւ զանդաստանս մենաստանին. այս ԱՐԱԳ ԱԿՆԵՐ անկանի ի հիւսիսակողմն մենաստանին կէս ժամու տարակաց ի նմանէ: Իբրեւ խորընկէց մի տարակաց յորմէ Վանուց արեւմտից կոյս՝ է ԱՂԲԻՒՐ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ որոյ ջուր ի ներքուստ երկուց կամարաց հոսի յաւազան անդր՝ որ է վէմ մեծ. զոր Տրդատ թագաւոր ասեն եդեալ եւ անդ մկրտեալ Լուսաւորչին զբազմութիւն Քրիստոնէից, է եւ այլ աղբիւր կոչեցեալ ԲԱՐԵՀԱՄ: Տես էջ 194-197 Աշխ. Հ. Ղ. Ինճիճեան 1806 Վենետիկ:*

*
* *

*Արդ մեր ցուցադրած պատկերներուն մէջի Ս. Կարապետի վանքն ու եկեղեցին, նախապէս կառուցուած Ս. Կարապետի վանքին ու եկեղեցւոյն նո՞յն են միթէ։ Եթէ նկատի առնենք այդ ·ին Սրբավայրերուն բուն երկրաշարժներէն կործանիլը և կրկին ու կրկին կառուցուիլը, եթէ հաշուի դնենք նաև թշնամիներու մերթ ընդ մերթ արշաւանքը և վերաշինութեան դէմ անոնց յարուցած արգելքը՝ կը ստիպուինք ընդունելու թէ ԿՈՒԱՌԱՏԱՆ Ս. Կարապետի այսօրուան դիրքը խնդրական է և տեղը պէտք է ճշդել։ Բայց նախ բաղդատութեան դնենք Տրդատայ ատենադպիրին և Ասորւոյ պատմիչին այս մասին մեզ հաղորդած ծանօթութիւնները։*

*
* *

ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ

Իբրեւ եկին մօտ ի տեղին ի գետն Եփրատ իբրեւ ձիոյ արշաւանօք երկուք, եւ դեռ ընդ փոքր ժամակ մի անցանել կամէին ընդ ջուր մի սակաւ, զտեղի առին ՍՊԻՏԱԿ ՋՈՐԻՔ ԿԱՌԱՑՆ՝ ուր կային Գանձք Աստուածայինք, նշխարք նոցա, եւ ոչ կարացին հանել ընդ ժամակն: Ուր եւ անդէն բազմութեան զօրացն, մեն սակաւ սատարեալ շինեցին զվկայարանն:
Տես էջ 604-605 Ագաթ. 1835 Վենետիկ:

ՋԵՆՈԲ ԳԼԱԿ

Իբրեւ հեռացաք ի գետոյն իբր ձիոյ արշաւանօք երկու կամ երեք, եւ իբրեւ մերձեցաք առ փոքր ժամակին, եւ կամէաք անցանել միաբան եւ գնալ ի տեղի մեհենիցն, ապա ՋՈՐԻՔ ԿԱՌԱՑՆ յայնկոյս ջրոյն ոչ կարացին անցանել եւ կեցան: Եւ անդ ձեռն ի գործ արկեալ շինուածոց եկեղեցւոյն՝ ի գիշերի կազմեցաք զտեղի նշխարացն:
Տես էջ 32, Զենոբ 1832 Վենետիկ:

Ուրեմն խնդիր է գիտնալ թէ ո՞ւր կեցան ՋՈՐԻՔ ԿԱՌԱՑՆ, և աւանդութիւնը ինչ կ՚ըսէ այս մասին, որոշենք ուր որ կառքին սպիտակ ջորիները կեցան, հոն դրուեցաւ եկեղեցւոյ հիմը։ Արդ, Հ. Ղ. Ինճիճեան իր աշխարհագրութեան մէջ կը յայտարարէ թէ.

«Իբրեւ քառորդաւ հեռի ի մենաստանէն եւ ի կէսն ճանապարհին փակահին է տեղի ինչ կոչեցեալ ՋՈՐԱՀԵՏԻԿ կամ ՋՈՐԵՀԵՏԻԿ, ուր ի վիմի ցուցանեն զհետս ոտից ջորւոյ, ուր արգելեալ մնաց, ասեն, որ բարձեալ ունէր զնշխարս սրբոյ Կարապետին: Տես էջ 197 Աշխ. Մասն Ա. Հ. Ղ. Ինճիճեան 1806 Վենետիկ:

Եթէ աւանդութեան վստահինք՝ պէտք կ՚ըլլայ ընդունիլ թէ այս օրուան Ս. Կարապետի դիրքը նախկին տեղէն խախտած է և քառորդ մը դէպի վեր տարուած է։ Բայց աւելին կայ Հ. Ղ. Ինճիճեան կը կարծէ թէ «Ագաթանգեղոս քրք. յիշ. ոչ այսր, այլ ստորեւ Աշտիշատու դնէ զդիպուած ջորւոյ: Տես էջ 197 Աշխ. մաս Ա. Հ. Ղ. Ինճիճեան 1806 Վենետիկ:

ԵՐՐՈՐԴ ԲԱԳԻՆ.— Իշխանն Անգեղ տան կանգնեաց

զիւղն Հոռեանց. (տես եջ 24 Ջենոր 1832 Վենետիկ): Մատնէ վանք, այսպէս կոչի վասն ՃԿՈՅԹ ՄԱՏԻՆ Ս. Յ. Կարապետին որ պահի յեկեղեցւոջ նորին, կոչի նաեւ Մատրավանք որպէս եւ կոչէր ի հնումն յոմանց Մանրավանք. զի յեկեղեցի սորին եղաւ մասն ի Սրբոյն Գրիգորէ մանրունք յոսկերաց Ս. Յ. Կարապետին եւ Աթանագինեայ, այլ է աղաւաղութիւն հին անուանս Մատրավանք: Վեց ժամու հեռի է այս մենաստան ի Մշոյ ի հիւսիսակողմն նորա եւ հինգ ժամու հեռի է ի Գլակայ Ս. Կարապետին յարեւելեան կողմն նորա, իբրեւ երեք քառորդաւ հեռի ի Մկրճիկէկ Գալչուկէ, յարեւմտից կողմն նորա կառուցեալ ի հիւսիսային եզր փոքրիկ ձորակոյ: Միայն եկեղեցի սորա է քարաշէն եւ գմբեթաւոր: Աշխ. մասն Ա. տես եջ 193 Հ. Ղ. Ինճիճեան 1806 Վենետիկ:

Իշխանն Արծրունեաց, Վարդ պատրիկ, ունէր կին բարեպաշտօն Մարիամ անուն: Տես եջ 9 Պատ. Տարօնոյ, Յով. եպ. Մամիկոնեան 1832 Վենետիկ: Եւ գնաց ի Մատրավանս վասն նիւթ գտանելոյ, եւ անդ շինեաց եկեղեցի վայելուչ եւ կոչեաց զանուն նորա վասն կնոջն իւրոյ՝ Սուրբ Աստուածածին եւ զարդարեաց զնա հրաշալի սպասիւք եւ կազմութեամբ. տես եջ 12 նոյն: Իսկ Վահանայ վարեալ զզօրսն եւ հասեալ ի դաշտն որ ի վերայ Մատրավանիցն եւ բոլորեալ ռազմ կազմեցին. տես եջ 51 նոյն: Եկին իջին ի բլուր մի որ հայի ի դաշտն Մատրավանից, տես եջ 53 նոյն: Ի նոյն ամի Ապդուահիմ քակէ զեկեղեցին Մատրավանից ի Տարօն տես եջ 58 նոյն:

Հոս ալ հնախույզները օր մը երեւան պիտի հանեն Աշտիշատու երրորդ բագինին տեղ հաստատուած Ս. Կարապետին դիրքը։ Բան մը որ ափսոսալի է սակայն սա է թէ մեր բնիկ աշխարհին անցեալով զբաղող ազգային թէ օտար գիտնականներ կատարելապէս անգէտ են այս մասին եւ այս օրուան Ս. Կարապետէն ուրիշ Ս. Կարապետ չեն յիշեր։

Ինչպէս կը ցուցնենք որ ՀԱՅ ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ԵԿԵՂԵՑԻՈՑ ԾԱԳՈՒՄԸ պատմել կարծող յոյժ պատուական Կէլցէր Թերի ծանօթութիւններու վրայ իր յայտարարութիւնը կը հիմնէ և մակերեսային քննութեամբ մը գոհ կ՚ըլլայ։ Բայց ի՞նչ պիտի ըլլայ ստոյգներու հմտութիւնը այս մասին, նոյն իսկ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻՆ ՊԱՏՄԱԿԱՆ ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆԸ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՂ յոյժ պատուական Հ. Հիւբշման իր բազմահաչակ երկասիրութեան մէջ միայն (compulser) կը հաւաքէ վերիվերոյ տեղեկութիւններ ազգային մատենագիրներէ և յայլոց այս մասին. և որովհետև ըստ ոմանց այս յայտարարութիւնը Թերևս յանդուգն կարծուի՝ անշուշտ հարկ կ՚ըլլայ մէջ բերել Ս. Կարապետի մասին անոր աւանդածները։

Վանք Ս. Կարապետի, յառաջ եկեալ Գլակայ վանք ըն-ռուած Հ. Հ. 98 Թրք-Զանկալլի՝ Լինչի ֆով. Զանկու ֆիլի-սա՝ Կիպերտի ֆով. Զանկլը ֆէլիսա «Զանգակատուն Եկեղեցի»: Ինճիճեան Նոր Հայաստան 194 (թրք ԶԱՆ «զանգակ» բառէս չանկը զանգակատուն). «Մուրատ սուի հիւսիսակողմը. Տես էջ 190. Հին Հայոց Տեղւոյ անուններ. Հ. Հիւբշման 1907, Վիեննա, Ազգային Մատենադարան. Ծ Գ.:

Արդ Յարգելի Դր. Խալաթեան պէտք էր գոնէ ինք գիտնար թէ Ս. Կարապետի մասունքը երեք բազմաներու տեղերը նուիրագործելու և օրհնելու համար բաժնուեցան երեքի, և երեք տարբեր Ս. Կարապետներ կային. այսպէս.

ԱՌԱՋԻՆ. ԻՆՆԱԿՆԵԱՆ Ս. ԿԱՐԱՊԵՏ կամ ՋԵՆՈՒՔ ԳԼԱԿ. հոս դրուեցան Ջենոպի և Աղբիանոս եպիսկոպոսի ձեռքով ի տապան բրուտայ ի ներքոյ խորանաց «աջ թեւն Սրբոյ Կարապետին մինչեւ ցարմուկն, եւ զձախ ձեռին թիկամբն համերձ, զսակր բարձուց աջակողմանն եւ այլ մանր ոսկերս ի մարմնոյն:» Թարէոյ լե-

րան գլուխը ․ բժկութեան Իննակնեան աղբիւրէն մի քանի քայլ անդին , Արեւու բլուրին վրայ ԴԵՄԵՏՐԻ տաճարին տեղը նոյն չափով՝ լայնութեամբ և երկայնութեամբ կառուցուած Եկեղեցիին մէջ ։ Հոն Հայոց Տրդատ Թագաւորը Իննակնեան խաչը կանգնեց զոր օրհնեց Ս․ Գրիգոր Լուսաւորիչ ․ Անտոն և Կրօնիդէս Արեւու բլուրին տակ դարափոր խուցեր բացին և հոն բնակեցան ․ Արեւու բլուրին տակ գետնափոր խուցեր կային ․ այս խուցերը

Ասորւոց լեզուով Դղակ կը կոչուին [illegible] Այդ Իննակնեան վանքը ըստ կարի աղաչանաց Զենոբայ՝ Ս․ Գ․ Լուսաւորիչ փոխեաց յիւր անելի անունն և կոչեաց ԶԵՆՈԲ ԳՂԱԿ ։ Ս․ Կարապետն որ յԻննակնեան տեղին էր խըստագոյն շարժէ փլաւ քանզի տունք որ ի ներքոյ նորա ի շարժէ անտի փլան և հիմն եկեղեցւոյն պատառեցաւ ։ Մուշեղ Տարօնոյ իշխանը հրամայեց քարակոփ շինել և չը ժամանեցին շինել որպէս արժանն էր զի զօրքն Պարսից նեղէին ։ Արդուահիմ ․ քակեաց զՍուրբ Կարապետն յԻննակնեան ։ Այժմ Քարքէոյ լերան գլուխ Իննակնեան աղբիւրին երկուքը ցամքած են և միայն եօթը կը վազեն , իսկ վանքին տեղ կայ տակաւին Վարդուկ կոչուած աւերակը հին Իննակնեան Ս․ Կարապետին կամ ԶԵՆՈԲ ԳՂԱԿԻ տեղ ։

ԵՐԿՐՈՐԴ․ ԿՈՒԱՌԱՏԱՆ Ս․ ԿԱՐԱՊԵՏ․ հոս դըրուեցան ի քարեայ տապան , զԿարապետին զոսկերս բարձուցն ձախոյ, եւ զերկու սրունսն եւ մասն ինչ ոսկերացն ողին: Արածանի գետին եզերքէն իբր ձիոյ արշաւանօք երկու կամ երեք դէպ ի մենաստաններուն տեղը ուր Ջորիք կառացն նստան և չկրցան անցնել յանկոյս ձորոյն ։ Հոն Սիւնեաց իշխանը Կուառայ Խաչը կանգնեց զոր Ս․ Գրիգոր Լուսաւորիչ օրհնեց և այս տեղը այն երկու տե-

դերէն մին էր ուր մահը որջացեալ էր. (Տես էջ 8 տող 18. Ջենոբ 1832 Վենետիկ) հոն երբեմնի Կուառաստան մէջ կային չորս հարիւր այր ի սպասու կռոցն (Տես էջ 25 տող 22. Ջենոբ 1832 Վենետիկ)· այս եկեղեցին և յարակից վանքը թշնամիներու արշաւանքի ժամանակ կամ սաստիկ երկրաշարժներէ փլան և տեղերնին քիչ մը աւելի հիւսիս փոխադրուեցաւ. և ՋԵՆՈԲ ԳԼԱԿ՛ երբէք այս չէ՛ :

ԵՐՐՈՐԴ. ՄԱՏՆԱՎԱՆՈՒՑ Ս. ԿԱՐԱՊԵՏ. Անգեղտան իշխանը Հոռենից խաչը կանգնեց հոն զոր Ս. Գրիգոր երթալով օրհնեց: Հոռեանս Պալունեաց գաւառին մէջ կը գտնուէր և մեծ աւան մըն էր Քարքէոյ լեռնէն վար: Մատնավանք կոչուեցաւ որովհետեւ Ս. Կարապետի Երկոյթ մասը աս վանքին եկեղեցւոյն մէջ կը պահուէր. Աբդռահիմ զայն ի հիմանէ կործանեց:

Ահա այսպէս կը հաստատուի որ կէտ առ կէտ նոյնացումը յառաջ տարուած էր Ս. Գ. Լուսաւորչի կողմանէ և ինչպէս ԱՇՏԻՇԱՏ մէկ մեհեան մըն էր ու երեք բագինունէր 1. Իննակնեան, 2. Կուառաստան. 3. Հոռենից· նոյնպէս ալ մէկ էր ՀԱՅ ԵԿԵՂԵՑԻՆ և անոր միութիւնը կը հաստատուէր միեւնոյն սուրբին մասունքներուն ամփոփուելովը

1. Իննակնեան Ս. Կարապետի կամ Ջենոբ Գլակի

2. Կուառաստան Ս. Կարապետի կամ այս օրուան ծանօթ վանքին և

3. Հոռենից Ս. Կարապետի կամ Մատնավանուց մէջ :



# ԵՂԻԱԶԱՐՈՒ ՎԱՆՔ

ԿԱՄ

## ՂԱԶԱՐՈՒ ՆԻԿՈՏԱՅԱՆ ԱՌԱՔԵԼՈՑ ՎԱՆՔ



*Տարօնոյ այս հոյակապ մենաստանին չրջափակին մէջ կող կողի կը հանգչին տակաւին այսօր բոլոր այն բազմադարեան մատենագիրները զորս արդիական քմահաճոյքը փորձած է երիտասարդացնել և առանց չափ մանր դիտելու՝ չորրորդ կամ հինգերորդ դարէն զանոնք ետ ետ քշելով մինչեւ տասներորդ դար հասցուցած է։*

*Առաջնոյ եկեղեցւոյն յարեւելեան կողմն են կարգաւ զետեղեալք Մովսէսի Խորենացւոյ, Դաւթի Անյաղթի, Մամբրէի, Եզնիկայ Կողբացւոյ, Յակոբայ Մշեցւոյ (մին ի թարգմանչաց) Ղազար Փարպեցւոյ, Գրիգորի, Ասողկայ, Եղիազարու եղբօր Զենոբայ եւ առ նովաւ Պօղոս Տարօնացւոյ: Իսկ հիւսիսային կողմն են զետեղեալք Իշխանաց Սահակայ եւ Համազասպայ: Սոցա ամենեցունց զետեղեալք կառուցեալ կան մեծամեծ խաչարձանովք եւ ի վերայ՝ խաչքար ի կակուղ քարանց: Տես էջ 189 Աշխ. մասն Ա, Ասիա Հ. Ղ. Ինճիճեան 1806 Վենետիկ:*

*Այս տեղ դիտուող խաչքարերուն տակ պառկողներուն մեծագոյն մասը անոնք չե՞ն միթէ որոնց համար Նիւսղրացւոց եպիսկոպոս Եղիազարին և Ագդենացւոց եպիսկոպոս Տիմոթէոսին՝ Տրդատ և իր չորս գահերէց իշխանները կը գրէին.*

«Ցօսար եւ ի տարադէմ երկիրդ ընդէ՞ր եղէք հալածական, զի գիտէիք եթէ ամենայն գաւառացս եպիսկոպոս պիտոյ են եւ քահանայք: Զի թէպէտ ունիմք, որք ուսեալք ուսեալք եկեալ են եւ ժողովեալ, բայց զի՞նչ են առ վեց հարիւր եւ քսան գաւառս Հայոց որ եւ գաւառին մեն մի քահանայ կամ երկու չրկ թէ հանդիպի: Զի ԴԵՌ ՄԱՆԿՈՒՆՔ ԵՐԿՐԻՍ Ի ԴՊՐՈՑ ԵՆ ԵՒ ՈՉ ՈՔ Ի ՆՄԱՆԷ ԲԱՒԱԿԱՆՍ ՔԱՀԱՆԱՅՈՒԹԵԱՆ. Տես էջ 13 Զենոբ 1832 Վենետիկ:

Այո՛, Եզնիկ Կողբացի, Ղազար Փարպեցի, Մովսէս Խորենացի, Դաւիթ անյաղթ և այլ մեր պանծալի հեղինակներ ինչպէս իրենց մանկութեան առեն քով քովի նստած միեւնոյն վարդապետներէն ստացած էին քրիստոնէական կրօնի նախնական ծանօթութիւնները՝ յետոյ միասին ապրեցան, միասին վարդապետեցին, միատեղ թարգմանեցին և քով քովի հանգչեցան իրենց հռչակաւոր Երկնային Վարդապետին չարչարանաց խաչին թևերուն տակ, նոյն լոյս հաւատքով, նոյն յարութեան յոյսով և նախկին հեթանոսութենէն նոր քրիստոնէութեան դարձող երէց ու կրտսեր թարգմանիչներու այս մենաստանիս լռին առանձնութեան մէջ հրաշալի համախմբումը անգամ մըն ալ կը վկայէ Զենոբ Ասորւոյ վաւերականութեան:

Ուրեմն մեզ ինչ փոյթ վիպական անստութիւններ. ցնոր անօրինութիւն Զենոբ, Եզնիկ. Ղ. Փարպեցի, Մովսէս Խորենացի և այլք իրենց տեղն են ինչպէս իր տեղն է ցայսօր Եղիազարու կամ Ղազարու վանքը:

* * *

*Ս. Գրիգոր Լուսաւորիչ առաքեաց զիշխանս Մամիկոնէից տանն, տեսանել տեղի վայելուչ և լեռնաբնակ, զոր երթեալ խուզեցին ամուրս բազումս և ոչ գտին տեղի պատշաճ ի յամենայն գաւառսն և դարձան ունայն* (*Տես էջ* 15. *Ջենոբ* 1832 *Վենետիկ*)

*Եւ հրեշտակ Տեառն եցոյց ի ստորոտ լերինն Տաւրոսի տեղի ուր հաճեցաւ Տէր բնակիլ Սրբոցն։ Եւ կարգեաց անդ պաշտօնեայս եկեղեցւոյն ԱՌՍ ԵՐԿՈՏԱՍԱՆ և ետ զտեղին զայն Եղիազարու և անուանեցին զնա ԵՂԻԱԶԱՐՈՒ ՎԱՆՔ և տօն մեծ կատարեալ ի տեղւոջն յորում բազում բժշկութիւնք եղեն։* (*Տես էջ* 16 *Ջենոբ* 1832 *Վենետիկ*)

*
* *

*Մշոյ Սուրբ Առաքեալք կոչի և Առաքելոց վանք, նաև Ղազարու վանք. մենաստան հռչակաւոր ընդ ամենայն Հայս. կառուցեալ ի վերայ բլրին Առաղու հեռի ի Մուշ քաղաքէ երկու ժամու. առհասարակ քարաշէն եկեղեցին և մենաստանն և ամենայն շինուածք նորա. բերդանման պարսպաւ պատեալ և երկաթի դրամբ ամրացուցեալ. երկու եկեղեցիք են ի նմա, մին փոքր Ս. Գրիգոր կոչեցեալ, զոր նորին Ս. Գրիգորի ասեն շինեալ. իսկ երկրորդն մեծ և գմբեթաւոր. տանիք նորա քարայատակ. աստ և անդ ի վերայ քարանց տանեաց գտանին գրուածք անծանօթք, որք թերեւս են յունական կամ ԱՍՈՐԻ ԳՐՈՎ։ Ունի խորանս ԵՐԿՈՏԱՍԱՆ. աւագ խորան նորա է յանուն ԺԲ ԱՌԱՔԵԼՈՑ. ի ներքոյ վիմի զետեղեալ ասեն զնշխար Սուրբ առաքելոյն Պետրոսի ցուցանեն նաև զաջ աւետարանչացն Մարկոսի և Ղուկայ, և Թադէոսի առաքելոյն և զգագաթն Սրբոյն Յակոբայ Մծբնայ. և ըստ ասելոյ նոցա գտանին աստ մասունք աւելի քան հազար սրբոց։*

*Արտաքոյ եկեղեցւոյն յարեւելեան կողմն նորա են կարգաւ գերեզմանք Մովսէսի Խորենացւոյ, Դաւթի Անյաղթի, Մամբրէի, Եղնկայ Կողբացւոյ, Յակոբայ Մշեցւոյ, որ ըստ պատմելոյ էր մին ի թարգմանչաց. Ղազարու, Գրիգորի ծոն կոչեցելոյ, Ասողկայ, Եղիազարու եղբօր Դլակայ, և առ նովաւ Փօղոսի Տարօնացւոյ, Ծորտովիլոյ մակագրութեամբ կոչեցեալ ի նոցունց՝ Հայոց արքայ։ Իսկ ի հիւսիսային կողմն՝ են գերեզմանք իշխանաց Սահակայ և Համազասպայ։ Սոցա ամենեցունցն գերեզմանք կառուցեալ կան մեծամեծ խաչաթռովք. և ի վերայ խաչաթռոցն խաչքար ի*

կակուղ քարանց, յորս երեւելի է Դաւթի Անյաղթին, և ի վերայ ոմանց գրեալ կան անուանք նոցա։

Առ տապանօք Սահակայ և Համազասպայ է լուսաղբիւր. և ի հարաւակողմն եկեղեցւոյն է և այլ լուսաղբիւր բարեհամ յանուն Դաւթի Անյաղթի, առ որ յաճախեն յուխտ՝ սակս խնդրոյ պերճաբանութեան և իմաստութեան։ Արտաքոյ մենաստանին իբրև քարընկէց մի հեռի է և այլ եկեղեցի քարաշէն գմբեթաւոր և առ նովաւ լուսաղբիւր, որոյ ջուր ցուրտ անհնարին յամարայնի։ Շուրջ զմենաստանաւս են մայրի ծառք և ընկուզենիք. փարախք ոչխարաց և անդաստանք։ Հեռի երկու ժամու ունի և կալուածս որ կոչի Խինձ մերձ ի Բերդակ գիւղ։ Տես էջ 189. Աշխ. Մասն Ա. Ասիա Հ. Ղ. Ինճիճեան, 1806. Վենետիկ։

———

# ՄՈՒՇ

ՄՇՈՅ ԴԱՇՏԸ ՄՇՈՒՇ Է,
ԻՐ ՀՈՎՆ ՈՒ ՋՈՒՐ ԱՆՈՒՇ Է:

*Եփրատի ափերուն մօտ դեռ կը ճարակի՞ն Անահտայ մեհեանին նուիրուած ձիւնաթոյր զուարակները որոնց արածիլը Լուկուլլոս տեսնելով սքանչացաւ ըստ Պլուտարքեայ։ Մայիսի քաղցրաշունչ հովը այսօր ալ նոյնքան հեշտիւ կը գգուէ՞ լերանց ծաղիկները ինչպէս երբեմն մինչ գունդագունդ ուխտաւորներ ցնծութեամբ կը դիմէին Մշոյ Ս. Կարապետ։*

*Հեթանոսութեան բարձր տեղերուն վրայ տարածուող նուիրական անտառներու խորհրդաւոր սօսւքը ալ այս պատմական վայրերուն վրայ չը տարածուիր, ոչ ալ կռապաշտութեան սրբագործուած վայրերուն ի տես քրիստոնեայ բազմութիւնը տարուէ տարի այց կ'ելլէ նոյն խանդիւ։ Ամէն կողմ աւերը սկսած են լերկ գլուխնին բարձրացնել և հովիտները մացառներով ծածկուիլ և բնութեան բազմաբեղուն ծոցը ամլութեան է դատապարտուեր։*

*Ինչո՞ւ սև սուգի փոխուած է մշակին ուրախ երգը, ինչ ցաւագին արկած, այս* «ամենայն քաղաքաւք լի եւ աջողակ եւ առողջ երկիրը. տես էջ 49 Զենոբ 1842 Վենետիկ:» *խոպան դաշտերու վերածուած է այս երանաւէտ վայրերը։ Զենոբի շարունակողը հոգ կը տանի այս մասին մեզ թանկագին տեղեկութիւններ հաղորդել և մթին մնացած այս կէտը լուսաբանել։*

«Զօրք իւր զիմ երկրին զհացն եւ զխոտն կերան եւ զփայտն այրեցին. Տես էջ 36 Պատ. Տարօնոյ Յովհ. Եպ.

*Մամիկոնեան. 1832 Վենետիկ»:* Արդարեւ Սմբատ այսպէս գոչեց սրտի դառնութեամբ առ պատգամաւորն Պարսից արքային. այր. *«Հարիւր եւ ութսուն հազար փայտ են տարեալ ի Փարսկոյ եւ չորեքհարիւր հազար դահեկանի խոտ են կերեալ ի դաշտէդ եւ վաթսուն հազար դահեկանի զեղն եւ զեղջերու եւ զնապաստակ երկրիս են որսացեալ եւ կերեալ. Տես էջ 38 նոյն:»* Ուստի յայտնի է թէ բլուրներուն ճաղատ գլուխը և ձորերուն ցախաստանները այլեւս ամայացած ըլլան մարդոց չարակնութեան պատճառաւ:

Ամէն ժամանակ և ամէն տեղ մարդկային պատմութեան սեւ էջերը նոյն ողբալի դէպքերուն կրկնութիւնը չէ՞ միթէ, չէ մի որ զիրար խողխողող ժողովուրդներուն ոտքին տակ գթած Նախախնամութիւնը հոգ կը տանի նորէն ծաղիկներ բուսցնելու արիւնաշաղախ հողէն և նորէն պաղպաջուն ջուրերը կ՚անցընէ ծաղկաւէտ մարմանդին մէջտեղէն, նորէն անուշ հովերը մուշ մուշ կը փչեն ոսկեցոլակ ցորենի հասկերուն վրայէն: Ուրեմն ինչ փոյթ, մեզ կը մնայ ծայրաքաղ առնել միայն ստուգապատում հեղինակներու Մշոյ մասին մեզ աւանդածը:

* * *

ՆԱԽԿԻՆ ՄՈՒՇ ՔԱՂԱՔԸ

*Եւ Ս. Գրիգոր երկոտասան դաստակերտս ետ Եպիփանու յորոց մին էր Մուշ, (Տես էջ 37 Զենոբ 1832 Վենետիկ:) Եւ իշխանին անցեալ գնացին մինչեւ ի դուռն Մուշ քաղաքին. Տես էջ 38 նոյն: Եւ այլ զօրսն երթեալ կան ի Մուշն աւան էջ 43 նոյն:*

* * *

Այս հատուածներէն կը տեսնուի թէ արդէն Տրդատ Թագաւորի օրով Մուշ պարսպապատ քաղաք մըն էր և անոր արուարձանները կը տարածուէին մինչև բլուրին ստորոտը առանց ամրութեան։

*
* *

ԶՄուշեղ, Տէրն Մշոյ հաստատեաց Մարզպան Հայոց, Տես եր 13 Պատ. Տարօնոյ Յով. Եպ. Մամիկոնեան 1832 Վենետիկ: Ինքն իշանէր ի Մուշն աւանի եւ Մուշեղն իշանէր յամուրն Ողկան. Տես եր 21: Եւ ինքն եկն ի Մուշն աւան. Տես եր 23: Եւ հեծեալ յերիվարն՝ փախեաւ ի Մուշ. Տես եր 24: Եւ Վախտանգ բարկացեալ առաքեաց վեց հազար այր ի վերայ նորա ի Մուշ. Տես եր 31: Եւ ինքն յուղարկեաց զերիվարսն նոցա ի Մուշն աւան առ որդին իւր. Տես եր 34: Ընկալաւ զՄուշեղն եւ եած ի Մուշ. Տես եր 37: Եւ խորով եկեալ բնակեցաւ ի Մուշ, Տես եր 46: Եւ ապա շինեաց զեկեղեցին որ ի վերայ բլերն Մշու յանուն որդւոյ իւրոյ կրտսերի՝ Ստեփաննոսս. Տես եր 55 նոյն:

*
* *

Այս հատուածներէն յայտնի կը տեսնուի թէ Մամգուն պաւաճանութեամբ Ողկան ամրոցին տիրելէն և անոր տէրը՝ Սլուկը, նենգութեամբ սպաննելէն վերջ, Մամիկոնեանց յաջորդները տակաւ հաստատուեցան Տարօնոյ և շրջակայից մէջ և իշխանութեան գլուխ անցնելով՝ իրենց ազդեցութիւնը տարածեցին մինչև Մուշ քաղաքը զոր գրաւելով իրենցմէ մին կոչուեցաւ Մուշեղ և կարգուեցաւ Մարզպան Հայոց։ Ուրեմն մեր հետազօտութիւնը տարածենք Մուշ գաւառին մէջ նաև։

*
* *

## ՄՈՒՇ ԳԱՒԱՌ

*Մուշ գաւառն հնումն ըստ մասին կոչէր Տարօն. որ է մի ի գաւառացն Տուրուբերանոյ։ Զանունս Մուշ ածանցեալ ասեն ոմանք ի բնակչաց ի բառէ մշուշ, որով Մշեցիք կոչեն զմէգն, քանզի այս գաւառ դաշտավայր պատեալ գոլով լերամբք ի հիւսիսոյ և ի հարաւոյ, յառաւօտեան մանաւանդ յամարայնի ի ջերմութենէ արեւուն ի վեր հանէ գոլորշիս. որոց ամփոփեալ գոլով ի մէջ լերանց, ի վերայ համօրէն գաւառին պատեալ երեւի այգուն մէջ ինչ ընդ աղօտ։*

*Այս գաւառ ունի յարեւելս հարաւոյ զԲաղէշ և զլերինս Գրգուռայ ի հիւսիսոյ զՎարդով, զԽնուս, զԳուլանըդ, զՄալազկերտ և զլերինս Պինկէօլայ և Քօսուրայ։ Յարեւմտից՝ զճապաղջուր, զԽուլփ, զԼիճճ, իսկ ի հարաւոյ Շատախ։ Ունի գետ զԵփրատ(*), որ ի Պալանդխոյ հասեալ անցանէ ընդ մէջ գաւառին Մշոյ. նախ՝ ի հարաւակողմն և ապա յարեւմուտս մինչ ի Դուրգուռ վերջին գիւղ Մշոյ, ուր ի բարձր սահմանաց ի վայր հոսի կարկաչմամբ ելանէ արտաքս քան զՄուշ, ի սահմանաց ճապաղջրոյ հեռի ի Մուշ քաղաքէ իբրեւ ժամս 6. ունի ի վերայ կամուրջ մեծագործ, զոր նախ շինեալ ասեն Լէնկթիմուրայ ի քարանց եկեղեցւոյն Ս. Սահակ գեղջն. որոյ ի կործանելն՝ նորոգ շինեաց Յովհան Մշեցի. հնգեւտասան կամարօք առ հասարակ քարաշէն։*

Մեղրագետ: *Բղխէ յարեւելեան կողմն Մշոյ և անցեալ ի հիւսիսոյ Մուշ քաղաքին ապա մերձ ի Մղագոմ գիւղ խառնի յԵփրատ երեւելի ակն սորա է մերձ ի Նորաշէն գիւղ քրդաց ի սահմանակցութիւն Ուահվայի. հեռի ի քաղաքէն Մշոյ իբրեւ 20 ժամու. բղխէ մօտ ի յատորոտ Գրգուռ լերին յորդառատ իբրեւ փոքրիկ լճակ որ պատեալ է քարաշէն որմով. ջուր նորա քաղցր յոյժ յոյր սակս կոչեցաւ Մեղրագետ. իսկ առաջին ակն սորա է լիճն ի գլուխ լերինն Նեմրովդայ։ Այս Մեղրագետ վտակ հոսեալ ժամս իբրեւ երիս, ապա ծաւալի ի խոնարհ դաշտավայրի և լինի լիճ մեծ շրջապատ նորա իբրեւ աւուր միոյ ճանապարհ, յորում*

---

(*) Արածանի՝ Մուրատ Սու կամ Արեւելեան Եփրատ, տես էջ 258 Հին Հայոց տեղւոյ անուններ: Հ. Հիւբշման, 1907 Վիեննա:»

խիտ առ խիտ բուսեալ կան շամբք(*) եղեգանց և պէսպէս ծառք մինչ երեւիլ մացառախիտ ինչ անտառ. Մեծամօր կոչեցեալ ի հնումն։

Շուրջանակի են գիւղօրէքս Վարդենիս, Ցողբենիս, Խանձ, Բարձակ, Առնիստ, Ակոռ և ն. որոց բնակիչք միշտ պաշտպանեալ ելանեն արտաքս ի զգուշութիւն գազանաց։ Ի վերայ Մեղրագետոյ են երեք կամուրջք. մին՝ հեռի ի Մշոյ իբրև ժամու եւ կիսով՝ կառուցեալ քարաշէն եօթն կամարօք ի վերոգրեալ Ցավհանէն. երկրորդն՝ քարաշէն միակամուր մերձ ի Նուագետ ուր դիպեալ լերին ինչ ծուիլ սկսանի ընթացք գետակին. երրորդն փայտաշէն մերձ ի գիւղն Ճապկիզ։

Ոծմակ կամ Ոծմակոյն գիթ․ է ապառաժ բաղուկ սեաւ լերին արտաքս կարկառեալ ի դաշտին ընդ որով բղխէ ջուր յորդառատ և ականակիտ առ ստորոտով լերին յապառած վիմի, առ որով են շամբք եղեգանց ունի ի վերայ իւր և կամուրջ քարաշէն։

Ընդ ամենայն գաւառն Մշոյ են բազմութիւն մեծամեծ առուաց, ոմանք ի հիւսիսոյ ի հարաւ ընթացեալք և ոմանք ի հարաւոյ ի հիւսիս. խառնին ըստ մեծի մասին ի Մեղրագետ և ոմանք յԵփրատ, միայն սահմանն որ անկանի ի հիւսիսային կողմն Մեղրագետոյ՝ է անջրդի։ Օդ Մշոյ առողջարար եւ պատուական. յամարայնի ցօղէ զազպէ։ Բնակիչք այսր գաւառի ըստ մեծի մասին են յազգէս Հայոց. յորս ի Մուշ քաղաք է տոհմ ինչ. զորմէ ասեն, առեն ի Մամիկոնեանց. երկիր բնիկ Մշոյ գաւառին է առ հասարակ դիւր դաշտավայր լայնածաւալ, պար առեալ ի հիւսիսոյ Քոսուր լերամբք. և ի հարաւոյ՝ լերամբք Մշոյ։ Քոսուր լերինք սկսեալ ի Վարդենիս գեղջէն ի յուսարտիլ Գրգուռ լերանց, ձգին յարեւմուտս մինչ ի գիւղն Արգերթ և յԱռնձիկ. և մինչ ի Շուշար լերինս. անկեալ ի հիւսիսոյ Մշոյ և ի հարաւոյ Պուլանուխոյ և Լիզոյ։ Երկայնութիւն դաշտին Մշոյ յարեւելից յարեւմուտս՝ է երից աւուրց ճանապարհ կարաւանի. իսկ լայնութիւն ի հիւսիսոյ ի հարաւ վեց կամ եօթն ժամ։ Այս դաշտավայրը որ կոչի Մուշ Օվասը զարդարեալ կայ սառ եւ անդ գիւղին հողաբլրօք։

*
* *

---

(*) Ի շամբի սաթի շիտբևայ Բեարիվ Զերկային ըեկ ի Մուշ փեակ կոչեցեալ Դարա Սու, այսինքն սեւ ջուր, յոր անուն ոչ գտանի ջուր ինչ ի Մուշ, այլ ի շամբն էրգիռումայ:

## ԱՐԴԻ ՄՈՒՇ ՔԱՂԱՔԸ

ՄՈՒՇ բերդաքաղաք ի հարաւակողմն Եփրատայ 4 ժամու հեռի ի նմանէ. ժամու և կիսով հեռի ի Մեղրագետոյ կառուցեալ ընդ զառ ի վայր բլրոյն՝ որ է ստ լերին. այսպէս է կցեալ ընդ բարձր լերին. եւ տարածի նաև ի դաշտին առ ստորոտով բլրոյն։ Ցարեւմտեան կողմն իւր ի գլուխ բլրոյն է բերդն պարսպապատ և աշտարակաւոր ի նախնեաց շինեալ քարաշէն. զոր նորոգեաց ըստ կնոյն Սուլթան Սիւլէյման ի զանազան նիւթոց։ Ի բերդին են 20 կամ 30 տուն պահնակք հանդերձ բերդակալաւ։ Քաղաքն անկանի յարեւելեան և ի հիւսիսային կողմն բերդին. են և յայլ կողմանս բերդին տունք սակաւ և ցրիւ։ Ընդ մէջ քաղաքին անցանէ և վտակ՝ որ դարձուցանէ 10, 12 ջրաղացս և արտաքոյ քաղաքին ոռոգեալ զարտորայս թիւթիւնի և քանի մի գիւղօրէս, անկանի ի Մեղրագետ։ Բնակիչք սորա տունք իբրեւ 8000 ըստ մեծի մասին Քուրդք. յառաջագոյն բազմութիւն էին ի սմա Հայոց, այլ այժմ սակաւք մնացին ի հինգ թաղս որոշեալ. յորոց իւրաքանչիւր թաղք ունին մի մի քարաշէն եկեղեցի։ Ունի և վաճառանոցս և շուկայս և բազում աղբիւրս ջուրց. մի միայն բաղանի է քարաշէն և մի միայն իջեւան. պալատ պէյին է յայնմ մասին քաղաքին որ անկանի յարեւելեան կողմն բերդին. 2 մզկիթք են ի սմա, որք ունին մինարէ, յորոց մին յառաջագոյն էր եկեղեցի, յորում է տապան, և ի վերայ քանդակեալ քարեղէն արձան եպիսկոպոսական զգեստուք իւրովք և գնան յուխտ ի Հայոց. նաև ի նոյն իսկ Քրդաց. ունի բարձր մինարէ յախճապակեայ որ ի հնումն էր զանգակատուն։ Ուրոտ քաղաքիս ի հարաւոյ պատեալ կայ լերամբք. յորս են այգեստանեայք բազումք. իւրաքանչիւրն ունելով ի միջի հնձան մեծ, և ծառս պտղատուս և փեթակ բազում, որք բերեն մեղր ընտիր։ Ի դաշտավայրի որ է առաջի Մշոյ՝ ելանէ թիւթիւն առատ և ազնիւ։

## ԱՌՏԻՌԱՏ

*Մարդ, իր աշխարհիս վրայ երեւնալու առջի օրէն իսկ, կը զգայ իր ապիկարութիւնը եւ իրմէ դուրս գտնել կը կարծէ այն ուժը որ իրեն կը պակսի։ Ինքզինք շրջապատուած կը գտնէ անծանօթ զօրութիւններէ եւ իր անստոյգ կեանքին սպառնացող վտանգներուն դիմադրելու համար՝ իր յոյսը կը դնէ անգիտակից բնութեան տարրերուն վրայ մինչեւ որ բանաւորութիւնը զարգանալով՝ նետուի բարի եւ իմաստուն Նախախնամութեան մը գիրկը։*

*Այս նիւթական եւ իմացական ծայրայեղ ձգտումներու մէջ տարուբերող մարդկային հոգին դէպ ի խորհրդաւորը կը հակամիտի եւ անծանօթին հրապոյրը՝ տգիտութեան դարերու մէջ, զինքը մոլորութենէ ի մոլորութիւն կը մղէ։ Ուժանը կը ջանայ գերբնական պաշտպանութիւնը վարձել զոհերով եւ նուիրաբերութեամբ. մտաւորական անխիղճ դասակարգ մըն ալ կը փութայ շահագործել ռամկին կողոպտուելու յօժարակամութիւնը։*

*Պատկառելի երեւոյթ մը, շլացուցիչ արտաքին ձեւեր, սրտերու ծածուկը գուշակելու խոստումն, իղձերու բաւարարութիւն տալու թաքուն միջոցներ, կախարդութիւն, հմայք, դիւթք, բժշկութեան նախատարերք, աստեղագիտութեան ծանօթութիւնք. ահա ասոնք են մոգերուն պարծանքը։ Նուիրական հուրը արծարծել, բարամունք ի ձեռին ողջակէզ մատուցանել, օրէնքը բացատրել. ահա ասոնք են քուրմերուն փառքը։*

*Տարակոյս չըկայ որ ունակութիւնը այնքան կարմատացնէ խաբէպատիր միջոցներու կիրարկութիւնը որ հեթանոսութեան պաշտօնեաներ իրենք իսկ կսկծին հաւատալ*

իրենց քարոզած ստութիւններուն եւ ինքզինքնին առանձնաշնորհեալ դասակարգ մը տեսնելով՝ քիչ շատ պարտական կը զգան ժողովուրդին բարօրութեան հսկելու։

Մանաւանդ քուրմերը հետզհետէ խնամենալով օրուան քաղաքական իշխանութեան գլուխը գտնուողներուն հետ՝ անոնց Թանկագին օժանդակութիւն մը կը մատուցանեն կառավարելու բազմութիւնը եւ փորձառութեան հասունցուցած օրէնքներու սահմանին մէջ՝ հանդարտ պահելու կառաջնորդեն ստրկացած ժողովուրդը։

Վասն որոյ արքայն Արշակ կարգէ զորդի իւր զՄաժան քրմապետ ի յԱնի՝ դիցն Արամազդայ. Տես էջ 282. Մ. Խորենացի. 1881. Վենետիկ. «Տիգրան, արքայն Հայոց, պատուեաց զգերեզմանն եղբօրն իւրոյ Մաժանայ քրմապետի բագնացն աւանի, որ ի Բագրեւանդ գաւառի, բագին ի վերայ գերեզմանին շինէ, զի ի զոհից ամենայն անցաւորք վայելեսցեն եւ ընդունիցին հիւրք երեկօրիք։ Տես էջ 312 նոյն

Դիւրաւ կըմբռնուի ուրեմն որ քաղաքական եւ կրօնական իշխանութեանց շահակից դասակարգեր Հայաստանի մէջ իրարու հետ դաշնակցէին իրենց շահուն համար ժողովուրդը պաշտպանելու որպէսզի ժողովուրդին երեսէն ապրին եւ միանգամայն իրարու ի Թիկունս գային ամէն առԹիւ։

Եւ տեղեկացեալ իշխանին Հաշտենից՝ եթէ առ վաղիւն կործանելոց են զմեծ աստուածսն Գիսանեայ եւ Դեմետրեայ, գիշերազնաց եղեալ ի տեղի աստուածոցն, ցցին զգանձս ի տունս գետնափորս եւ ազդ արարին յԱշտիշատ ի քուրմս եթէ ժողովեցէք արս պատերազմողս եւ փութապէս առ վաղիւ հասէք առ մեզ. Տես էջ 25 Զենոբ. 1832 Վենետիկ: Իսկ նոյն գեղեն Դեմետրեայ, իշխանն Հաշտենից, որ էր ընդ զօրուն Հայոց կտրեալ եօթն հարիւր արամբ ի քրմաց կողմն եղանէր եւ սպառ կոտորէ ընդ իշխանս Հայոց. Տես էջ 29 նոյն.

Ահա Հայոց նախկին արքայական գերդաստաններուն և նախարարներուն խնամեցած այս քուրմերու դասակարգին բարձման պատմութիւնն է որ Զենոբ Ասորի մեզ կաւանդէ ճշմարտութեամբ․ և մենք պիտի խնդակցէինք այս անհրաժեշտ բարեկարգութեան ձեռնարկողներուն, եթէ անոնց նպատակն ըլլար ինչ որ կը յայտարարէին, անպատրուակ և անկեղծ։

Բայց Զենոբ առանց քաշուելու մեզ կը տեղեկացնէ թէ մեհեաններուն կողոպտուած գանձը իբրև խայծ ըստ բուկին շռայլուեցաւ, թէ խուժանին մկրտութիւնը բռնադատ կատարուեցաւ, թէ Հայ դպրատան աշակերտներն պարտադրուեցան Յոյն և Ասորի օտար լեզուները սորվիլ, թէ առանց համոզման և նոյն հետայն դարձի չեկող քուրմերը կախաղանի վրայ մեռան, թէ ընդվզող իշխաններուն անդամները ծայրատուեցան և այլ այս կարգի խժդժութիւններ կատարուեցան։

Ա՞յս էր այն սանձալի քրիստոնէական ճշմարտութիւնը որ կը յաջորդէր անարգ կռապաշտութեան․ ո՞ւր էին մնացեր Թաթէոս և Բարթուղիմէոսի հասկցած խաղաղութեան Աւետարանին սիրոյ պայմանները, ո՞ւր էին հիմա քրիստոնէական եկեղեցւոյ նախկին հովիւները որ կը խոնարհէին համոզելու և կը նահատակուէին իրենց աստուածային Փրկչին օրինակին հետեւելով։

Զենոբ ցոյց կուտայ զՍուրբն Գրիգոր Լուսաւորիչ Հայոց վրայ եկած սուրերով և բիրերով, աններող, սպառնալից։ Իր ետեւէն կը մտնեն ի Հայս շատ մը անօթի և պորտաբոյծ մարդիկ որ փոխանակ երկրին բնիկներուն հոգևոր մխիթարութիւնը խորհելու՝ իրենց տաբակոյ ցաւաքար ընկերները կը հրաւիրեն բարեբեր երկրի մը պտուղներով և ժամուցներով կշտանալու։

Զենոբէ կը սորվինք թէ եկող օտար կղերը չէ թէ մարդոց խիղճերը դէպ ի ուղիղը առաջնորդելու պաշ-

*տօնը կը սահմանէր՝ հապա կը գործադրէր Հռովմայեցի դիւանագէտներու քաղաքական հաշիւները։ Անոնք քրիստոնեայ կղերին սքեմին տակ ծպտած կուգային ջախջախել Հայ ազգային կազմակերպեալ դիմադրութիւնը ի նպաստ միահեծան կայսրութեան որուն կեդրոնը առ այս արեւմուտքէն ի Պոլիս կը փոխադրուէր։*

*Այո՛․ Տրայեանոս հռչակած էր արդէն Հայոց աննուաճ ազգ մը ըլլալը ինչպէս իր Հռոմի մէջ կանգնած կոթողին արձանագրութենէն կիմանանք․ իր յաջորդները կործանային միջոց մը Հայը խոնարհեցնելու Հռովմէական ստորնացուցիչ լուծին տակ և իրենց գործակալը՝ Տրդատ, գտաւ այդ միջոցը։ Համկցած էր թէ Հայ քուրմերու կազմակերպութեան չէնքը փլած ատեն՝ իր անկման ժամանակ, իր հետ վար պիտի բերէր իրեն հեղուսուած Հայաստանի աւատական նախարարութիւններու անդըրդուելի չէնքն ալ։*

«Եւ իբրեւ եկն եհաս ի սահմանս Հայոց, չուաւ Գրիգորիոս զի Վահէվահեան մեհեանն մնացեալ էր յերկրին Տարօնոյ, մեհեանն մեծագանձ, լի ոսկւով եւ արծաթով եւ բազում նուէրք մեծամեծ թագաւորաց ձօնեալ անդ, ութերորդ պաշտօն հռչակեալ, անուանեալ Վիշապաքաղ Վահագնի, յաշտից տեղիք թագաւորացն Հայոց Մեծաց, ի սնարս լերինն Քարքեայ ի վերայ գետոյն Եփրատայ, որ հանդէպ հայի ի մեծ լեառնն Տաւրոսի որ եւ անուանեալ լուս յաճախապաշտաման տեղեացն յԱշտիշատ, զի յայնժամ եւս դեռ չէն կային եւեթ բագինքն ի նմա. տես էջ 603 Ազգաբ. 1835 Վենետիկ:

*Ուրեմն որչափ քիչ բան գիտէ դժբաղդաբար յարգելի Կէսլէր Հայ քրիստոնէական եկեղեցւոյ սկզբնաւորութեան մասին և որչա՛փ սխալ գաղափար կազմած է Զենոբայ վրայ զայն Թ․ դարու մէջ ապրող անձի մը անարժէք աւանդավէպներու հաւաքածոյն նկատելով։*

Զենոբ մեզ հրաշալիքով և գերբնականով չը խաբեր, այլ ցոյց կուտայ կռապաշտ և քրիստոնեայ կղերը եկած կպուր կպուրի և իր լսել տուած հեթանոս քուրմերու ողբի աղաղակը ճշմարտութեան ձայնն է։

«Լուարուք մեզ, իշխանքդ Հայոց. առդ մեք պատերազմաւ ձեզ ոչ կարեմք ընդդիմանալ. զի այս է տունն Տրդատայ, թագաւորին Հայոց եւ դուք իշխանք նորա: Բայց այս ձեզ յայտնի լիցի, որ թէպէտ մեք ձեզ յաղթել պատերազմաւ ոչ կարեմք. սակայն չաւ է այսօր մեռանիլ ի վերայ աստուածոցն մերոց՝ քան թէ զտաճար նոցա ի ձենջ ապականեալ տեսանել վասն որոյ զկեանս ատեցաք եւ զմահ սիրեցաք: Տես էջ 27. Զենոբ 1832 Վենետիկ:»

Արդարեւ, մանկութեան ատեն ի Հռովմ պատանդ տարուած արքայազունն Տրդատ դաստիարակուած էր Հռովմի աշխարհակալ քաղաքականութեան սկզբունքներուն համեմատ և երբ դիտեց որ ծանրութեան կեդրոնը կռապաշտութենէն ի քրիստոնէութիւն կ'անցնի՝ յօգուտ Հռովմէական կայսրութեան գործածեց քրիստոնեայ կղերը։

Եւ Հայ նախարարութիւնները՝ իրենց նեցուկ քուրմերու դասակարգէն զրկուած, ջարդուեցան։ Սլկունիք, Հաշտեանք, Աղձնիք, Ռշտունիք, Բզնունիք, Մանաւազեանք, Որդունիք բնաջինջ եղան են։ Պարապ տեղը չէր ուրեմն որ վերջ ի վերջոյ Հայ մնացեալ նախարարները սթափեցան և տեսնելով որ օտարամուտ Մամգունեանց ձեռքով զիրենք մի զկնի միոյ կանճիռէ «զՏրդատ կոչեն ըստ կամաց նոցա ունել զթագաւորութիւն, իսկ ի չհաւանելն՝ տան նմա արքունի ըմպելի չարճաւ խառնեալ եւ շիջուցին յինքեանց զթագաւորական ճառագայթ աստուածապաշտութեան. Տես էջ 383 Մ. Խորենացի 1881 Վենետիկ»։

Այս խոշտանգումներուն համբերել անկարելի էր, անոր համար Հայոց մտերմութենէն ուծացան Նոր Շի-

րական աշխարհը, Կորդուք, Կորդիք, Տմորիք, Արձախ, Ռոտի, Շակաշէն. Ջորն Գարթմանայ, Կողթ, Փայտակարան, Վիրք, Աղձնիք, Մոկք, տես էջ 213—217. Փ. Բիւզանդացի, 1889, Վենետիկ. և ապստամբելով ինքնագլուխ իշխողը ազատեցաւ. անոր համար կազմալուծուեցաւ պառակտուած ազգին իշխանութիւնը և այս հիւսիսային աննուաճ երկիրը անպայման խոնարհեցաւ բռնակալներու լուծին տակ։

Այս է Աշտիշատի կործանման նշանակութիւնը և Զենոբ Ասորւոյն շնորհակալ ենք որ բիրտ ճշմարտութեան թարգման կը հանդիսանայ, համառօտելով թէ արեան հեղեղներու մէջ ազգի մը ինքնօրինութիւնը խեղդուեցաւ։ Հաշտենից դաշտավայրին վրայ լսուած գոռ ու գոչը, Տարօնի մէջ բարձրացած փայլատակումը Հայ քաղաքական կեանքի ճգնաժամի սարսռազդեցիկ ղօղանջն է. ուստի և Աշտիշատի ընդհանուր անուան տակ հաւաքուած վայրերը կարժէ անգամ մ'ալ աչքէ անցնել։

*
* *

# ԱՇՏԻՇԱՏԻ ՄՐՑԱՎԱՅՐԸ

## ՆԱԽԿԻՆ ԿԱԼՈՒԱԾԱՏԵՐՔ ԳԻՒՂԻՆ

### Ա.

*Զոր առեալ ՎԱՀՈՒՆԵԱՑ կանգնեցին ի Տարօն յիւրեանց սեպհական գիւղն յԱՇՏԻՇԱՏ. Տես էջ 186. Մ. Խորենացի 1881, Վենետիկ։*

### Բ.

## ԱՇՏԻՇԱՏ ԳԻՒՂԻ ՀԵՐԱԿՂԷՍ ԵՒ ԱՓՐՈԴԻՏԷՍ ԿՈՒՌՔԵՐԸ

*Գտեալ յԱսիա զպղնձաձոյլ զոսկեզօծ պատկերն Հերակլեայ, տայ Արտաշէս բերել յաշխարհս մեր զի կանգնեսցեն յԱրմաւիր։ Զոր առեալ քրմապետացն որ էին յազգէ Վահունեաց զՀերակլեայն զառնապատկերն կանգնեցին ի Տարօն, յիւրեանց սեպհական գիւղն յԱՇՏԻՇԱՏ. Տես էջ 186. Մ. Խորենացի 1881 Վենետիկ։*

*Եւ Տիգրան զԱփրոդիտեայ զպատկերն իբրեւ Երակլեայ տարփաւորի՝ առ նորին պատկերին Երակլեայ հրամայեաց կանգնել ի Յաշտից տեղիսն. Տես էջ 194 նոյն։*

### Գ.

## ԱՇՏԻՇԱՏՈՒ ԳԻՒՂԸ ԱՐՔՈՒՆԻ ՍՏԱՑՈՒԱԾՔ

*Եւ ցասուցեալ Տիգրանայ ընդ Վահունիսն, եթէ ընդէ՞ր յիւրեանց սեպհականին իշխեցին կանգնեցին զպատկերն Երակլի՝ առաքեալ ի նորին հօրէ, ընկենու զնոսա ի քրմութենէն և զգիւղն յարքունիս առնու, յորում պատկերքն կանգնեցան. Տես էջ 194. Մ. Խորենացի 1881, Վենետիկ։*

## Դ.

### ԱՆԱՀԻՏ ՅԱՇՏԻՇԱՏ ԳԻՒՂ

Երկրորդ Մեհեանն որ յԱշտիշատ-Ոսկեմօր Ոսկեծին դից, եւ բագինն իսկ յայս անուանեալ՝ Ոսկեհատ Ոսկիամօր դիցն. Տես էջ 603, Ագաթանգեղոս. 1835 Վենետիկ

Հայաստանի մէջ Անահիտի, մեհեանը՝ ինքզինքնին կրօնքին ընծայող մանկամարդ աղջիկներու յատկացուած յարակից մասեր ունէր։ Ճշմարիտ կանանոց մ՚էր այս ուր օտարականներ կ՚ընդունուէին որոշ գումար մը վճարելով։ Դիցուհւոյն հաճելի ըլլալու համար, Ստրաբոն կը հաւաստէ, տարփաւորներու տարիքը եւ ընկերային վիճակը վերեւի եղածին չափ պաշտօնեաները հոգ կը տանէին։ Ժամանակ մը յետոյ ծնողները կ՚երթային անոնց իրենց աղջիկները եւ իրենց սիրոյ ճմունի անոնց ունեցած աւելի կամ նուազ յաջողութեան համեմատ՝ աւելի կամ նուազ դիւրութեամբ կ՚ամուսնացնէին զանոնք։

Տես էջ 55. կանանց վաճառումը Sof. Boj ըր Բէկայ 1910. Կ. Պոլիս

"Απαντα μὲν οὖν τὰ τῶν Περσῶν ἱερὰ καὶ Μῆδοι καὶ Ἀρμένιοι τετιμήκασι, τὰ δὲ τῆς Ἀναΐτιδος διαφερόντως Ἀρμένιοι, ἔν τε ἄλλοις ἱδρυσάμενοι τόποις καὶ δὴ καὶ ἐν τῇ Ἀκιλισηνῇ. Ἀνατιθέασι δ' ἐνταῦθα δούλους καὶ δούλας· καὶ τοῦτο μὲν οὐ θαυμαστόν, ἀλλὰ θυγατέρας οἱ ἐπιφανέστατοι τοῦ ἔθνους ἀνιεροῦσι παρθένους; αἷς νόμος ἐστὶ καταπορνευθείσαις πολὺν χρόνον παρὰ τῇ θεῷ μετὰ ταῦτα δίδοσθαι πρὸς γάμον, οὐκ ἀπαξιοῦντος τῇ τοιαύτῃ συνοικεῖν οὐδενός. Τοιοῦτον δέ τι καὶ Ἡρόδοτος λέγει τὸ περὶ τὰς Λυδάς· πορνεύειν γὰρ ἁπάσας. Οὕτω δὲ φιλοφρόνως χρῶνται τοῖς ἐρασταῖς ὥστε καὶ ξενίαν παρέχουσι καὶ δῶρα ἀντιδιδόασι πλείω πολλάκις ἢ λαμβάνουσιν, ἅτ' ἐξ εὐπόρων οἴκων ἐπιχορηγούμεναι. δέχονται δὲ οὐ τοὺς τυχόντας τῶν ξένων, ἀλλὰ μάλιστα τοὺς ἀπὸ ἴσου ἀξιώματος».

Strabonis c: 582—26, 533
Lipsiae
MDCCC IXVI

Մռնչեալ առիւծաբար գազանութեամբ Անտոնինոս՝ դիմէ ի վերայ Արտաւազդայ և անցեալ ընդ Միջագետս կոտորէ անհնարին զզօրս Հայոց եւ ձերբակալ առնէ զարքայն նոցա հանդերձ բազում ընչիւք յանկածէ պատերազմին. Տես էջ 210 Մ. Խորենացի 1881 Վենետիկ։

Անտոնինոս ի Հայս կատարած մէկ արշաւանքին ժամանակ, Անահտայ տաճարը կողոպտուեցաւ և անոր ոսկիէ արձանը զօրքերուն կողմանէ կողոպտուեցաւ, ինչ որ անոնց շատերը հարստացուց։ Անոնցմէ մին որ Իտալիոյ Բոլոնիայ քաղաքին մէջ հաստատուած էր, օր մը հիւրընկալեց զՕգոստոս և անոր ընթրիք մը տուաւ։ Կայսրը ճաշի ատեն անոր հարցուց. Իրա՞ւ է որ առաջին անգամ դիցուհւոյն հարուած տուողը կուրցած և անդամալուծուելէ վերջ մեռած ըլլայ։ Եթէ այդպէս ըլլար, պատասխանեց անիկայ, այսօր պիտի չկրնայի հիւրընկալել զՕգոստոս, ինչու որ առաջին հարուածը անոր տուողը ձեր առջին է և այս երեկոյ ընթրանքնիդ անոր մէկ սրունքն է. Page 101. Dictionaire de par Fr. Noël

MDCCCXXIII
PARIS

XXIV. Aurea statua prima omnium nulla inanitate et antequam ex ære aliqua illo modo fieret, quam vecant holosphyraton in templa Anaïtidis posita dicitur (quo situ terrum nomen hoc significavimus) numine gentibus illis sacratissimo. Direpta est Antonii Parthicis rebus; scitumque narratur dictum unius veteranorum Banoniæ, hospitali divi Augusti cœna, quum interrogaretur, essetne verum, eum qui primus violasset hoc numen oculis membrisque captum exspirasse? Respondit enim, tum maximo Augustum de crure ejus cœnare, seque illum esse, totumque sibi censum ex rapina etc.

P. 412 His. Naturelle de Pline
1883

Paris

## Ս.

### ԱՇՏԻՇԱՏԻ ՆԱՒԱՍԱՐԴԻ ՏՕՆԸ

**Վաղարշ**

*Զի ի զոհից ամենայն անցաւորք վայելեսցեն և ընդունիցին հիւրք երեկօթիւք։ Յորում և զկնի Վաղարշ ՏՕՆ ԱՇԽԱՐՀԱԽՈՒՄԲ կարգեաց ի սկզբան ամի նորոյ ի մուտն ՆԱՒԱՍԱՐԴԻ. Տես էջ* 312. *Մ. Խորենացի* 1881 *Վենետիկ։*

**Ս. Գ. Լուսաւորիչ**

*Տօն մեծ հուչակել ժամադրեաց Ս. Գ. ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ի ժամանակի Ամանորայ հիւրընկալ դիցն Վանատրի զոր յառաջագոյն իսկ ի նմին տեղւոջն պաշտէին՝ յուրախութեան ՆԱՒԱՍԱՐԴ աւուրն։ Տես էջ* 620 *Ագաթանգեղոս* 1835 *Վենետիկ։*

## Զ.

### ԱՇՏԻՇԱՏԻ ԴԻՐՔԸ

*Յաշտից տեղեացն Թագաւորն Տրդատ եկեալ ընդ լեռնակողմն գնայր և եկն բնակեցաւ ի գլուխ Արածանին վասն տեղւոյն ընդարձակութեան։ Տես էջ* 40 *Զենոբ* 1332 *Վենետիկ։*

## Է.

### ԱՇՏԻՇԱՏՈՒ ՀՆԴԻԿ ԿՈՒՌՔԵՐԸ

*Դեմետր և Գիսանէ դաւ իմն խորհեալ Դինաքսեայ արքայի իւրեանց մազապուր անկան առ Թագաւորն Վաղարշ(ակ) և նա ետ նոցա զերկիրն Տարօնոյ ընդ իշխանութեամբ. ուր ինքեանք շինեցին քաղաք զոր կոչեցին Վիշապ և եկեալ յԱՇՏԻՇԱՏ կանգնեցին անդ զկուռս դիխոտիկ զոր պաշտէին ի Հնդիկս. Տես էջ* 36. *Զենոբ* 1332 *Վենետիկ։*

## Ը.

### ԱՇՏԻՇԱՏ ԳՒՈՂԻ ԱՏՐՈՒՇԱՆԸ

*Եւ Վախտանգ փոխէ զԱՏՐՈՒՇԱՆՆ ի դուռն Կաթողիկէին զոր հիմնարկեալ էր Սրբոյն Սահակայ. Տես էջ* 30, *Պատ. Տարօնոյ. Յով. եպ. Մամիկոնեան,* 1832, *Վենետիկ։*

Ուրեմն, հակառակ յարգելի Հ. Հիւպշմանի յետամնաց ստուգաբանութեան (Տես էջ 304 Հին Հայոց տեղւոյ Անուններ 1907 Վիեննա) պէտք է ընդունիլ թէ նախնիք պարսկերէն լեզուի աւելի հմուտ եղած ըլլալուն և իրաւամբ այս վայրը ըստ յաճախապաշտաման կոչուած էր Աշտիշատ և մանաւանդ ութերորդ պաշտօն քանզի (Տես 590 Ագաթ. 1835 Վենետիկ) Բագայառինճ գիւղի Միհրական կրակատունէն սկսելով՝ այս վայրը ութերորդ կրակատունն էր. այսպէս

1. Ազէր Միհր — اذر مهر
2. Ազէր Նուշ — اذر نوش
3. Ազէր Պեհրամ — اذر بهرام
4. Ազէր Պիյն — اذر بين
5. Ազէր Խիւրատատ — اذر خرداد
6. Ազէր Պէրզին — اذر برزين
7. Ազէր Զէրտէհիւշթ — اذر زردهشت

Թ.

ԱՇՏԻՇԱՏ ԳԻՒՂԻ ՎԵՐՋԻՆ ՍԵՊՀԱԿԱՆԱՏԵԱՐՔ

Բարձեալ սարկաւագապետին նորին Երեմիայի զպատուական մարմինն Ս. Սահակայ, հանդերձ աշակերտակցօք և Տիկնաւն Մամիկոնէնից, նորին նուաւ, որուն անուն էր Դստրիկ, կնոջ Վարդանայ Սպարապետի, տարեալ հանգուցին ԲԻՒՐԵԱՆՑ ԳԻՒՂՆ ԱՇՏԻՇԱՏ. Տես էջ 567—568 Մ. Խորենացի 1881 Վենետիկ։

Ժ.

ԱՇՏԻՇԱՏ ԳԻՒՂԻ ՆԵՐԿԱՅ ՎԻՃԱԿԸ

Ի նոյն ամի քակի յԱրդուսհիմայ և եկեղեցին որ յԱշտից վանս Տես էջ 58 Պատմ. Տարօնոյ Ցով. եպ. Մամիկոնեան. 1882 Վենետիկ։

Ս. Սահակ ի հնումն ԱՇՏԻՇԱՏ գիւղ հեռի ի Ս. Կարապետէ երբեւ 6 ժամու յարեւելից հողմն նորա առ սարոտով լերինն. յեկեղեցւոյ սորա, որ քակեալ կայ ըստ մասին է գերեզման Որբոյն Սահակայ ուր յաճախեն ուխտաւորք յաւուրն Աւագ Հինգշաբթի։ Զսուրբ եկեղեցին և զմենաստանն քակեաց Լէնկթիմուր առ ի շինել ի քարանց անտի զքայքայեալ կամուրջն Եփրատայ։ Տես էջ 193 Աշ. Ա. Մասն Ասիա Հ. Ղ. Ինճիճեան, 1806 Վենետիկ։

# ԱՇՏԻՇԱՏՈՒ
# ՆՈՒԻՐԱԿԱՆ ԱՆՏԱՌԸ

*Ամբարձից զաչս իմ ի լերինս ուսկից*
*եկեսցէ ինձ օգնութիւն: Սաղմոս*

Գեղեցկագոյն տաճարը դարաւոր կաղնիներու բազկատարած անտառն է։ Երկնաձիգ ծառեր մեր գլխուն վրայ հնչուն կամարներ կը ձևացնեն և երբ քամին մեղմիւ սկսի շարժել տերևալից ոստերը՝ հրաշալի երաժշտութեան մը նուագները կը լսուին։ Կռապաշտները անտառը կընտրէին իբրև սրբազնութեան յարմարագոյն վայր և անոնց թանձրաստուեր հովանին մարդոց հաճելի ըլլալուն համար՝ ծառերու շուքին տակ խունկ կը ծխէին։

Հրէից նուիրական մատեաններէն կիմանանք թէ նախկին Քանանացիք և ուրիշ շատ ազգեր երկնային մարմինները և իրենց կուռքերը կը պաշտէին բլուրներու, լեռներու, յատկապէս կառուցուած բարձրաւանդակներու վրայ։ Իսրայէլացւոց պատուիրուած էր ջնջել կռապաշտութեան բարձր վայրերը։ Բ. Օր. ԺԲ. 22. Իսրայէլացիք կուռք պաշտեցին բարձր տեղերու վրայ. Դ. Թագ. ԺԱ. 7։ Դ. Թագ. ԺԷ. 29 և ունէին յատուկ քուրմեր Դ. Թագ. ԺԲ. 32 Դ. Թագ. ԺԷ 32. սաղարթի ներքև աչքերէ անյայտ անխոստովանելի գարշութիւններ կը կատարէին։

Աշտիշատ Համայնադից մեհեանն ու ունէր ի մասնաւորի իր բարձր տեղը Քարքեայ լերան կատարը, Արձանին գլուխը։ Երեք եղբայրներ Կուառ, Մեղտէս, Հոռեան հոն եկան Իննակնեան վայրը ընտրելու զայն կռապաշտական պղծութիւնները կատարելու յարմար դատելով։

«Անտառն յարեւմտից կուսէ խաղողահամ աղբերն. Տես էջ 41 Զենոբ 1832 Վենետիկ: Այս անտառը խիստ թանձր և թաւուտ էր։ «Արջոց իշխանն փախստական եղեալ ընդ անտառն, կտոր փայտի հանց ընդ սիրտն եւ ընդ չարդն եւ անկեալ մեռաւ. Տես էջ 30. Զենոբ 1832 Վենետիկ:» Նոյն ժամանակաց նոյն վկայութիւնը կու տայ Սմբատ «Հարիւր ութսուն հազար փայտ եմ տարեալ ի Փարխոյ. Տես էջ 38, Պատ. Տարօնոյ, Յով. եպ. Մամիկոնեան 1832 Վենետիկ: Անտառներն ազգային ալ տեսակք որ լեռան գլուխն էր և հօն բժշկութիւն կը կատարուէր։ Հայոց մէջ, ըստ Մ. Խորենացւոյ, անտառապաշտութենէն զատ հեթանոսական կրօնի ամէն ձեւ արտայայտութիւն ստա-ցուած էր։ Արդարեւ Արայեան Արային մեռանի ընդ Շամիրամայ ի պատերազմի բողոքով առու զաւակ անձնահա-րուս եւ շահանձեար յիր եւ ի բան՝ զԱնուշաւանն որ Սօս անուանիւր խանգի ձօնեալ էր ի Սօսիսն Արմենակայ որ յԱրմաւիր, որոց սաղարթուցն սօսափիւն, ըստ հանդարտ կամ սաստիկ շնչելոյ օդոյն եւեր յոսոց շարժում, սովորե-ցան ի հմայս աշխարհիս Հայկազանց եւ այս բազում ժա-մանակս, Տես էջ 97, Մ. Խորենացի 1881 Վենետիկ:

Քրիստոնէութիւնը ի Հայս մուտ գտնելէն վերջն ալ մեր նախնիք դիւրաւ չի մոռցան իրենց նախկին ու-նակութիւնները. այսպէս. «Խոսրով Կոտակ եւ հրա-մանի զօրավարին իւրոյ՝ հանել յաշխարհէն բա-զում եւ բերել զվայրենի կաղին մայրեաց եւ տնկել զայն յԱյրարատեան գաւառին, մինչեւ ի դաշտն Մեծամօրի ի ԲԼՈՒՐՆ որ անուանեալ կոչի Դուին: Տնկեցին զկաղինն եւ կոչեաց զանուն նորա ՏԱՃԱՐ ՄԱՅՐԵՆԻ. Տես էջ 18, Փ. Բիւզանդացի 1889 Վենետիկ:

Արդարեւ ՄԱՅՐԵՆԻ ՏԱՃԱՐը յարմար վայր մըն է մտաւոր յափշտակութեան և թեւատարած կաղնիներու խորհրդաւոր ստուերին ներքեւ հոգին դիւրաւ կը վե-

բանայ դէպի այն սկզբնապատճառ իմացականութիւնը որ կը ստեղծէ և կը նախախնամէ։ Արդ ըստ Սաղմոսերգուին՝ Հայը իր աչքերը կը վերցնէր Քարքէոյ լերան գլուխը տարածուող անտառին և Աստուծմէ կը յուսար իր անձին օգնութիւն։ Այն հեռաւոր դարերուն մէջ ոչ մէկ տեղ աշխարհիս վրայ աւելի պատշաճ կրօնական արտայայտութիւն մը կար։

Կրօնքը կը ներգործէ այն ազգերուն վրայ որ իրենց կիրքերուն իշխելու պէտք եղած կրթութեան և բարոյական զարգացման աստիճանին հասած չեն։ Արդ քանի որ հաւատքէ անկախաբար՝ պաշտաման արտաքին ձևեր գոյութիւն ունին՝ հարկաւ անոնք չեն ուշանար դիւանագէտներու ձեռքին մէջ քաղաքական ծրագրերու իրագործման միջոց դառնալ։

Հայը իր անտառներուն խորը հաւատոյ պարզ արտայայտութենէն ու բիչ ծիսականութիւն չունէր․ բայց նաև հանդուրժեց օտար հակառակամարտ կրօններու միաժամանակ տարածման։ Իր այս ներողամտութիւնը պատեհութիւն ընծայեց իրեն մարդոց վարդապետութիւններուն փորձը ընելու և այսու իր լայնախոհ մտքին ապացոյցը տալու։

Ազգի մը կեանքի տևողութեան միջոցին՝ քաղաքական դէպքեր կը փոխուին և անոր նիւթական վիճակը կ՚այլայլի՝ բայց անոր նկարագիրը նոյնը կը մնայ և մտայնականութիւնը չփոխուիր։ Այսօր մեր ամ մը ժողովուրդը ժառանգական օրէնքով նոյն տեսարանը կը պարզէ և այսօր ալ իրերամերժ կրօնքներով կ՚որակուի։ Եւ վերադառնալով մեզ զբաղեցնող անցեալին՝ կը հաստատենք թէ Տարօնոյ այս մեհեանը այն ատեն «Ըստ յաճախապաշտամանն տեղեացն անուանեալ էր յԱշտիշատ. էջ 603 Ագաթանգեղոս 1835 Վենետիկ:» Եւ յաջորդ գլուխներուն մէջ պիտի տեսնենք թէ ի միջի այլոց հոն կը պաշտուէին Վիշապն ու Աստղիկ։

## ԱՍՏՂ ԲԵՐԴ

Աստղ բերդը նաև կոչուած է Մոկաց բերդ․ ի՞նչ գաղափարաց զուգորդութիւն կայ Մոկաց և աստղին մէջտեղ․ Հայաստանի մէջ հազուադէպ չէր բաղդահմայութիւն․ նոյն իսկ քրիստոնէութեան երկրին պաշտօնական կրօնքը դառնալէն վերջն ալ՝ գիտենք թէ իղձերու և հարցուկներու դիմել երկար ատեն սովորական բան մը դարձած էր։

«Մեռուժանն սակր ճանապարհս ընդ ո՞ր երթայ. եւ ուղղեւորացն տուեալ պատասխանի, ասեն. ՃԱՆԱՊԱՐՀ ԸՆԴ ԵՂՋԵՐՍ է։ Եւ մեծապէս խտրեաց Մեռուժանն ընդ միտս իւր եւ տրտմեցաւ ընդ բանսն եւ տայր հրաման չարաչար խարշել զուղղեւորս եւ ծեծել: Եւ ինքն անցեալ ըստ ուղին՝ իջանէր ի ՀՄԱՅՍ ՔԱՂԴԷՈՒԹԵԱՆ, ՋՔՈՒԷՍ ՀԱՐՑԱՆԷՐ ԵՒ ՈՉ ԳՈՑՐ ՆՄԱ ՑԱՋՈՂԱԿ ՑՈՒԽՈՒԹ ԿԱԽԱՐԴԱՆԱՑՆ՝ յոր յուսայրն. Տես կչ 259. Փ. Բաւստոս 1889 Վենետիկ:

Այս պայմաններուն մէջ Մոկաց Աստղ բերդը մեր երկրին կռապաշտական շրջանին մէջ իբր դիտանոց ծառայած է անշուշտ երկնային մարմնոց ընթացքի զննութեան և ըստ այնմ գուշակութիւններ ընելու։ Տարակոյս չկայ որ աստեղահմաններ նաև պաշտօն կը մատուցանէին երկնակամարի լուսաւորներուն։ Զէ՞ մի որ «Վաղարշակ յետ այսր ամենայնի մեհեան շինեալ յԱրմաւիր անդրիս հաստատեաց ԱՐԵԳԱԿԱՆ եւ ԼՈՒՍՆԻ: Տես կչ 177 Մ. Խորենացի 1881 Վենետիկ:

Իսկ Տարօնի գալով՝ գիտենք թէ Աշտիշատու երկրորդ Բագինը անուանեալ էր Աստղկան դից. Տես կչ 603

Ագաթանգեղոս 1835 Վենետիկ: Ուրեմն եթէ մեհեանին մէջ Աստղկան պաշտօն կը մատուցանէին՝ հարկաւ Աստղօն բերդէն նաև կը դնէին մոգք Աստղկան դիրքը երկնից աստղատուններուն մէջ: Արդ մեզ կը վիճակի մեր ձեռք գտնուած հեղինակներու համեմատ ճշդել Աստղօն բերդին դիրքը և վերակազմել Մոկաց բերդին անցեալը:

Եւ այլ յԱստղօնից ելեալ ընդ Թոսա, (Տես էջ 28. Ջենոբ 1832 Վենետիկ:) Եւ առեալ Ս. Գրիգորի իջուցանէ զնոսա ի ձորն Այծասանայ որ էր յարեւելից կուսէ Կանկօնից Աստղօնից բերդին. Տես էջ 35 նոյն:

Եկին մինչեւ յԱրձանն քարեայ և անցին յԱստղօնս ամրոցն. Տես էջ 15. Պատ. Տարօնոյ Յով. Ե. Մամիկոնեան 1832 Վենետիկ: Արդ զօրքն այն անցեալ գնացին յԱստղօն ամրոցն, կացին աւուրս երկու և ոչ ինչ կարացին առնել. ապա գնացին առ Միհրան, մատուցին զամենայն ձեւ ամրոցին. Տես. էջ 21 նոյն. Վահան յարձակեցաւ ի վերայ նոցա և կոտորեալ զզօրսն տարաւ անցոյց ընդ Աստղօնս և պատեալ իջոյց զնոսա մինչեւ հանդէպ եկեղեցւոյն և ոչ կարէին անցանել ընդ ձորն իսկ զօրքն եկեալ հասին յանտառն որ հանդէպ վանացն հայի և անդ թագեան: Իսկ Վահանայ աճապարեալ՝ գնաց անդ և սուր ի վերայ եդեալ՝ կոտորէր զնոսա. Տես էջ 48 նոյն:

Զայս առեն լինել բերդ և բնակարան Զրուանայ, կաւուցանել ետ ի թագաւորեցուցանել զնա ի վերայ երկուց եղբարց. զորմէ գրէ Մ. Խորենացի ա. 6. զոր և յանուն քեռն իւրեանց կոչեցին Աղնբերդ. կոչի նաև Մոկաց բերդ. Տես էջ 488 Աշխ. Ասիա Մասն Ա. Հ. Ղ. Ինճիճեան 1806. Վենետիկ:

Ի սոյն ամի Աբդուահիմ քակէ և զմեծ կաթուղիկէն յԱստղաբերդ տես էջ 58. Պատ. Տարօնոյ՝ Յ. Ե. Մամիկոնեան 1832 Վենետիկ: Է այժմ աւերակ բերդի ժամաւ հեռի ի Մշոյ ի զուարճալի վայրի ուր են պարիսպք ըստ մասին քայքայեալ: Ունի աղբիւր յամարային ցուրտ անհնարին և ի ձմերային ջերմ տես էջ 188 Աշխ. Ասիա Մասն Ա. Հ. Ղ. Ինճիճեան 1806 Վենետիկ:

Աստղօն ամրոցին մերձաւորութիւնը նաև մեզ կը յիշեցնէ յԱշտիշատու երրորդ մեհեանը որ կը կոչուէր մեհեան Աստղկան դից և յաճախապաշտաման նոր առիթ մը կը տեսնենք այս հեթանոսական կայանին համայնադից մեհեանին մէջ:

# ՎԻՇԱՊ ՔԱՂԱՔԸ



Քաղաքներն ալ կը ծնին, կապրին, կը մեռնին նման այն մարդոց որ զիրենք հիմնեցին. անոնք ալ ունին իրենց առանձնայատուկ կեանք և պատմութիւն։ ՎԻՇԱՊ քաղաքը ատենով գոյութիւն չունէր Տարօնոյ մէջ, Զենոբէ կը սորվինք թէ երկու փախստական Հընդիկներ, մեր երկիրը ապաստանելով, զայն կանգնեցին և օր մըն ալ կործանեցաւ, ա՛լ չը կանգնելու համար։

Վիշա՜պ... ի՞նչ չարագուշակ կոչումն. այս անունը իր մէջ շատ գաղտնիքներ պէտք է ծածկած ըլլայ և անոր մորաթաթախ աւերակները խորհրդաւոր անցեալ մը ունեցած ըլլալու են։ Արդարև մարդ կ'այլայլէ իր անունին իրեն վերագրած նկարագիրը և կ'ապրի իր քմահաճոյքին իրեն համար ձևակերպած կեանքը. քաղաք մը ընդհակառակը անվթար կը պահէ իր անունին բնորոշող հանգամանքը մինչև որ մարդոց հաճոյ թուի նոր անուն և նոր վիճակ սահմանել հին քաղաքին։

Վիշապ կամ օձ դժբաղդաբար զիրար կ'արժեն և այս քաղաքին վերջէն տրուած անունը քան զառաջինը նուազ արհաւրալից չէ։ Զենոբէ վերջ մեր ազգային մատենագիրները Տարօնոյ սահմաններուն մէջ Վիշապ անուն քաղաք չեն արձանագրեր։ Իսկ Յով. Եպ. Մամիկոնեան՝ ի հեճուկս Դր. Խալաթեանի, իր Զենոբէ տարբեր անձ ըլլալուն իբրև անժխտելի ապացոյց, ՎԻՇԱՊ պանծալի կոչումը ՕՁ նսեմացուցիչ անուան կը վերածէ։

Նոյն իսկ այս օր այս մահաբոյր ճահիճներով ծածկուած քաղաքիս աւերակներուն մէջ տակաւին կը վըխ-

տան նետուող օձեր և մօտէն անցնող ճամբորդին մտքին մէջ Վիշապին և օձին գաղափարը կը նոյնացնեն : Նետւող օձը (اوق يلان) կը գալարուի և իր ոլորքը յանկարծ քակելով՝ զսպանակէ արձակուածի պէս կը թռի, կը յարձակի խայթել ուզած անձին վրայ. և վա՜յ խայթուողին, անոր թոյնի ազդեցութենէն ազատում չը կայ :

Բաղէշէ մինչև Սասնոյ ձոր և անկից ալ Մեղրագետի ողողած աւերակները և աւելի հեռուն դիւրին է անցեալէն այնպիսի հետքերու պատահիլ որ օձապաշտութեան յուշարարներն են : Կը բաւէ առ այս խոնարհիլ գեղջուկին կեանքին, մտերմանալ անոր հետ, չի խրտչեցնել զինքը և թողուլ որ գործադրէ այն սովորութիւնները զորս դարէ դար անգիտակից ունակութիւնը այս վայրերու մէջ կը յաւերժացնէ :

Շինականը ունի իր ընտանի օձը, անոր տան ոճորքին մէջ սողոսկիլը մտիկ կ'ընէ, անոր խշրտոցէն կ'ախորժի. անոր սուլիւններէն կը հմայուի, իր խրճիթին արեւդէպ մէկ կողմը անոր յատուկ պտուկով կաթ կը դնէ, անոր սպաննուիլը գերդաստանին համար աղիտաբեր արկած կը համարի :

Կողբացին՝ որ Տարօնոյ մէջ անցուց կեանքին մէկ մասը և հոն Առաքելոց Վանքին մէջ ցայսօր ամփոփուած կը մնան իր նշխարքը, մէկէ աւելի անգամներ պատեհութիւն ունեցաւ բնիկներուն մէջ արմատացած այս հեթանոսական սովորութիւններուն հանդիպատես ըլլալու և իր ԿԵՂԾ ԱՂԱՆԴՈՑ գրքոյկին առաջին և գլխաւոր մասը նուիրած է ջրելու օձապաշտութեան մոլորութիւնը իր ամէն ձևերուն տակ :

«Նա աւանիկ տեսանեմք զօձս ի հնարագիտութենէ թովչաց զգօնացեալ եւ իբրեւ պշուանս խաղաղիկ նոցա եւ

բազում անգամ բնակեալ ի տան՝ զմեղանչեն բնակչացն: Եւ այնչափ զզօնացուցանեն զօձս զիսեն մինչեւ յուրքիւ կոչել ի տունս. եւ կերակուր մատուցանել նոցա. Տես կջ 64, Եզնիկ 1826 Վենետիկ: Եւ զհարբս իգակերպս կալեալ բովչութեամբ յղնեալութիւն մարդկան ածեն, ըմպեցուցեալ զքոյնս ապականողս. Տես կջ 69 Եզնիկ 1826 Վենետիկ:

Եթէ Թերահաւատներ Վիշապին և Օձին նոյնութեան համար վկայութիւն պահանջեն՝ անոնց այ կը պատասխանէ. «Սատանայ մեծացուցանէ յայս մարդկան զվիշապս զի առնուցուն զնոսա ի պաշտօն եւ կարծեցուցանէ թէ եւ նմանք ինչ իցին զեօց եւ շահապետ վայրաց եւ յետ կարծեցուցանելոյ՝ ինքն առնու վիշապի կերպարանս կամ նմանզի իւն եւ շահապետի զի այնու զմարդն յիւրմէ արարչէն թիւրեսցէ. Տես կջ 105 Եզնիկ 1826 Վենետիկ.» «Եւ վիշապն ոչ է ինչ անգամ օձաձեւ երեւէր եւ միւս անգամ մարդակերպ. Նոյնպէս եւ զոր շահապետս վայրացն կոչեն, ոչ մերթ մարդ երեւէր եւ մերթ օձ որով ԶՕՁԱՊԱՇՏՈՒԹԻՒՆ հնարեցաւ յաշխարհ մուծանել. Տես կջ 106 Եզնիկ 1826 Վենետիկ:»

Այս պժգալի մոլորութեան Հայ ժողովուրդին այլ և այլ խաւերուն մէջ ընդարձակ համեմատութիւն առած ըլլալուն վկայութիւնը կը գտնենք մեր այլ եւ այլ մատենագիրներուն մէջ և կրնանք հաստատել թէ շինականք, քաղաքացիք և աւագորեարք հաւասարապէս անձնատուր էին անոր, այսպէս.

ՆԱԽ ՇԻՆԱԿԱՆՔ. Դաշտային կենցաղին հետեւանօք նշաւակ էին նետուող օձերու յարձակումներուն և իրենց խոր տգիտութիւնը թեւ և թռիչ կուտար անոնց: Ուս-

ու Կողբացին մանաւորապէս զանոնք կը զգուշացնէ մինչանիներուն դէմ նոյն իսկ ինք ընդունելով որ իր ժամանակ աչքի երեւոյթներ տեղի կ'ունենային․ «Երբ ի դաշտս Երազգաւանիս ձիգցին եւ հեծեալք իբրեւ զմարդիկ զնես երևոց արշաւիցեն՝ կեղծիք ՊԻՒԱՑ են եւ ոչ ճշմարտութիւնք ինչ իրաց եւ երբ ի գեսս կանանց ինչ ի կերպարանս երեւիցին՝ ՍԱՏԱՆԱՅԻ կերպարանք են եւ ոչ ի մարդ իբրեւ զդեւ մեսնե ՎԻՇԱՊՆ որպէս ունանք ի շնչոյ դիւահարին կարծեցին․ Տես էջ 106 Եզնիկ 1826 Վենետիկ»:

Եւ եթէ արտերը մշակող երկրագործներ օձապաշտութեան անձնատուր չըլլային եւ Եզնիկ իր ականջով լսած չըլլար անոնց այս մասին ըսածները՝ ինչ պէտք ունէր զանոնք յորդորելու թէ «Ոչ ՎԻՇԱՊՔ զսոհմակեանս արդեանց կրեն եւ ոչ զրաւս զոյ նոցա՝ երբ արդիւնս կալաց ուրուք կրիցեն. ի զուր է կա՛չ կա՛չն ասել ունել ի կալս՝ եւ ոչ ա՛ռ ա՛ռ: Զի ՎԻՇԱՊՆ որ ինք զրաւս է, զի՞արդ զայլ զրաւս վարիցէ, զի ՎԻՇԱՊԻ այլ ազգ բնութիւն չէ երբ ոչ ՕՁԻ․ Տես էջ 103. Եզնիկ 1826 Վենետիկ»։

ԵՐԿՐՈՐԴ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐ․ Իրենց միապաղաղներուն քաղաքական իրադարձութեանց տուած առասպելական գոյնին տակ՝ աշխատաւոր դասակարգին հարստահարիչներուն կրած պատուհասին նկարագրութիւնը կը կարծէին տեսնել։ Այս ատայօղ արկածներու հաճելի աւանդավէպները Վիշապներու եւ Վիշապազանց շուրջը կը դառնային եւ Նոր քրիստոնէութեան դարձող Հայոց քաղաքացի դասակարգը անոնց կը հաւատար։

Մոլորութիւն դիւաց խաբեաց զդիւցապաշտս Հայոց երբ զումն Արտաւազդ անուն արգիլեալ իցէ դիւաց որ ցայժմ կենդանի կայ. Տես էջ 105 Եզնիկ 1826, Վենետիկ.»

«Զրուցեն զԱրտաւազդայ եւ պառաւունք եթէ արգիլեալ կայ յայրի միում՝ կապեալ երկաթի շղթայիւք եւ երկու շունք հանապազ կրծելով զշղթայսն, ջանայ ելանել անտի եւ առնել վախճան աշխարհի. այլ ի ձայնէ կոանահարութեան դարբնաց զօրանան ասեն կապանքն: Վասն որոյ բազումք ի դարբնաց զհետ երթեալ առասպելին յաւուրն միաշաբաթու երիցս կամ չորիցս բաղխեն զսալն զի զօրասցին շղթայքն Արտաւազդայ:... Զի Վիշապազունք գողացան զմանուկն Արտաւազդ եւ դեւ փոխանակ եդին. Տես էջ 298 Մ. Խորենացի. 1881 Վենետիկ:»

ԵՐՐՈՐԴ. ԱԻԱԳՈՐԾԱՐԸ. և հոս ինչպէս միշտ նոյնպէս այս հնաւոր դարերուն մէջ ալ՝ բարոյական անկումը աւելի չեչտուած կը գտնենք ժողովուրդին բարձրագոյն դասակարգին մէջ ։ Զենոբ այս մոլութեան անամօթ տեսարանները կը զգուշանայ պարզել իր հիմնած վանքին նորընծաներուն աչքին առջև «Զի մի յիշեսցեն զպաշտօն պղծութեան իւրեանց: Տես էջ 36 Զենոբ 1832. Վենետիկ.»

Արդարև Զենոբի նպատակը Հայոց նախկին կռապաշտութեան արարողութիւնները իրար բաղդատել չէր՝ ինչպէս կը պահանջէ յարգելի Գ. Խալաթեան, այլ վանքի սեպհականութիւնը Ասորւոց պաշտպանել և շատ շատ իր ուխտի ձեռնասուն միաբանները հրահանգել քրիստոնէական վարդապետութեանց մէջ ուստի և ոչ մէկ դայթակղական խօսք իր գրիչէն ելլելու չէր ։

Ուրեմն ներուի մեզ դիտել տալ թէ Յարգելի Գ. Խալաթեան չը գիտեր թէ ի՛նչ կըսէ երբ կը գրէ թէ «Ո՛չ մի խօսքով չէ յիշում ի՛նչ էր կուռքերի պաշտամունքը, ի՛նչով էր տարբերվում հեթանոսական միւս հաւատքներից. Տես. էջ 59. Համ. Ուսում. Զենոբ Գլակի. 1893 Վիեննա:» Ամէն մարդ իր նպատակէն կը դատէ և Զենոբ նպա-

տակ չունէր ՀԱՄԵՄԱՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ մը կատարելու։

Բայց ինք, Լազարեան Ճեմարանի Հայ լեզուի ուսուցչապետը ի ձայն փոքր կը հռչակէր թէ նպատակ ունէր Համեմատական Ուսումնասիրութիւն մը կատարելու։ Ինչո՞ւ իր դերը մոռցաւ և չի համեմատեց Զենոբի պատմութիւնը անոր դիրքին, անոր ժամանակին, անոր միջավայրին, անոր դիտաւորութեան հետ։ Մանաւանդ ինչո՞ւ այլ Հայ մատենագիրներու «Պղծութեան պաշտօննե-րու Նկարագրութեան» չը դիմեց՝ այն ատեն պիտի հա-մոզուէր թէ այդ տեսարանները անհանդուրժելի էին քան-քի մը շրջափակին մէջ։

Բայց մենք Օձապաշտութեան գարշելի տեսարաննե-րուն ըմբռնման համար զինքը կը ղրկենք Փ. Բուզան-դացւոյն որ ուրիշներ մեղադրած են պաշտօն պղծու-թեանցը յիշելուն համար որովհետև պէտք է ընդունել որ լկտի և մերկապարանոց ճշմարտութիւններ են անոնք այսպէս։

Այլ Թագաւորն Պապ, այն ինչ ծնեալ էր ի մօրէ իւրմէ՝ անօրէն մայրն նորա Փառանձեմ ԶՕՆԵԱՑ ԶՆԱ ԴԻՒԱՑ և վասն այնորիկ լի էր դիւօք ի տղայութենէ իւրմէ և կախարդանօք երևէին դեք ի նմա։ Եւ ամե-նայն մարդ աչօք բացօք տեսանէին զդևս ի նմա։ Զի յորժամ մարդիկ հանապազօր յայտնապէս երթեալ մտանէին, տեսանէին զի յօձից կերպարանս երևէին ի ծոցոյն Պա-պայ Թագաւորին և ՊԱՏԷԻՆ ԶՕՐԻՍՕՔ (*) ՆՈՐԱ, և ամենեքեան որք տեսանէին զնա, երկնչէին ի նմանէ և հեռաց երթեալ։ Իսկ նա պատասխանի տայր մարդկանն

(*) Զուտ համբուրումն Աժդահակայ. Տես էջ 132. Մ. Խորե-նացի 1881. Վենետիկ:

ասելով՝ թէ մի երկնչիք. զի սոքա իմ են. և ամենայն մարդ յամենայն ժամ տեսանէին զայնպիսի ինչ կերպարանս ի նմա։

Եւ էր թագաւորն Պապ ի ՊՂԾՈՒԹԵԱՆ թաւալեալ. երբեմն այլոց ԷԳ ԵՂԵԱԼ տայր զինքն ի խառնակութիւն, և երբեմն զայլս ԷԳ ԱՐԱՐԵԱԼ զարուսն խառնակեալ պղծէր և երբեմն ընդ անասունս խառնակէր. Տես էջ 219—220. Փ Բիւզանդացի 1889 Վենետիկ.

* * *

Եւ եղեւ իբրեւ ծնաւ Փառանձեմ զորդին իւր զՊապ, քանզի անօրէն էր և ամենեւին յԱստուծոյ ոչ երկնչէր, նուիրեաց զորդին իւր դիւաց և բնակեցին դեւք բազումք ի մանուկն և վարէին զնա ըստ կամաց իւրեանց։ Սնաւ և աճեաց և գործէր զմեղս, զպոռնկութիւն, զպղծութիւն արուագիտութեան և զանասնագիտութեան, բայց կարի զարուագիտութիւն։ Դարձեալ ինքն իգանայր այլոց և այսպէս մոլեկեալ թաւալեալ էր։

Եւ իբրեւ զգաց մայր նորա զարուագիտութիւնն, և ոչ կարացեալ համբերել պարսաւանացն վատանուանութեան. ասէ ցանենեկապան որդւոյն իւրոյ, թէ յորժամ նա խնդրեսցէ ի պղծութիւն զարսն՝ ընդ որ սովորն է անկանել, դուք զիս ի ներքս կոչեսջիք։ Յորժամ պատանեակն Պապ ինքն ընդ անկողին մտեալ՝ խնդրէր զարսն ի պղծութիւն, եմուտ մայր նորա և նստաւ զառաջեաւ նորա։ Ապա սկսաւ ճչել վայել պատանեակն, և ասէ ցմայր իւր. Յարիցես գնասցես ի բաց, զի խորովիմ, կսկծիմ, եթէ ոչ յարիցես գնասցես ի տանէս։

Իսկ մայրն նայեցեալ տեսանէր աչօք իւրովք ՕՁԻ

ՍՊԻՏԱԿՔ, զի պատեալ էին զգահոյիցն ոտամբք և ճապաւէին ի վերայ պատանեկին Պապայ. մինչդեռ ընդողմանեալ էր նա. կայր ի մահիճսն. վայէր և խնդրէր զպատանեակն ընդ որ սովորն էր գիտանալ։ Եւ մայրն յիշեաց վայն որոյ ի ծննդեան նուիրեաց զորդին իւր. գիտաց թէ նոքա են որք ի կերպարանս ՕՁԻՑՆ ճապաւեին զորդովն իւրով. յարտասուս հարեալ ասէ. վա՛յ ինձ, որդեակ իմ, զի քեզ տագնապ էր և ես ոչ գիտէի։ Տես էջ 159—160, Փ. Բիւզանդացի 1889. Վենետիկ։

Ամէն բանի յարմար տեղը կայ. Օձապաշտութեան վրայ խօսելու յարմար տեղն է Փ. Բուզանդացւոյն գիրքը և օձապաշտութեան արարողութիւններուն հեթանոսական յարմար կայանն էր Վիշապ քաղաքը։ Որ մը հնախօյզները Մեղրագետի ճախճախուտներուն մօտ այդ քաղաքին աւերակները պեղելով՝ անոր դարաւոր գաղտնիքը խօսեցնել պիտի տան, այն ատեն նորոյթը պիտի ըլլայ օձապաշտութեան և Վիշապ քաղաքին վրայ խօսիլ։

Բայց մենք ճշմարտութեան ի խնդիր ելած ենք և զայն կերպարանափոխ ընել մեր ծրագրէն դուրս է. ուրեմն չենք վարանիր հաստատելու թէ քրիստոնէութիւնը՝ իր սուրբ հռչակածը իր պիղծ համարածին հետ նոյնացնելով կռապաշտութեան այս վտանգաւոր ձեւը մոռցնել տալէն և Վիշապ քաղաքին անունը նսեմացնելէն ետքը՝ թողուց այս քաղաքը որ լքուած ամայանայ և անհետ կորսուի։

Եւ որպէս զի լաւ ըմբռնուի Հայաստանի մէջ հեթանոսութեան և քրիստոնէութեան զիրար խաչաձեւող ընթացքը՝ հանդիպակաց էջին վրայ քով քովի կը շարենք Հայաստանի մէջ զիրար հետապնդող կրօնքներու համանման տեսարանները։ Զուգադիպումը հոն կատարեալ է ազգային տարազի թեթեւ զանազանութեամբ և հոն կը նոյնանան ԱՑՐ, ԿԻՆ և ՕՁ։



**Ա.**
ՎԻՇՆՈՒ, ԼԱՔՇՄԻ
ՕՁ



**Բ.**
ԱԴԱՄ, ԵՒԱ
ՕՁ



**Գ.**
ՀԵՐԱԿԼԷՍ, ԱՓՐՈԴԻՏԷՍ
ՕՁ

Մեր ներկայացուցած տեսարաններն վաւերական են։ ԱԴԱՄ ԵՒԱՅԻ պատկերը կարտատպենք Աղթամարայ եկեղեցւոյն հիւսիսային ճակտի Լինչի կողմէ լուսանկարուած քանդակի պատկերէն (Տես էջ 132 Armenia vol. II. by H. F. B. Linch 1901 London.) ՀԵՐԱԿՂԷՍԻ և ՎԻՇՆՈՒԻ դրուագները կը պարտինք ժամանակակից գիտունի մը որ իր նկարները իրականութեան վրայէն քաղած է և խորաքանդակներ, արձաններ, ու նախնեաց յիշատակարաններն կը ներկայացնէ (Տես էջ 19 և 101. Les Dieux Antiques Par S. Malarmé 1880 Paris.

Իրազեկները մեր ընտանի պատմութեան ընթացքէն յայտնապէս կը տեսնեն թէ Զենոբի պատմութեան առարկայ Տարօնոյ համայնադիր մեհեանին մէջ նախ Վահունիք — 1. ՎԻՇԱՊԱՔԱՂ Վահագնը և Ոսկիամայր Անահիտը պաշտելին, յետոյ Յունաց — 2. ՎԻՇԱՊԱԽԵՂԴ Հերակլէսը և անոր սարփաւոր Ափրոդիտէսը անոնց տեղ դրին — 3. ՎԻՇԱՊ քաղաքէն քուրմեր զԳԻՍԱՆԷ և զԴԵՄԵՏՐ կանգնեցին անոնց տեղ։ — 4. Վերջապէս Քրիստոնէութիւնը. ՕՁԸ և Ադամ Եւան դրաւ անոնց տեղ անոնցմէ վեր բարձրացնելով անշուշտ պաշտելի Աստուածը։

Ուրեմն մեր երկիրը հազիհազ կրեց Մարական, Յունական, Հռովմէական և Հրէական գաղափարներու ազդեցութիւնը եթէ սակայն ՎԻՇԱՊԸ զուտ հայկական չը համարենք։ Արդարեւ ՎԻՇԱՊԸ այն վիթխարի օձը չէ՞ միթէ որ գիշերուան արհաւիրքին մէջ իր լայն թեւերը տարածելով խոյացաւ Մարայ Աժդահակ թագաւորին վրայ անոր մղձաւանջ պատճառելով։ Արդ. Տիգրանուհւոյ ապագայ ամուսինը հաստատեց թէ այն գիշերային չարագուշակ երեւոյթը Հայ ազգին պատկերացումն էր։

«Էր ինձ ասէ, ո՛վ սիրելիք, չինել այսօր յերկրի անծանօթում, մերձ ի չեառն մի երկար յերկրէ պարծութեամբ, որոյ զազարն սասկութեամբ սառնամանեաց թուէր պասեալ եւ ասէին զոգցես յերկրին ՀԱՅԿԱԶԱՆՑ զայս չինել: . . . Եւ յերկարագոյն նայիլն իմ, կին ումն ծիրանազգեստ երկնագոյն ունելով զիւրեաւ սեռ, աչագեղ, պարծրահասակ եւ կարմրայտ, երկանց ըմբռնեալ ցաւով, ծնաւ երկս կատարեալս ի դիւցազանց: . . . Երրորդն զՎԻՇԱՊՆ անարի սանձեալ, արծուանմանն պչացեալ թեւօք սեսի յարձակեալ՝ որ մօտ հասեալ խորհէր կործանել զդիսն: Տես էջ 113—114. Մ. Խորենացի 1881. Վենետիկ.

Մեր ծերունի քերթողահայրը իր պատմութեան գիրքին մէջ Սահակ Բագրատունւոյ տաղերն վրայ մասնաւոր գլուխ մը բացած բացատրելու «Բիւրասպի Աժդահակայ ՋՈՒՍՈՑ ՀԱՄԲՈՒՐՈՒՄՆ(*) եւ անդուս ՎԻՇԱՊԱՑ ծնունդս եւ յայնմհետէ չարութեան յաճախելն, ծախել զմարդիկ ի պէտս որովայնի. Տես էջ 132. Մ. Խորենացի 1881 Վենետիկ:»

Ուրեմն ահա քողազերծ եղած է Աժդահակին առեղծուածը և Հայոց ու Մարաց խնամութեան մահասարսուռ անցեալը։ Աժդահակ ի մեր լեզուս է վիշապ. Տես էջ 125. Մ. Խորենացի 1881. Վենետիկ:

Զենդի գրութեան բացատիկ վաւերականութիւնն ալ այն չէ՞ մի որ ինք կը յիշէ այս ՎԻՇԱՊ քաղաքը.

---

(*) Արդարեւ մինչեւ այսօր Աժդահակ (اژدرها = վիշապ) կը նշանակէ վիշապներ եւ (مار = օձ) Մարաստան կը նշանակէ օձաստան եւ Մարաց Հայաստան մեռնելէն ետքը ուրեմն օձապաշտութիւնը հին կը կատարուէր մարդազոհերով եւ պղծութիւններով:

Սակայն ի՞նչ է մարդկային մտքի այս բնական տրամադրութիւնը, ուսկի՞ց ծագում առած է այն։ Անոր սկիզբը կը հասնի մարդուն աշխարհիս վրայ երեւնալուն առջի օրերուն և անհաշտ չէ Ս. Գրոց այս մասին աւանդածներուն հետ։

Դրախտի պատմութեան վերադարձ ընելու հարկ չենք տեսներ։ Հրէայք իրենց նուիրական գիրքին մէջ օձ բառով ՍԱՏԱՆԱՆ հասկցած են որ մեղքը աշխարհ մտցուց. Տես Ծննդ. Գ. 13։ Անշահ հետաքրքրութիւն մը Ս. Գրոց մեկնիչները յոգնեցուցած է բացատրելու համար թէ ինչպիսի արարած մըն էր Օձը, որ Եւան խաբեց և Ադամին անկման պատճառ եղաւ. ոմանք պնդեցին որ օձերը ժամանակաւ խօսած և քալած ալ են։

Բայց ինչ էր ՎԻՇԱՊԸ կամ Թեւաւոր ՕՁԸ։ Հրէից մարգարէն բառ առ բառ թեւաւոր օձ կը գործածէ, այսպէս. «Անոր պտուղը կիզող ԹԵՒԱՒՈՐ ՕՁ պիտի ըլլայ. Ես. ԺԴ. 29.» «Իժի եւ ԹԵՒԱՒՈՐ ՕՁԻ երկիրը կ'երթան. Ես. Լ. 6.» Հոս խնդիրը յաւէտ նետուող օձերու վրայ ըլլալու է որ Աքապայի ծոցին հիւսիսակողմը կ'ապականէին և խայթեցին Իսրայէլի որդիքը։

Հերոդոտոս, ինք, կը յիշէ թեւաւոր օձեր որպէս թէ անոնք երեւցած ըլլան Եգիպտոսի սահմանակից Արաբիոյ մէջ, բայց ինք անձամբ անոնցմէ չտեսաւ, և ցարդ ոչ մէկը տեսած է թեւաւոր օձ։ Կայ սակայն տեսակ մը խիստ թունաւոր օձ որ կը պալարուի և ոլորքը յանկարծ քակելով կը յաջողի յարձակիլ իր խայթել ուզած անձին վրայ. Մնացածը երեւակայութեան խնդիր է և դժուար չէ մտացածին երկու թեւ տալ նետուող օձերուն։

Մովսէս այս օձերուն խայթուածքէն տառապող ժողովուրդը բժշկելու նպատակաւ պղնձէ օձը բարձրացուց ձողի մը վրայ, անիկայ ինքնին բուժիչ զօրութիւն չունէր, բայց հաւատքով անոր նայողը Աստուծոյ շնորհիւ

կը բժշկուէր։ Դժբաղդաբար Իսրայէլացիք զայն անա-
պատին մէջ իրենց հետ պտտցնելու գոհ չըլլալով՝ նոյն-
իսկ Երուսաղէմ մտցուցին և մինչև Եզեկիէլի օրը անոր
առջև խունկ կը ծխէին ու զայն կը պաշտէին իբրև
Աստուած։ Եզեկիա զայն խորտակեց և ծաղու համար
անունը Նէեսթան դրաւ Դ. Թագ. ԺԸ. 4։

Քրիստոնէութիւնը օձն ըրաւ ազնուագոյն հաւատքի
մը Իտէալը և ինչպէս Մովսէս ՕՁԸ բարձրացուց անա-
պատին մէջ՝ նոյնպէս ՅԻՍՈՒՍ բարձրացաւ ԽԱՉԻՆ
վրայ որ ամէն անոր նայողը փրկուի. Յով. Գ. 14։
Մինչև որ Միքայէլ հրեշտակապետը պատերազմելով
ՎԻՇԱՊԻՆ հետ՝ կործանեց ԱՌԱՋԻՆ ՕՁԸ որ բանսար-
կու և սատանայ ալ կ՚ըսուի և բոլոր աշխարհը մոլորե-
ցուց։ Յայտ. ԺԲ. 7—9.

Այս Բաբելաստան, Ասորեստան, Հնդկաստան, Մա-
րաստան, Պարսկաստան, Յունաստան. Հռովմ, Եգիպ-
տոս. Հայք, զերծ չէին օձապաշտութենէ և յարգելի
Գր. Խալաթեան, պէտք էր գիտնալ թէ «այրուկ հասկ
Հայք առին զանուն Քրիստոնէութեան, զոր միայն իւրեւ
գիրոն իւն մարդկութեան ի հարկ վասն զի մեք իւրեանց
դեգերեալ մաշկին յանուղղայ կրթութիւն ընդ չքոտի մեաց
հեթանոսութեան սովորութեանց, ի նմին հաւատացեալք եւ
ի նոյն հանապազորդեալք. տես էջ 33 Փ. Բուզանդացի,
1819 Վենետիկ.»

Կէյլէր և այլ եւրոպացի բանասէրներու ներելի է
այս մասին իրենց տգիտութիւնը «Եւրոպացին որչափ
ալ գերածայրեալ ըլլայ գիտութեամբ և հմտութեամբ կը
տեսնենք որ բան մը կը պակսի իրեն. իւրացումը (assi-
milation)։ Համարձակութիւն է թէև, բայց կրնանք
վստահաբար ըսել թէ ԱՐԵՒԵԼՔԸ ԱՐԵՒԵԼՔՑԻՆ միայն
կը հասկնայ և կըմբռնէ և կը ցոլացնէ, եթէ մանաւանդ
Հայ լեզու մըն ալ ունի ձեռքը միջոց եւ գործի. Տես էջ.

5 Աերպատ Մարասպանեայ, Անդարձ. Ե. Թիրեաքեան 1 Մայիս 1909 Նիւ Եօրք:

Աւրեմն մինչեւ որ հակառակը հաստատուի՝ Զենոբ իրեն համար նախապէս որոշուած դարուն վաւերական գրիչը կը մնայ և իր յիշատակած Վիշապ քաղաքը խիստ հետաքննական վայր մը՝ որուն դիրքը ըստ կարելւոյն կը ճշդուի քաղուած հետեւեալ ծանօթութիւններով. այսպէս.

«Հանդիկ իշխանք, Գիսանէ եւ Դեմետր, մազապուր անկան առ Վաղարշ(ակ): Եւ նա ետ նոցա զերկիրն Տարօնոյ ուր բնքեանք շինեցին քաղաք եւ կոչեցին ՎԻՇԱՊ. Տես կը 38. Զենոբ 1832 Վենետիկ. եւ փութանակի եկին հասին զօրքն քրմանից ի ՎԻՇԱՊ քաղաքէ. Տես կը 28 նոյն.

«Վահան ասէ. այժմ երթիցուք յՕՁ քաղաք եւ անդ այլ ուրեք Տես կը 21 Յով. եպ. Մամիկոնեան 1832 Վենետիկ. Եւ նոքա կր մուտք Օձ քաղաքին եւ սակաւ սակաւ կարկին մտանել ի ներքս. Տես կը 22. Իսկ ունանք փախստեայ լեալ անցանէին հանդէպ մօրաքարախ Օձ քաղաքի. Տես կը նոյն:

Օձ քաղաք է այժմ աւերակ հին քաղաքի անբնակ. Տես կը 191 Աշխ. Ասիա Ա. Մաս Հ. Ղ. Ինճիճեան 1806 Վենետիկ:



# ՈՂԿԱՆ ԱՄՐՈՑԸ

*Ինչ համեմատութեամբ որ մարդիկ իրենց անցեալը իրենց նմաններէն ծածկելու ջանաձնար ըլլան՝ նոյն համեմատութեամբ կ'աւելնայ անոնց ատենով կասկածելի կեանք մը վարած ըլլալու հաւանականութիւնը։ Ողկան կամ Ողական ամրոցին դաւաճանութեամբ տիրողները հոգ տարած են այդ բերդին իրենց տիրելու ամօթալի պարագաները մոռցնելու և նոյնքան խնամով ծածկած են իրենց աղտոտ անցեալը։*

*Երբ Հայաստան մտաւ Տրդատ, ինք Արշակունեաց ցեղէն արեւմուտք տարուած նախկին պատանդ մըն էր որ օտար լեզէոններու գլուխ անցած կուգար Հռովմի հաշւոյն նուաճելու իր բնիկ երկրին աւատական պետերը։ Այս պայմաններուն մէջ Հայ Ազգին յառաջացեալ դասակարգերը՝ նախարարներն ու քուրմերը, շահ ունէին Սասանեան Պարսից հաւատարիմ մնալու։*

*Զարմանալի չէ ուրեմն եթէ Սղուկ հրապուրուելով Շապուհէն, սպաննեց իրեն փեսայացած Օտա Ամատունին որ Անի ամրոցին մէջ որջացեալ էր և որ դիւրացուցած էր Տրդատայ մեր երկրին գրաւումը։ Յետոյ ապաստանելով Տարօնոյ Ողկան ամրոցը՝ ապստամբութեան դրօշը պարզեց և երկիրը կ'աղմկէր Սիմ լերան բնակիչներուն ապաւինելով։*

*Ողկան ամրոցը Տարօնի զինուորական գրաւման բանալին էր և Զենոբէ կը սովրինք թէ Հայաստանը Հռովմէական լուծին տակ վերջնապէս ընկճելու համար Տրդատայ ռազմավարական գործողութիւններուն խարիսխը եղաւ ան։ Արդարեւ Հայոց անուանական թագաւորին*

իշխանութիւնը երկրայինի կը յիշէ ցուցակի ընթացս Աղուկ «Անկապակածեցի Ոսկանին. Տես էջ 117. Եղիշէ 1864 Վենետիկ» ամրացած երկիրը ազատէր: Ուստի ժամանակ մը սպասել և գրաւման նախաշաւիղը պատրաստել պէտք եղաւ մինչև որ պատուեցաւ բաւական գձուձ անձ մը որ մատնութեամբ այդ ամրոց գիրքը ձեռք անցուց:

Իր բնիկ տիրոջ. Սարոկի կեանքին դէմ անյաջող դաւաճանութիւն մը փորձելէն վերջ՝ Հայաստան ապաստանած տիրադրուժ մը՝ Մամգունն, էր այն նենգամիտ ժամանակը որ որուն ժամանակ Աղուկը կռնակէն զարկաւ սպաննեց: Ահա կը տեսնենք թէ անոր վստահելու պատճառ մը չունէր Տրդատ, ուստի և թէպէտ «տեղ տուաւ անոր ադխին եւ ռոճիկ ի կերակուր, բայց զայն տեղի ի տեղ փոփոխեաց զբնակութեան նորա. Տես էջ 345 Մ. Խորենացի 1881 Վենետիկ:

Տարօնի գրաւման օգնեց նաև ուրիշ ստորամբու անձ մը, Անակին որդին. որ իր Կեսարիայէն վերադարձին լսելով Ողկան ամրոցին նուաճումը՝ մտաւ Տարօն և ինքնագլուխ սկսաւ քուրմերու առաջին պատերազմը մինչև որ Տրդատ՝ հիւսիսային թագաւորին պատերազմէն ետ դառնալով, իրեն միացաւ: Ահա այս պատճառաւ ամէն անգամ որ կարիք տարբած միջոցին նեղը ինկան՝ անմիջապէս Ողկան ամրոց դիմեցին:

«Յորդւոց հեծելոց եկեն բշնամիք Ս. Գրիգորի եւ Զենոբայ՝ հեծեալ բերանսանցիւք յերկիւղ փախստական գնացին յամուրն Ողկան եւ յառաջացեալ ի զինուս մերն ի ներքս. Տես էջ 26 Զենոբ 1832 Վենետիկ.»

Եւ երբոր թշնամիները յաղթեցին՝ բռնած գերիներնին Ողկան ամրոցը դրին «Եւ յորժամ գնացին զօրքն Տրդատայ ի Վիրսն եւ դարձուցին զգերիսն եւ զգերիս իշխանսն եկին յՈղկան. Տես էջ 43 Զենոբ 1832 Վենետիկ:

Եւ Տարօնը նուաճելէն ետքը Ողկան ամրոցը պարպելով Մամիկոնեանց թողուցին: «Եւ ապա միաբան խա-

դացին գնացին ի գաւառն Ապահունեաց, ընդ ինքեանս տանելով զիշխանսն որք էին ի բերդն Ողկան. Տես էջ 49 Ձեռք 1832 Վենետիկ.»

Այս Ողկան ամրոցը Իննակնեան Ս. Կարապետէն շատ հեռու ըլլալու չէր, որովհետեւ երբ Միհրան յարձակեցաւ Գլակայ վրայ՝ փախստականները ապաստանեցան «յամուրն Ողկան. Տես էջ 16. Յով. Եպ. Մամիկոնեան 1832. Վենետիկ.» ինչպէս պատահած էր նաեւ Ս. Լուսաւորչի:

Այս ամրոցը անառիկ նկատուած էր ինչպէս հետեւեալ մէջբերումներով կը հաստատուի «Անկասկածելին Ողական Տես էջ 117, Եղիշէ 1864 Վենետիկ». «Եւ Վահան իջանէ ի Մուշն եւ Մուշեղ յամուրն Ողկան. Տես էջ 21 Յով. Եպ. Մամիկոնեան 1832 Վենետիկ: «Եւ Վահան ժողովեալ զԿապուտն Եղջա եւ զգանձս եւ տանէ յամուրն Ողկան. Տես էջ 26. եւ զիշխանն Արշուց եղ յՈղկան մինչեւ կառ ի նմանէ հարիւր հազար դահեկան. տես էջ 55 նոյն:

Կրնանք նոյն իսկ դիրքը որոշել «Մարդպետն Հայր «զիշխանութեամբ չրջէր յերկրին Տարօնոյ և Մուշեղ սպարապետն Հայոց էր ի նմին գաւառի յիւրում բերդին՝ որում անուն Ողական կոչէն որ կայ ի վերայ գետոյն «ԵՓՐԱՏԱՅ. տես էջ 195 Բ. Փաւստոս 1889 Վենետիկ:

Ինչ որ ալ ըսէ Յարգելի Հ. Հիւբշման. իմաստի չփոթութեան մասին՝ Տոմաչէկ սխալ ստուգաբանութիւն մը ըրած չէ և քանի որ Խորենացի ու Բուզանդացի ՈՂԱԿԱՆ ամրոց կ'ուղղագրեն՝ այս բառին ուղական հոլովն է Ողակն կամ Օղակն ըստ բառագրոց որ մանեկաձեւ կը նշանակէ ուրեմն: «Այս բողոքակածէ ամրոցին աւերակները այսօր կեցած են Մշոյ դաշտին արեւմտեան ծայրը՝ Արածանւոյ աջ եզերքին վրայ ուր ցից ժայռեր

գետը նեղցնելու կը սկսին: Տես էջ 15 Սասուն. Վ. Տոմաշեկի 1896. Վենետիկ:

«Կինէ կը կարծէ 2. 585. թէ քերդիս մնացորդները գտած է Մշոյ դաշտին արեւմտեան եզերքին վրայ հոն՝ ուր 60 մեթր բարձրութեամբ երկու ժայռեր Մուրատ Սուին առջեւ թումբ կը կազմեն, քերդիս մնացորդները կը գտնուին եղեր գագաթը աջ ափին վրայ գտնուող ժայռին որ երեք կողմէն ջրով պատած է: Ինճիճեան մէտ է Գոկսանի հետ նոյնացնելու: Տես էջ 392. Հին Հայոց տեղւոյ անուններ Հ. Հիւբշման 1907 Վիեննա:»



# ԱՍՈՐՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ



Արհեստը չի կրնար դարմանել ճշմարտութեան պակասը և չինծու գրութեան մը կեղծիքը վերջ ի վերջոյ տեղէ մը ծայր կուտայ: Ուստի և իրաւամբ կը պնդենք որ քննադատին առարկութիւնները լոկ կասկածի վրայ հիմնուած ըլլալու չեն և թէ գրականութեան ատեանը ներկայացողը օրինաւոր փաստերով պէտք է մօտենայ իր դատափետած հեղինակին:

Համեմատական ուսումնասիրութեան ձեռնարկողին պարտականութիւնն է՝ ոճի և բառերու դիպուածական նմանութիւններէն աւելի, բաղդատել մանաւանդ նշանակուած թուականները որովհետև ժամանակագրութիւնը պատմութեան ոգին է և ատենի տեւողութեան մէջ թուականներ կը ճշդեն դէպքերու առընչական դիրքը:

Քրիստոնէութեան լոյսը Հեթանոս Հայաստանի մէջ սփռելու համար Ս. Գ. Լուսաւորիչ և Տրդատ ստիպուած էին դուրսէն բերել խումբ մը Ասորի կրօնաւորներ մինչև որ բնիկներէն անոնց տեղ բռնելու կարող Հայ եկեղեցականներ պատրաստուէին: Ահա ժամանակագրական իրողութիւն մը որ առարկութիւն վերցուցած չէ. ասոնց պատմութիւնը «ինքն Սուրբն Գրիգոր անուանեաց Ասորոց պատմութիւն. Տես էջ 19 Զենոբ. 1832 Վենետիկ.

Չենք գիտեր ինչո՞ւ Յարգելի Գ. Խալաթեան զայն կանուանէ ԶԵՆՈԲ ԳԼԱԿ. այդ վերտառութիւնը վերջին տպագրիչներուն մէկ սխալն է և Կ. Պոլսոյ տպագրութեան մէջ չը կայ: Արդարև Անատն, Եղիազար, Բեկտոր,

Անաստաս, Աքիւղաս, Մարկեղոս, Եպիփան եւ նոյն ինքն Զենոբ՝ Տարօն խուժող Ասորի հոգեւորականներու առաջին շարքն են եւ աղկից առնելով Կ. Պոլսոյ տպագրութիւնը կը մակագրէ Պատմութիւն Տարօնոյ զոր գրեաց Զենոբ Ասորի։

Այս առաջին հաւատոյ տարածման առաքեալներուն կը հետեւին ուրիշ Ասորիներ որոնցմէ Ս. Կարապետի յաջորդական վանահայրութեան կը կոչուին Եփրեմ, Ստեփաննոս, Բարթողիմէոս. Կոմիտաս են. որոնք աննախընթաց յամառութեամբ վանքին կառչած կը մնան։

Ասորիներու մեր երկրին մէջ ունեցած կարկառուն դիրքը՝ այդ մենաստանը իրենց կապահովէր, իրենց ոսկի կռուանը եւ վերջին ապաստանարանը Տարօնոյ Ս. Կարապետի վանքն էր։ Եւ երբ Հայոց ազգին միազանգ քրիստոնէական համայնք մը կազմելուն հետեւանօք այլ Ասորի կրօնաւորներու պէտք չէր մնացած՝ Հ. Ղ. Ինճիճեանէ կը սորվինք թէ մինչեւ 1806 դեռ իրենց յաւակնութիւննին կը ցուցադրէին հոն իրենց յատուկ խորանին վրայ ասորերէն լեզուաւ պատարագելով։

Տարօնոյ Պատմութեան շարունակութեան մէջ ժամանակագրական տախտակ մը կայ զոր հոգ տարինք մեր ներկայ երկասիրութեան մէջ արտատպելու (Տես էջ 39)։ Անկից կը հետեւի թէ Ասորի կղերը Ս. Կարապետի Վանահայրութեան մէջ գտնուած է 217 տարի.

| | |
|---|---|
| Ս. Գրիգորէ հաշուելով Զենոբի վանահայրութեան սկիզբը Ց. Տ. | 302 » |
| Ուրեմն Ասորւոց վանահայրութիւնը տեւած է մինչեւ Ց. Տ. | 519 |

Այսպէս վանքը երկու շրջան բոլորած է Ա. Ասորի վանահայրներու շրջանը. Բ. Հայ վանահայրներու շրջանը։

Ա. ՇՐՋԱՆ. Զենոբի տասը պատճէններ հաւաքե-

լով մտադրած նպատակը, իր դիտաւորութիւնը արժեցնելու համար գործածած միջոցը, իրմէ առջը եկողներուն Աստրոց Պատմութեան ընծայած վարկը այնքան կը պատշաճին ժամանակին պարագաներուն և տեղական պայմաններուն որ այդ քանն ալ կը բաւէ յայտարարելու համար թէ Զենոբի ճշմարտախօսութիւնն է թարգմանն քրիստոնէութեան ի Հայս բունի սկզբնաւորելու տխուր իրադարձութեանց։

Աստրին միամտութեամբ կը հաստատէ թէ իրենք՝ մեր հեթանոս ազգին կորուսած հոգիները դժոխքի յաւիտենական տանջանքէն փրկելու հոգածութենէն աւելի՝ հոգածու եղան իրենց կործնչական ապրուստը ապահովելու և հաւատոյ տարածման պատրուակին տակ՝ իրենց խնամի և ցաւագար ազգակիցներուն ձրիակեր պաշտօններ հայթայթեցին։

Մտերմութեան գրագրաննին մէջ անոնք ծածուկ մնալու սահմանուած թղթերն են անշուշտ որ ժամանակին անողոք ձեռքը երեւան հաներ և անգիտակից մղումով մը հրապարակեր է։ Հոն յանկարծակիի բերուած ընչաքաղցութեան խոստովանութիւններ՝ Յարգելի Գ. Զալաթեանի կողմանէ անոնց ընծայուած, սեպհականատիրական կարեւորութիւնը կը նուազեցնեն։ Ամէն պարագայի մէջ կալուածական մուրհակներ չեն, անոնցմէ ճաշակ մը կուտանք մեր ընթերցողներուն որ ինքնին դատեն։

Ա. «Արդ մեք վասն այնր դանդաղիմք գալ, զի երկիրդ «հեռի է, և մեք ի նուազ կենացս և ի պանդխտութենէ «և Բեկտոր տանջի ի ջերմութենէ և Մարկեղէս ասա «վատեալ է յաչացն։ Տես էջ 17 Զենոբ 1832 Վենետիկ։»

Բ. «Երկիրս այս բարի է և վայրքս այս անուշ օդ, «զուարճաջուր և մեղրաբուխ։ Նաև երկիրդ ձեր խորշա-«կահար է և հացապակաս, իսկ այս երկիրս, եթէ գալ

«կամիք. լի է ամենայն բարութեամբ և աջողակ և առողջ «Տես էջ 49 Ջենոբ 1832 Վենետիկ:»

Մարդիկ ամէն ժամանակ նոյնն են, բայց միշտ նոյնքան անկիրթ չեն. քաղաքակրթութիւնը կը վարժեցընէ գրութեան մէջ վերապահութիւններ ընել և չէզոքացնել կարդացուած թուղթին պատճառելիք անախորժ տպաւորութիւնը, ուրեմն նկատելով դարերու հեռաւորութիւնը՝ պէտք է մեղմանայ մեր Ջենոբի շահախնդրութեան հանդէպ զզուանքը, մանաւանդ պէտք է այդ մարդկային տկարութեան գիւտը անոր գրածին հարազատութեան ապացոյցն ըլլայ:

Այժմ, զզուանք ազդող ընչաքաղցութիւն մը կը պարզէ մեր աչքին Ջենոբ Ասորի: Ս. Գ. Լուսաւորիչ իր թուղթին մէջ առ Եղիազար անոր եղբոր կը գրէ թէ «այնքան ընչամացոյն է Ջենոբ ի սպասաւորութիւն Ս. Կարապետին որ մինչեւ ի մահ նոյն իսկ Եղիազարու՝ իր եղբօր, չը կամի տալ վանքն: Տես էջ 13 Ջենոբ 1832 Վենետիկ.» Արդարև Եղիազար ի Հայս դիմելով կը պարտաւորի Առաքելոց վանքով գոհ մնալ:

Ասորոց Պատմութեան շարունակողը աւելի առաջ կերթայ և մեզ կը ցուցնէ իր ծայրացեալ տարիքին մէջ զԳրիգոր Լուսաւորիչ որ իր շիջելամօտ կեանքին ապաստանարան կը փնտռէ անոնց քով որ ինք իսկ Հայաստան հիւրընկալած էր: Բայց Անտոն և Կրոնիդէս հազիւ կրցան չորս ամիս իր ներկայութեան հանդուրժել իրենց Իննակնեան Վանքի դարափոր խուցերուն մէջ և «հանին զՍ. Գրիգոր անտի, ասելով. զնա յանապատ անմարդաբնակ տեղիս զի մի ոք փառաւորութիւն մատուցէ նմա արքութեան: Տես էջ 7. Յով. Եպ. Մամիկոնեան 1832. Վենետիկ.»

Ահա այս է Առաջին շրջանի վանքին մէջ տիրող ոգին՝ բոլորովին ասորական և ինքնասէր և այս է Ասո-

րոց պատմութեան պարունակութիւնը՝ թղթակցութիւններու տրցակ մը որ միայն Ասորաց համար կրնայ արժէք մը ունենալ։

Բ. ՇՐՋԱՆ. Յով. Եպ. Մամիկոնեանի նպատակն էր իրմէ առաջ վանքին մէջ պատահած հետաքրքրական դէպքերուն տեղեկանալ և իր նախորդներուն ձգած ո և է գրութիւններ հաւաքելով թողուլ «մանկանց եկե-
«ղեցւոյ ի վայելումն. Տես. էջ 59 Յով. Եպ. Մամիկոն-
«եան 1832 Վենետիկ.» Եւ իր ատենի Վանքին միաբանները Հայ էին։

Արդ. ինչպէս վանքը Ասորիներուն ձեռքը եղած ժամանակ հոն օտարներու ներկայութեան չէին հանդուրժած՝ նոյնպէս ալ երբ վանքը Հայոց ձեռք անցաւ, Հայք հոն դուրսէն ոչ մէկուն ներկայութիւնը հանդուրժեցին։ «Այն ամենայն հարանց անուանք որ գրեալ կան մինչեւ Թոդիկ՝ ամենեքեան Ասորիք էին եւ տունն այն Ասորի գրով եւ պաշտամամբ վարեալ էր մինչեւ Թոդիկ։ Եւ նա փոխեաց զամենայն կարգս եւ զԱսորաց ցեղսն բնաւ հալածական արար ի վանաց. Տես էջ 59. Յով. Եպ. Մամիկոնեան 1832 Վենետիկ: Այնպէս որ Է–Թ դարու մէջ հոն ոչ մէկ Ասորի կղեր կը գտնուէր։

Ուրեմն, քանի որ Զենոբ Գլակ Ասորի կղերին կալուածատիրական իրաւանց ի նպաստ գրած է, չենք հասկնար ի՞նչ կիմանայ Յարգելի Գ. Խալաթեան յայտարարելով թէ «Զենոբի պատմութիւնը Ս. Կարապետի
«վանքի Է—Թ դարի միաբաններից կազմուած է այդ
«վանքի կալուածների տիրապետութիւնը ապահովելու
«նոյն վանքի միաբանների յանուն Լուսաւորչի և Տըր-
«դատի և ահա ինչու Զենոբի պատմութիւնը անվաւեր
«և կեղծ է։ Տես էջ 63 Համ. ուսումնասիրութիւն. Զե-
«նոբ Գլակ 1893. Վիէննա։»

Ասո՞ր համար Զենոբի Պատմութիւնը անվաւեր եւ

կեղծ է, և եթէ այդ առարկութիւնը ջրուի՝ վաւերական և հարազա՞տ կ՚ըլլայ Զենոբի գրածը։ Անշուշտ յարգելի Գ. Խալաթեան ժամանակագրական խոշոր սխալ մը կ՚ընէ և չի նկատեր թէ Է—Թ դարու մէջ Ս. Կարապետի վանքէն Աստրի կղերը ի սպառ հալածուած էր։

Ո՞րն է եղեր ուրեմն այն Է—Թ դարու Հայ միաբանը որ ի նպաստ Աստրի կղերին վաւերաթուղթ խարդախէ. ո՞ր հայուն հոգը հատեր էր որ վանքին առջևի դռնէն դուրս վռնտուածը ետևի դռնէն ներս մտնէր։ Շատ ալ միամիտ ըլլալու ենք հաւատալու համար թէ չինծու փաստաթղթեր գտնելով Յով. Եպ. Մամիկոնեան Թարգմանեց որպէս զի իր դիրքին թշնամիները իրենց ձեռք զէնք մը աւելի ունենան իրեն դէմ կռուելու։

Կը ցաւինք հաստատելու թէ մեր համակրութենէն վաղ կորզուած ողբացեալ ուսուցչապետը մոռցած է դէպքերը և ժամանակները իրար համեմատել։ Յարգելի ուսուցչապետը կը մոռնայ թէ Յով. Եպ. Մամիկոնեան կապրէր Շինող Կաթողիկոսի օրով և կեղծիքի դիմելու պէտք չունէր դատապարտներ վանքին պահելու համար, ուզածին չափ ալ պիտի կրնար ժողուել Տարօնոյ գաւառէն։ Բայց ինչպէս ինք կարօտ չէր կեղծ վաւերաթղթեր կազմելու՝ նոյնպէս Զենոբն ալ անկարօտ կը կարծէր այդքան տղայական միջոցի դիմելու պահելու համար արդար իրաւունք մը։

Տարակոյս չը կայ որ Զենոբի և իր ընկերներուն ընչաքաղցութիւնը դատապարտելի է, բայց այդ ըսել չէ թէ մարդիկ օդով կը սնանին. այո, քանի որ Հայ եկեղեցւոյ կղերը ամսական չընդունիր՝ հարկաւ կալուածներու եկամուտով, պտուղներով, տուն օրհնէքով, և յոժարական նուէրներով կապրի։ Յով. Եպ. Մամիկոնեան շատ բնական կը գտնէր մանաւանդ որ Աստրի կղերը քրիստոնէութիւնն ի Հայս տարածելու համար Տարօն

հրաւիրող Մ. Դ. Լուսաւորիչ անոնց ապրուստն և ապագան կանխաւ ապահոված ըլլայ։

Միթէ Յարգելի Դ. Խալաթեան կը մոռնա՞յ որ «Թա-
«գաւորն Տրդատ յամենայն իշխանութեան իւրում առ
«հասարակ՝ գրեաց չորս չորս հողս յամենայն ագարակ
«տեղիս. իսկ յաւանսն եօթն եօթն երդոյ հող, ի ծառա-
«յութիւն սպասաւորութեան Եկեղեցւոյ Նուէր պաղոց
«տեառն մատուցանէր. Տես էջ 621 Ագաթանգեղոս 1835
«Վենետիկ։»

Ամէն պարագայի մէջ Յով. Եպ. Մամիկոնեան վըտանգ մը չը տեսաւ ի լոյս ընծայելու Զենոբի սաղ պատճէնները որ ոչ կալուածագրեր էին և ոչ ալ սեպհականութեան մուրհակներ այլ փոխանակուած նամակներու շարք մը որ վանքին հաստատման հետաքննական պարագաները կը հաստատէին պարզապէս. և եթէ երբէք սեպհականութեան նշոյլն գտնուէր անոնց մէջ՝ զանոնք ջնջելու առաջինը Յով. Եպ. Մամիկոնեան ինք պիտի ըլլար։

Յով. Եպ. Մամիկոնեան շատ աւելի մօտ կ՚ապրէր Ասորի հակաթոռ հայրապետներուն քան թէ մենք և եթէ այսօր մենք կը յիշենք՝ ինքն ալ անշուշտ գիտէր թէ «Բրքիշոյ ոմն Ասորի նկեալ վատթար ընկերակցօք, ածեալ ընդ ինքեան կանայս տիկաչուչս անժուժաբար և աւերորդօք և ՑԱՓՇՏԱԿՈՒԹԵԱՄԲ փոխճանելոցն վարէր. Տես էջ 557. Մ. Խորենացի 1881. Վենետիկ. և «Եկեալ Շմուէլ կալաւ զաթոռ եպիսկոպոսութեանն հետեւեալ վարուց Բրքիշոյի և առաւել եւս ագահութեան մասամբ։ Տես էջ 563. Մ. Խորենացի 1881. Վենետիկ.»

Ուրեմն եթէ Զենոբի գիրքը կեղծ վաւերաթուղթ մը ըլլար ի նպաստ Ասորոց գրուած՝ զայն խայտառակելու առաջինը եղած կ՚ըլլար Յով. Եպ. Մամիկոնեան և կամ լաւ եւս զայն կը ջնջէր ինչպէս ըսինք արդէն։ Բայց

տարակոյս չիկայ որ ինչպէս այսօր մեզ կը շահագրգռէ՝ այնպէս ալ երբ Յով. Եպ. Մամիկոնեան երբ առաջին անգամ զայն թարգմանեց, շատեր շահագրգռուեցան անով, մանաւանդ թէ այսօր կորսուած Գիրք Իշխանաց Մամիկոնենից մակագրեալ քսան և ութ պատճէն գիրքմըն ալ կար հետը:

Այդ գիրքը Տրդատէն մինչեւ Խոսրով անցած անիշխանութեան երկու տարիներու խժդժութեան պատմութիւնը կը պարունակէր: Անոր անակնկալ կերպով երեւան ելլելէն երբէք գո՛հ մնալու պատճառ չունեցան Մամիկոնեանք որ մինչեւ այն ատեն կը յոխորտային իբրեւ քրիստոնէութեան միակ ախոյեան: Ի՞նչ էր իրենց նախահայր, Մամգուն, եթէ ոչ Արբոկի տիրադրուժ ծառան, ի՞նչ էր իրենց նախարարութիւնը սկսող անձը, եթէ ոչ Սղուկի դաւաճան սպաննիչը, ո՞ւսկից կուգար իրենց ներկայ ճոխ կեանքը՝ եթէ ոչ անճեռուած նախարարութիւններու կողոպուտէն, ուստի այն գիրքը մէջտեղէն վերցուցին:

Այդ գիրքին մէջ կար նաեւ արձանագրուած ի միջի այլոց Ս. Գ. Լուսաւորչի կողմէ Ս. Կարապետի վանքին շնորհուած 12 դաստակներու անուանց ամբողջական ցանկը: Գիր Իշխանաց Մամիկոնենիցի անյայտացմամբ այդ դաստակերտներուն մէկ մասին Մամիկոնեաններու կողմէ գրաւումը իրականացաւ Զենոբի պատմութեան մէջէն անոնց հինգին անունը ջնջելով. (Տես էջ 37 Զենոբ 1832. Վենետիկ)

Բայց Զենոբ Ասորւոյն պատմութիւնը ալ աւելի կարեւոր խանգարման մը ենթարկուեցաւ: Զենոբ իր իսկ բացատրութեամբ (Տես էջ 18 Զենոբ 1832 Վենետիկ) աղաչեց զՍ. Գ. Լուսաւորիչ իր պատմութեան գիրքը սկսիլ Խոսրովէ. բայց Հայրապետը իր խնդիրքը մերժեց (Տես էջ 12 Զենոբ 1832 Վենետիկ) ուստի և այս պատ-

ճառաւ Զենոբ իմացուց թէ իր պատմութեանց մէջ զանց առած է զԽոսրով պարագայիւք։

Ուրեմն ժպիրհ գրիչ մըն է որ յանդգնեցաւ վերջէն ճիշդ այդ Խոսրովի պատմութիւնը զետեղել Զենոբի պատմութեան գլուխը (Տես էջ 20 Զենոբ 1832. Վենետիկ) ո՞վ չահ ունէր այս լրբենի ձեռնմխութեան մէջ որուն յայտնի նպատակն է առիթ մը ստեղծել այլ և այլ մէջբերումներով հաստատելու Ս. Գ. Լուսաւորչի առ Սեղբեստրոս Պապն երթալու պարագան և Հայ եկեղեցւոյն ընդունել տալու Հռոմայ Պապին գլխաւորութիւնը։

Արդ ո և է գրութիւն այն ատեն միայն կը խարդախուի երբոր անոր հարազատ նախատիպը գոյութիւն ունեցած է։ Զենոբի սկզբնագիր օրինակը չունինք այսօր և ծանօթ օրինակները իրարմէ գլխովին կը տարբերին ընթերցուածներու զանազանութեամբ, բայց եթէ անոնց վրայի ծեփը թափուի՝ տակէն երեւան կ'ելլէ հարազատ Զենոբ Ասորոյ պատմութիւնը։

Ասորոյ պատմութեան դրուագները՝ մեր նկատած խեղաթիւրումներէն վերջն ալ, այնքան համադրեալ ամբողջութիւն մը կը կազմեն, հոն յայտնուած գաղափարները այնքան լաւ զիրար կը բացատրեն և զիրար կը լըրացնեն որ Ասորի մենակեացին ի մի տրցակ ամփոփած վաւերաթղթերու և իր ինքնագիր քուրմերու կրկին պատերազմերու ներդաշնակ ընթացքը գիրքին վաւերականութեան ներքին ապացոյցը կը դարձնէ ինչպէս արդէն այս մասին պատեհութիւն ունեցանք խօսելու ներկայ ուսումնասիրութեան մէջ (Տես էջ 35—72)։

Գալով Ասորոյ պատմութեան վաւերականութեան արտաքին ապացոյցներուն՝ անոնք ալ ոչ նուազ վճռական են ի նպաստ Զենոբի։ Այս բանին համոզուելու համար կը բաւէ սահմանել՝ գրութեան նիւթի մու-

թիւնը կազմող՝ Գիսանէ և Դեմետր կուռքերու ինքնու-
թիւնը․

Հայ մատենագիրներու մէջ այդ երկու անուններուն չենք հանդիպիր, բնական է հարցնել թէ այդ անունները Զենոբի բնագրին մէջ կայի՞ն թէ չէ՞ զայն թարգմանողը իրեն ծանօթ համարժէք անուններու վերածեց զանոնք։ Նկատելով որ Տարօնի Վիշապ քաղաքը ապաստանող Հնդիկ քուրմերու ակնարկութիւն կ'ըլլայ Զենոբի մէջ՝ Եւրոպացի բանասէրներ այս դիւրըմբռնելի անունները կնճռոտեցին և անոնց հնդկական ծագում մը տալ ուզեցին։

«Գիսանէ և Դեմետր Հնդիկ անուններ չեն և ի զուր
«Աւգալեան, Lassen, Ritter — յաւագոյն հետազօտու-
«թեան արժանի ջանքով — մերձեցնում են զոցա Krisna
«և նորա եղբօր Habadar ի կամ Baleram ի․ առնուազը՝
«դորանից մէկը Հայ գէս, գիսան (գիսաւոր) և միւսը՝
«Յոյն Դեմետր բառերի հետ պէտք է յծորդութիւն ու-
«նենայ․ Տես էջ Համ․ Ուսումն․ Զենոբ Գլակի 1893․
«Վիէննա։»

«Եւրոպացիք մեր վարպետներն են, սակայն ան-
«ժխտելի է։ Մենք ոչ անոնց բազմակողմանի հմտու-
«թիւնը ունինք և ոչ ալ անոնց վերլուծական միտքը։
«Խորապէս համոզուած ենք սակայն թէ մեր աշխարհի
«վերաբերեալ աշխատութեանց մէջ Հայ մը աւելի դիւ-
«րաւ և խորապէս կը թափանցէ իրաց խորութիւնը քան
«Եւրոպացին։ Եւ ասոր ալ պատճառը Հայուն աւելի ու-
«շիմ և ընդունակ ըլլալը չէ՝ այլ տեղացի համազանգ և
«համատարր ըլլալն է որով շատ մը բաներ բնական են
«իրեն և գիտէ արդէն, մինչդեռ խեղճ Եւրոպացիին
«համար ամէն բան օտար է և նոր․ Տես էջ 105 Արտա-
«շիր Բաբական Կարնամակ 1907 Փարիզ։»

Գիսանէ և Դեմետր բառերուն կը համապատասխա-

նեն մեր ոսկեգիսակ հասկերու խորհրդանիշ Ամանորայ Նոր տարւոյ պտղոց Վանատուր դիք որուն տօնը կը կատարուէր Նաւասարդի ամսեան սկիզբը Տարօնի մէջ ։ Հայ հեթանոսութիւնը նոյնացումէ նոյնացում փոխանցուելով Զենոբի միջոցաւ իր վերջի փուլին կը յանգէր, ինչու որ Գիսանէ և Դեմեթրի խորաքանդակներու մէջ ալ կը հանդիպինք մեզ ծանօթ նախկին ԱՑՐ, ԿԻՆ և ՕԶԻՆ ։

Ճշմարիտ համեմատական Ուսումնասիրութեան ոգոյն հաւատարիմ մնալու համար՝ կը ցուցադրենք ըստ յունաց Déméter և ըստ Հռոմայ Cérès արտատպելով նմանութիւնը հնաւուրց խորաքանդակի մը Տես էջ 73 Les Dieux Antiques P. S. Malarmé 1880. Paris.



Cérès ou Déméter

Վերը գրուած խմբանկարին թելադրած գաղափարը կը լրացնենք դիցաբանական բառգիրքէ մը ծայրաքաղե-

յով Cérès կամ Déméter ի մասին տրուած սահմանը. և յետոյ զայն բաղդատելով Մ. Խորենացւոյ և Ագաթանգեղոսի այս մասին աւանդածներուն։

## CÉRÈS OU DÉMÉTER

Chez les Grec Déméter (Cérès) est la déésse du sol portant des fruits et préside l'agriculture. Elle était considérée cemme déésse de la fécondité en général et par analogie, comme déésse du mariage. C'est pourquoi elle était adorée particulièrement par les jeunes femmes, et ses prétresses faisaient connaître aux jeunes gens leurs devoirs conjugaux.

Son culte est lié à celui de Bacchus, d'Hercule, de Jupiter, de Minerve. Il était mystérieux et accompagné d'orgies. Ces temples se trouvaient souvent dans les forèts et près des fontaines. Parmi les autres traditions relatives à Déméter (Cérès), figure le serpent. Elle est représentée avec des épis dans la main, son char est tiré par des dragons. P. 99—102. Dictionnaire Mythologique Universel par le Dr. E. Jacobi 1854 Paris.

## ՎԱՆԱՏՈՒՐ ԴԻՔ

«Վաղարշ տօն աշխարհախումբ կարգեաց ի սկզբան ամի նորոյ ի մուտս Նաւասարդի* Վանատուրի դից. Տես էջ 312 Մ. Խորենացի 1881 Վենետիկ.» Եւ Երանելին Գրիգոր զյիշատակս բերելոց մարտիրոսաց ժամադրեաց տօն մեծ հռչակել, յառաջագոյն կործանեալ մնոտեացն պաշ-

(*) Նաւասարդ ամիսը կը սկսի ուխթը Օգոստոսին.

տաճար ի ժամանակի Դիցն Ամանորայ ամենաբեր Նորոց պտղոց տօնից հիւրընկալ դիցն Վանատրի զոր յառաջագոյն ի Տարօն ի նմին տեղւոջ իսկ պաշտէին՝ յուրախութիւն Նաւասարդի աւուրն։ Զի ժողովեալ ի յիշատակ մեծի երանելոյն Յովհաննու և Սուրբ Աթանագինի յայնմ աւուր խմբեցին ի նմին աւանի. Տես էջ 620 Ագաթ. 1835 Վենետիկ։

Այսպէս ուրեմն Դեմետրի մեհեանն ալ անտառի մէջ և աղբիւրի քով կը գտնուէր՝ ինչպէս Վանատուր դից մեհեանը կը գտնուէր Քարաքէոյ լերան գլխի անտառին մէջ Ինակնեան աղբիւրին մօտ. Դեմետր ալ Նոր տարւոյ պտղոց չաստուածն էր՝ ինչպէս Վանատուր էր Ամանորոյ Նորոյ տարւոյ պտղոց չաստուածը. Դեմետրի քով ալ կը տեսնուէր ոսկեգիսակ կին մը իր մազերու հիւսակով որակուած՝ ինչպէս Վանատուր դիք՝ որոյ քով կը տեսնուէր պղնձէ արձանն Գիսանէի իր ոսկեգիսակ հիւսակներով նշանաւոր։ Դեմետրի պաշտօնն ալ կը կատարուէր պղծութիւններով՝ ինչպէս Վանատրի դից պաշտօնը որուն համար Քարքէոյ գլուխը գետնափոր տուներ կային։ Դեմետրի մօտ ալ կը տեսնուէր վիշապը՝ ինչպէս Վանատուր դից մօտ։ Դեմետրի պաշտօնն ալ առընչութիւն ունէր Հերակղէսի և Բագոսի հետ՝ ինչպէս՝ Վանատուր դից պաշտօնը առընչութիւն ունէր Վահագնի, Անահտայ, Աստղկան և Հերակղէսի հետ։

Ուրեմն Զենոբի Թարգմանիչին յարմարագրած բառը կէտ առ կէտ կը զուգադիպի Ս. Գ. Լուսաւորչի կործանած կուռքերու նկարագրին։ Այս Ասորոց պատմութեան վաւերականութեան արտաքին ապացոյցներու շարքին մէջ կրնանք դնել ժամանակի հաշիւը և իր խօսքերը առնել հակակշռի տակ տեսնելու համար թէ անոնք կրնա՞ն տոկալ քննադատութեան։ Հոս ալ համեմատական ուսումնասիրութեան արդիւնքը նպաստաւոր է Ասորի

վանահօր և իր որոշած ժամանակները այլ հեղինակներու վկայութեամբ կը ճշդուին։

Զենոբ երկրորդ քուրմերու պատերազմի նկարագրութիւնը ընելու առթիւ պատահմամբ մեզ կիմացնէ թէ «Իբրև եկաք ի տեղին Իննակնեան Թագաւորաւն հանդերձ, խնդիր արարք Անոտնի և Կրօնիդեայ։ Իսկ պաշտօնեայքն ասեն. այս ամ մի է, սակաւ ինչ պակաս, «մեք զնոսա չեմք տեսեալ։ Տես էջ 41 Զենոբ 1832 Վենետիկ։» Ուրեմն քուրմերու առաջին պատերազմէն ի վեր գրեթէ տարի մը անցած էր երբ երկրորդ անգամ Ս. Գ. Լուսաւորիչ Ս. Կարապետի վանքը եկաւ Զենոբի խնդրանօք։ Անկից առաջ մինչև իր խոր վիրապէն ելլելը անշուշտ անցեր էին քանի մը ամիսներ։ Ագաթանգեղոսէ կ'իմանանք թէ տասներեք տարի հոն մնաց (Տես էջ 99 Ագաթանգեղոս 1835 Վենետիկ) Խորվիրապ նետուելէն առաջ անցած մի քանի ամիսներ որ մեզ կը հասցնեն Տրդատի թագաւորութեան սկիզբը եթէ հաշուենք՝ կունենանք գրեթէ 15 տարի։

Արդ. Տրդատ ի Հայս գալէն ի վեր Հայք դադրեցուցեր էին Հիւսիսի Թագաւորին տուրք տալը և երկրորդ պատերազմի ժամանակ «Թագաւորն հիւսիսոյ առեալ զզօրսն իւր, գնաց ի Հաշտենից սափարակն. և առաքեաց թուղթ առ Տրդատ՝ թէ եկ ի վաղիւն տացուք պատերազմ և եղիցի օր յաւիտենական ի մէջ երկոցունցս. կամ տացես հարկս հնգետասան տարւոյ. ապա թէ ոչ քանդեմ զերկիրդ քո սրով և գերութեամբ և մահուամբ։ (Տես էջ 46 Զենոբ 1832. Վենետիկ)։

Դարձեալ Աքսորի վանահայրը իր քուրմերու առաջի պատերազմի նկարագրութեան ատեն ըսել կուտայ «Իսկ Դեմետր, որդի Արձանին, ասէ. լուարուք մեզ իշխանքդ Հայոց. այս քառասուն ամք են զի ծառայեմք մեծի աստուծոյն Գիսանեայ և Դեմետրեայ և գիտեմք զզօրութիւն նոցա։ Տես էջ 27 Զենոբ 1832. Վենետիկ։

Արդ Խոսրովի մահուանէն վերջ «Արտաշիր գեղեց-
«կապէս յարդարէր զաշխարհս Հայոց ի կարգ առաջին և
«հաստատէր զմեհեանս պաշտամունս և կալաւ զաշխարհս
«մեր ամս 26 և յետ նորա որդի նորա Շապուհ ամս
«1. (Տես Մ. Խորենացի 1881 Վենետիկ.» «Եւ Ս. Գրի-
«գոր եղեւ ի վիրապին ամս 13. Տես էջ 99 Ագաթան-
«գեղոս 1835 Վենետիկ:» Ուրեմն հոս ալ մեհենից պաշ-
տամունքը վերահաստատուելէն մինչեւ Ս. Գ. Լուսա-
ւորչի Խորվիրապէն ելլելը կամ քուրմերու առաջին պա-
տերազմը՝ անցած կ'ըլլան 40 տարի և Թուականներու
հաշիւը անգամ մը եւս կը ճշդուի:

Հիմա քննենք նաև Կուռքերուն պաշտօնեաները,
գիտենք որ Վահունիք Պարսիկներն էին և Հնդիկ քուր-
մերու Տարօն ապաստանելէն վերջ՝ Վաղարշի օրով, ա-
նոնց անշուշտ գործակցեցան: Ինչ որ ստոյգ է սակայն
սա իրողութիւնն է որ Սասանեան Արտաշիր քաջալերեց
քուրմերը գործակցաբար արծարծելու Հայոց մէջ կռա-
պաշտութիւն և Ս. Գրիգոր Լուսաւորիչ ալ հաստատեց
մեր երկրին մէջ Պարսիկ և Հնդիկ քուրմերու ներկայու-
թիւնը, այսպէս:

«Եւ այնչափ որջացեալ էր ի միում վայրի, մինչեւ
«ի Սրբոյ Հոգւոյն յայտնեալ՝ եթէ նա իսկ է դրունք
«դժոխոց, զոր Իննակնեան կոչեն անդւոյն Հնդիկք և
«Պարսիկք: Ուր յոյժ պանծալին բնակիչք երկրին վասն
«Գիսանեայ կռոցն և նորին եղբօրն Դեմետրեայ: Տես
«էջ 8. Զենոբ. Թուղթ Ս. Գ. Լ. 1832 Վենետիկ:

Իննակնեան բժշկութեան աղբիւրին մօտ իրենց կա-
խարդութեամբ հռչակ գտած այս տարօրինակ քուրմե-
րու ներկայութեան ծանօթ էին նոյն իսկ այն ատեն ա-
րեւմուտքի մէջ, և «Կոստանդիանոս յղեաց առ Տրդատ
«առաքել նմա դիւթս ի Հնդկաց և ի պարսից, սակայն
«և այնք ոչ հասին նմա յօգուտ: Զոր և քուրմք ի դի-

«ւայ խրատուէ են. Տես էջ 350 Մ. Խորենացի 1881 «Վենետիկ.»

Այսպէս Դիսանէ և Դեմետր կուոց խնկութիւնը, անոնց կործանման ժամանակը, անոնց պաշտօնեաներուն ինքնութիւնը սահմանելէ վերջ, անցնինք այդ դիւաց պատկերին կործանման պարագաներուն որ այս զաւեշտախառն եղերերգութեան վերջին արարուածը կը կազմեն։ Որովհետև կռապաշտ կայսր մը՝ Դիոկղետիանոս և կռապաշտ հռոմէական լէգէոններ կը բռնադատեն կռապաշտ հայ նախարարները և կռապաշտ քուրմերը որ իրենց կամքին հակառակ քրիստոնեայ ըլլան, մինչդեռ իրենք կը շարունակեն կռապաշտ մնալ։

Այս՛ և կատարուած այս քաղաքական խեղկատակութիւնն է որ Զենոբի գրութեան պատմական հանգամանք և վաւերականութեան անջնջելի դրոշմ կուտայ։ Հոն սուտ ու փուտ հրաշքներու խօսք չըլլար՝ ինչպէս այլ մատենագիրներու նոյն դիպաց պատմութեան մէջ։ Զենոբ անվերապահ ճշմարտութեան բերանն է. բռնութիւնը երբեք չի հաշտուիր բարիքի գաղափարին հետ և կախաղան, սրածութիւն, անդամներու ծայրատում, հրկիզում երբեք մարդիկ կենդանի Աստուծոյ դարձնելու համար սիրոյ Աւետարանէն թելադրուած միջոցներ չեն։

Տասնեւչորս դարուան փորձառութենէն ետքը Դիոկղետիանոս և իր խորհրդատուները հասկցեր էին թէ մինչև չի քայքայեն Հայաստանի ինքնօրինութիւնը երաշխաւորող նախարարաց և քուրմերու դասակարգի դաշնակցութիւնը՝ երբեք պիտի չկրնան նուաճել այս լեռնաբնակ ցեղերու համախմբման կազմակերպեալ ընդդիմութիւնը։

Իբրև թագաւորական հարստութեան վերջին շառաւիղ և վերջին օրինաւոր ժառանգ Արշակունեաց թափուր մնացած գահուն՝ Հռովմայեցիք շահագործեցին

Տրդատի անունը ընկճելու համար հայ ազգը: Անոր ամէն արարքը Հռովմայեցի պաշտօնեաներու կողմանէ լրտեսուած և հակակշռի տակ առնուած էր, և այս մարդը որ իր խելքէն աւելի իր բիրտ ուժին վստահած անհեթեթ հսկայ մըն էր՝ հազիւ խրտուիլակի մը դեր կը կատարէր այս անցուդարձի ժամանակ:

Յունաց զօրքը Հայաստանի լայնքն ու երկայնքը կը չափէին և հռոմէական լէգէոնները յաղթական պտոյտ կը կատարէին իր կառավարութեան սահմաններուն մէջ և իր սուրհանդակները զինք անոնց հետ հաղորդակցութեան մէջ չէին դներ, և լուր չունէր անցած դարձածէն, ինչու որ ինք ստորադաս էր Հռոմէական կայսրութեան ներկայացուցչին և անկէ հազիւ չէր կրնար պահանջել իր կատարած ռազմական շարժումներու մասին:

«Եւ եկեալ յԱշտից տեղեացն Թագաւորն ընդ լեռ-
«նակողմն գնայր: Քանզի ոմանք տեսեալ զզօրսն Յու-
«նաց համբաւեցին թէ իշխանքն Հիւսիսոյ Թագաւորին
«ծանր զօրօք գան ի վերայ. քանզի Տրդատ բազում
«գաւառս և քաղաքս էր զնոցա քանդեալ: Իբր տեղե-
«կացաւ թէ Յունաց զօրքն էին՝ դարձաւ ի գաւառն
«Հաշտեանից. էջ 41 Զենոբ 1832 Վենետիկ»:

Անոնք որ գիտեն Դիոկղետիանոսի օրով Հռոմէական պետութեան ստացած երեւոյթը՝ կ՚ընդունին թէ այս հսկայ կայսրութիւնը կանգուն կը մնար իր զինուորական կազմակերպութեան շնորհիւ: Արդէն Հռովմայեցիութիւնը ազգութիւն չէր, կեդրոնական իշխանութիւնը կը կռթնէր իր երկաթեայ լեգէոններուն վրայ որոնց զօրքերու մէջտեղ խիստ կարգապահութենէ և իրենց պետերուն կոյր հնազանդութենէ ուրիշ կապ չկար:

Պէտք էր բանակին շուրջ խրամ փորել, ցցապատնէշ կանգնել, վրանները համաչափ գիծերու վրայ կազմել, հրամանատարին թիկնապահները որոշել, դէտեր

նշանակել, բանակին մէջ փողոց թողուլ, դռնապան սահմանել, աջ եւ ահեակ թեւերը հաստատել, ճակատ կազմել և մեհեանին անշէջ հուրը արծարծել։ Ասոնց ամէնքը կարելի է տեսնել Mary Lafont‑է արտատպած մեր հետեւեալ պատկերին մէջ։



ՀՌՈՎՄԷԱԿԱՆ ԲԱՆԱԿ

Յունաց զօրքը անմիջական կերպով Հաշտենից դարա‑տափը հասնելէն վերջը բանակին առած վիճակը հետեւեալն էր։ «Եւ ի վաղիւն սկսան ռազմ գործել և ճակատ յօրինել, «և փողոցս թողուլ պատերազմին, դրունս երկու և դռնա‑«պանս տեղեացն զԲագրատունեաց իշխանն կացուցա‑«նէր։ Իսկ զաջ թեւն զօրուն տայր ի ձեռն իշխանին «Սիւնեաց և զահեակ թեւն ի ձեռն իշխանին Անգեղ«տանն։ Իսկ զգահերէց իշխանին կացոյց թիկնապահս «իւր և այսպէս յօրինեցան ճակատքն. Տես էջ 46. Զե‑նոբ 1832 Վենետիկ.»

Թէ բանակին մէջ մեհեան մը կար՝ յայտնի է հոն
Մեհնունեաց գունդին ներկայութեամբ. այնպէս։ «Բայց
«զօրապետն հիւսիսային ի գիշերին արծածեալ զմնացեալ
«իշխանն գնալ ի վերայ արքային և արարին որպէս
«խորհեցանն։ Ցանկարծակի անապարեալ ի վերայ խորա-
«նացն արքային՝ կոտեցին զԹեւս ի միմեանց և հասեալ
«ի վերայ արքային խուռն մի ըմբռնեալ էին զարքայն՝ եթէ
«ոչ էր գունդ մի խուճապեալ ՄԵՀՆՈՒՆԵԱՑ արիք,
«մինչև եւ արքայ ի դրապակս զօրուն հիւսիսոյ. Տես
«էջ 48. Ջենոր 1832 Վենետիկ։»

Եւ յաղթութենէն վերջը՝ ըստ Հռոմէական սովո-
րութեան զոհեր մատուցին «Եւ պատարագս ողջակիզաց
«մատուցանէին սպիտակ զուարակաց և նոխազաց և բա-
«զում զառանց. Տես էջ 48. Ջենոր 1832. Վենետիկ։»

Ահա այս սպիտակ զուարակներ և նոխազներ ողջա-
կէզ մատուցանող զօրքերն էին որ քիչ մնաց Կեսարիա
քաղաքը գիշերանց կրակի պիտի տային և Ղեւոնդ Հայ-
րապետը պիտի սպաննէին Ս. Կարապետի մասունքը տալ
յանձն չառնելուն համար։ «Որ թէպէտ բազում անգամ
«խնդրեաց Ս. Գրիգոր զնշխարս Ս. Կարապետին այլ
«Ղեւոնդ Կեսարու Հայրապետն ոչ էառ յանձն տալ։ Եւ
«ի վաղիւ բազում պատերազմունս սկսաւ լինել և առ-
«եալ բռնութեամբ ելին ի քաղաքէն, մինչ զի խորհուրդ
«առեալ իշխանն Անգեղ տունն հարկանել զքաղաքն
«ի գիշերի հրով։ Տես էջ 24. Ջենոր 1832.»

Ի՞նչ տեսակ փաստերով համոզուած էին որ ինչ
քրիստոնէական վարուց օրինակ տային։ Նոյն իսկ այս
հեթանոս բազմութիւնը քրիստոնէական հաւատոյ հրաւի-
րողներն ալ շատ չէին տարբերէր նորադարձներէն իրենց
գձուձ կիրքերով՝ այսինքն շահախնդրութեամբն և նա-
խանձով։

Նախանձորդներ այս Ասորւոց պատմութեան Բեկ-

տորի և Անաստասի դրկուիլը յաջողեցան առնն մը ար-
գիլել մինչև որ Ցոյն կղերին դիւրազգած արժանապատու-
ութեան գոհացում տրուեցաւ. Ագաթանգեղոսի պատմու-
թեան գրի առնուելովը։ «Եւ թէպէտ ոմանք արգելուլ
«հրամայեցին չը գրել պատասխանի վասն նոցա գալոյ,
«սակայն Ս. Գրիգոր ոչ՝ այնպիսի. ածեալ զմտաւ, այլ
«աննախանձ պատասխանիւն սալ։ Մի ինչ աղարտէք
«զսակաւ պատմութիւնս կամ Լիէ Ագաթանգեղոս զայդ
«ոչ յիշէ զի Զենոբ յառաջագոյն գրեաց քան զնա։ Տես
«էջ 19 Զենոբ 1832 Վենետիկ։»

Մեր նկարագրած պատմական վայրերուն մէջ գոր-
ծող երեք խումբերէ առաջիններուն, Ասորոց, պատմու-
թիւնը առա փոքր ի շատէ ճշդեցինք։ Հիմա կը մնայ
միւս դերակատարներուն, Մամիկոնեանց և Արշակուն-
եաց մասին ալ խօսիլ և անոնց ալ դիրքը սահմանել։



## ԳԻՐ

## ԻՇԽԱՆԱՑ ՄԱՄԻԿՈՆԷՆԻՑ



*Ահա հնաքննական գիրք մը որ այս օր մէջտեղէն անյայտ եղած է. սակայն անոր կորուստը ափսոսալու հարկ չը կայ. բանասիրութիւնը ազգային հեղինակներէ քաղելով կրնայ վերակազմել Մամիկոնեան Իշխաններու պատմութեան սարսռազդեցիկ էջերը և սահմանել անոր դիտումնաւոր անհետացման սոսկ պատճառները:*

*Պատմութիւնը կը մոռնայ արձանագրել խաղաղութեան դարեր բայց անխուսափելիօրէն կը յիշատակէ ջարդ, աւերում, և թալան. անոնք արիւնով կը գրուին, և անջինջ կը մնան: Գազաններն ու նոյն իսկ ստորին արարածներ ազատ չեն այս օրէնքէն: Առիւծը՝ իր անցեալ նախնիներուն ապացոյց, իր որջին մօտ կը ցրցնէ իր յօշոտած որսերուն կմախքը և խղունջը իր ետին կը ձգէ իր լորձունքի կեանքին կեղծ փայլը:*

*Ընթերցողը ինք պիտի որոշէ թէ Խորենացւոյ, Զենոբայ, Փ. Բուզանդացւոյ Եղիշէի, Ղ. Փարպեցւոյ, Յով. Եպ. Մամիկոնեանի հատուածներով մեր երեւան հանած հետքերը գիշատիչ առիւծի մը ամեհի ճիրաններուն հետքե՞րն են, թէ չէ գետնաքարշ խղունջի մը զզուելի լորձունքին կեղծ փայլը. ամէն պարագայի մէջ Մամիկոնեանք մեր երկրէն իրենց անցքին հետքը իրենց ետին թողած են աներկբայապէս:*

*Բայց այսօրուան զայթակղութիւնը երբէք պիտի չը հաւասարի այն զայթակղութեան որ յառաջ եկաւ երբ*

Յովհ. Եպ. Մամիկոնեան՝ գտնելով Տրդատէն մինչեւ Խօսրով, Մամիկոնեան տան մէջ պատահածներուն յիշատակութիւնը, անկէ թարգմանեց քսան և ութ պատճէն։ Անոր պարունակութիւնը Ս. Կարապետի վանքին թանձր պատերէն դուրս արձագանք գտաւ և վճռական հարուած մը տուաւ Մամիկոնեան նախարարներու հաւակնութիւններուն։

Իրեն տիրոջ Արքակի կեանքին դէմ դաւաճանող վասալ մը ի Հայս ապստամբէր, ինքը և իր յաջորդները Հայ քաջարի նախարարներու գերդաստաններն անճիտեր, Արշակունի անչափահաս իշխաններուն խնամակալ կարգուեր և վերջապէս Արշակունեաց հարստութիւնը կործաներ էին թափուր մնացած գահուն վրայ բարձրանալու յայտնի դիտաւորութեամբ։ Բայց այս իրենց հաւակնութեան մէջ տակաւին հզօր նախանձորդներ և հայրենաւանդ իրաւունքներու կռթնող մրցակիցներ ունէին։

Արդարև Մամիկոնեաններու մեքենայութիւններուն շնորհիւ «Ազգն Սասանայ Պարսկի սկիզբն արարեալ յա-
«մացն Արշակայ արքայի որդւոյն Տիրանայ կուէր մին-
«չեւ յամն վեցերորդ Արտաշիսի արքայի Հայոց։ Եւ իբ-
«րեւ զնա եւս մերժեաց ի թագաւորութենէն ի նախա-
«րարսն Հայոց անկանէր թագաւորութիւնն։ Տես էջ 11
«Եղիշէ 1864 Վենետիկ»։

Եւ «Անօրէնն Միհրներսեհ խոստացաւ Վասակայ
«Սիւնւոյ տալ իշխանութիւն աւելի քան զոր ունէրն և
«հայեցոյց զնա ի կողմն մտաց իւր թէ անկ իցէ նմա
«հասանել մինչև ի թագաւորական վիճակն։ Եւ յանձն
«էառ զամենայն ինչ ծերն դառնացեալ երթալ զկնի կա-
«մաց նորա։ Տես էջ 157 Եղիշէ 1864 Վենետիկ»։

Արդ թագաւորական գահուն թեկնածու այլ իշխաններ ուզեցին ճշդել և հասկնալ թէ ինչ կ'իմանար Եղիշէ՝ Մամիկոնեանց ջատագով կարծուողը իր ՎԱՐԴԱ-

ՆԱՅ ԵՒ ՀԱՅՈՑ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ մակագրեալ երկասիրութիւնով։ Մամիկոնեանց չահատակութեան ներբողեանն էր թէ Եկեղեցւոյն նահատակութեան պատմութիւնը և ըմբռնեցին որ յաւէտ կրօնական դասակարգին շահերն հոն պաշտպանուած էին։

Մանաւանդ ուշադրութեամբ կարդացողները նշմարեցին այն թագուն քննադատութիւնը որ Հայաստանի մէջ գերակշիռ դեր կատարողներու հասցէին ուղղուած էր հոն, որովհետեւ՝ ինչպէս միշտ կը պատահի, կուսակից կարծուածներուն գրիչը աւելի պատեհութիւն ունի գրաքննութենէ խոյս տալու եթէ ճարտարօրէն գրի առնուած է իր գիրը։

Արդ, նոյն իսկ այսօր կարդացողներ կը ստուգեն որ Եղիշէ իր նրբամիտ եկեղեցականի սրտի զայրոյթը ճարտարութեամբ հիւսեց ոճի չքեղ դարձուածքներու հետ և իր դառն յանդիմանութիւնները յաջողեցաւ վրիպեցնել իրեն հրամայող բիրտ զինուորականին ուշադրութենէն և իրեն գրել ուզածը գրեց՝ յաջողելով միանգամայն անպատիժ մնալ։

Այո՛, Եղիշէի գրքին մակադիրը կը հաստատէ թէ Դաւիթ էր ՆՐԷՑՆ տանն իշխանաց Մամիկոնենից և ՔԱՋ ստորոգելին, տարակոյս չի թողուր անոր աշխարհական մը ըլլալուն։ Իր կարճ ընծայականին մէջ վեց անգամ միղրածորան հեղինակը կը վերադառնայ իր սըրտին կսկիծ տուող հրաման բառին (Տես էջ 5, տող 3. «էջ 6, տող 22. էջ 7, տող 6. էջ 7, տող 13, էջ 8, «տող 21. Եղիշէ 1864 Վենետիկ.») Պատուէր բառէն զատ որ անոճ և անոպայ կը գտնէր։

Եղիշէի գրածը միթէ երգիծանք մը չէ՞, թող կարդան մեր ընթերցողները հետեւեալ տողերը և տեսնեն թէ ինչ անխնայ գրիչի հարուածներ կը տեղացնէ ան։ «Բանն վասն որոյ պատուիրեցեր՝ արարի. ո՛վ քաջ. «Տես էջ՝ 5. Եղիշէ. 1864. Վենետիկ.»

«Այլ դու, ո՛վ մեծ ի գիտութեանն Աստուծոյ, առ «ի՞նչ արդեօք ՀՐԱՄԱՅԵՍՑԵՍ, քան եթէ ՀՐԱՄԱՅԻ- «ՑԻՍ, յաւագունացն։ Որպէս երեւի ԻՆՁ և ՔԵԶ և «այնոցիկ որ գեպերեցին յիմաստութիւն՝ երկնաւոր սի- «րոյ է նշանակս այս և ոչ ԵՐԿՐԱՒՈՐ ՓԱՌԱՍԻՐՈՒ- «ԹԵԱՆ. Տես էջ 6. Եղիշէ 1864. Վենետիկ.»

Այսքան ճապուկ դարձուածքներու վարժ գրիչ մը չը քաշուեցաւ Մամիկոնեանց շահախնդիր հաւատուրացու- թիւնը իրենց երեսին զարնելու նոյն իսկ իրենց բերնին մէջ խօսք դնելով՝ աշխարհականին ամբարտաւան գո- ռոզութիւնը եկեղեցականին խոնարհամիտ նպատակին իջեցնելով, այսպէս։

«Մանաւանդ, անմտաց է ինձ յիշելով զիմ և զո- «մանց ի ձէնջ ի ժամանակին, զի զանօրէն իշխանէն խա- «բեցաք, պատրեցաք իբրև զմանուկ մի աղայ ԱՆԳԻՏԱՆ «և ի վերին երեսան զկամս նորա ԱՄՊԱՐՇՏՈՒԹԵԱՆՆ «ԿԱՏԱՐԵՑԱՔ։ Տես. էջ 177. Եղիշէ 1864. Վենետիկ։»

Ղ. Փարպեցի, որ նուազ խոհեմ և առաւել անվե- րապահ կղերական մըն էր, յանդգնեցաւ այնպիսի ակ- նարկութիւններ ընել Մամիկոնեաններու աղտոտ անցեա- լին որ չնորհազուրկ եղաւ և իր երկրին տիրապետող գերդաստանին պաշտպանութիւնը կորսնցուց։ Բայց նոյն ատեն յիշեց Փ. Բուզանդացին որուն էջերէն պիտի կրնանք լուսաբանել Գիր Իշխանաց Մամիկոնէնիցի մութը մնացած էջերը։

«Պէտք էին կալ ի հնազանդութիւն մնիկ իւրեանց «Արշակունի Թագաւորացն քան ծառայել այլոց օտար «Թագաւորաց ի կորուստ աշխարհիս ի քահանէն և ի պա- «ռականէն։ Ինձ պատմագիր կոչեցեալ Փ. Բուզանդացի «քանզ ինչ կարգելոց ի նմանէ ի տեղի ուրեք ոմանք «կարծեցին ոչ յարմարք և դիպողք։ Տես էջ 12 Ղ. «Փարպեցի 1793. Վենետիկ։

*Արդ այս կատարուած յայտնութիւնները այնքան վրդովիչ էին որ Հայ նախարարներու անճիտումէն ազատած գերդաստան մը տարակոյս ունեցաւ Մամիկոնեաններու մասին, ուզեց Հայ աւագանւոյն մէջ անոնց վիճակած գիրքը որոշել և ուզեց գիտնալ թէ անոնք ուստի՞ց էին, ե՞րբ ի Հայս եկած էին, ի՞նչ իրաւունք ունէին թեկնածութեան, ևն, ևն։*

*Այս յանձնարարութիւնը կատարել շատ վտանգաւոր ձեռնարկ մըն էր թէ յանձնարարողին թէ յանձնառուին քանի որ Մամիկոնեաններու անցեալ աղտոտութիւնները պիտի մերկացուէին. ուստի Մ. Խորենացի վախին ի վախը հազիւ քանի մը խօսք ընել համարձակեցաւ և զգուշացուց իր պաշտպանը զՍահակ Բագրատունի՝ անանկ խնդրանք մը անոր երիտասարդական անփորձութեան վերագրելով։*

*«Եւ որ ինչ կրտսերագոյն ազգք... զԾԵՆԱՑ և «զարմից յեկաց. ոչ անուամբ պատմեցուք... թէև «բազում անգամ ի մէնջ աղերսիցես։ Եւ զքեզ որպէս «բազում անգամ և այժմ աղաչեմ մի յաւելորդան հար-«կաւորել զմեզ... զնմանագոյնս ՈՐՊԷՍ ԻՆՁ ԵՒ ՔԵԶ «ԳՈՐԾԷ ՎՏԱՆԳ. Տես էջ* 305-307. *Մ. Խորենացի.* «1881 *Վենետիկ։»*

*Ուրեմն որչափ որ ալ Գիր Իշխանաց Մամիկոնէնիցը գիտումնաւոր անհետացման մը ենթարկուեցաւ բայց դարձեալ բաւական ակնարկութիւններ մնացին մեր ազգային մատենագրաց մէջ այս տարամուտ ցեղին նկատմամբ այնպէս որ մենք կրնանք վերակազմել անոնց ոչ նախանձելի անցեալը՝ պատմութեան հատուածները իրար կցելով ըստ կարելւոյն ժամանակագրական կարգով։*

*Արդ նախ սահմանենք անիշխանութեան ժամանակամիջոցը որ կը ձգուի Տրդատէն ի Խոսրով Կոտակ և*

այս գիւրին է «Քանզի ոչ է պատմութիւն ճշմարիտ ա-
«ռանց ժամանակագրութեան, վասն որոյ մանրախուզիւ
«քննեալ, գտաք զԹագաւորելն Տրդատայ յերրորդ ամի
«Դիոկղետիանոսի։ Տես էջ 345 Մ. Խորենացի 1881.
«Վենետիկ.» «Այլ պատմութիւն Տրդատայ ճշմարիտ է.
«քանզի արբուցեալ նմա դեղ մահու՝ զրկեցին ի լուսոյ
«շնորհաց ճառագայթից նորա որ և թագաւորեաց ամս
«յիսուն և վեց. Տես էջ 387. Մ. Խորենացի 1881 Վե-
«նետիկ։»

Դիոկղետիանոս կայսր էր (284-305) թուականին, ուստի ըստ քերթողահօր Տրդատ պէտք է թագաւորած ըլլայ Դիոկղետիանոսի կայսրութեան երրորդ տարիէն մինչեւ յիսուն և վեց տարի անկից անդին կամ (287-343) թուականը։ Միւս կողմէն քերթողահայրը կը հաստատէ թէ «Յերկրորդ ամի Որմզդի Պարսից արքայի և յութե-
«րորդ ամի ինքնակալութեան Կոստանդեայ, յոգնակա-
«նութենէ նորա թագաւորեաց Խոսրով. Տես էջ 411 Մ.
«Խորենացի 1881 Վենետիկ»։ Պէտք կ՚ըլլայ դիտել Կոստանդիոսի գահակալութեան թուականին՝ Խոսրով Կոտակի թագաւորութեան սկիզբը ճշդելու համար։

Կոստանդիոս, որդի մեծին Կոստանդիանոսի, կայսր էր 337-361) թուականը, այս հաշիւէն կը տեսնուի թէ Խոսրով Կոտակ գահ բարձրացաւ 337+8 = 345 թուին
մինչ ըստ Խորենացւոյ՝ Տրդատ վախճանեցաւ 343 »
որով անիշխանութեան միջոցը կ՚ըլլայ տարի 2

Այս անտերունջութեան երկու տարիներուն մէջ Մամիկոնեանք ինչ ըրած էին որ այնքան խնամով ջանացին անոր յիշատակը բնաջինջ ընել։ Յաւէտ ողբալի երկպառակութիւն մը պատճառած էին որուն նուազ մէկ նկարագրութիւնը կուտայ Մ. Խորենացի։

Արդարեւ «Ի ժամանակի անիշխանութեան և ան-

«խաղաղութեան՝ ոչ լինել թագաւոր և առնն բառ հա-
«ճոյից ինքեան գնալ և ի մերումս էր տեսանել աշխար-
«հիս։ Քանզի ի վախճանել երանելւոյն Տրդատայ՝ մեծ
«իշխանն Բակուր, որ Բդեշխն Աղձնեաց կոչիւր, տես-
«եալ զՍանատրուկ թագաւորեալ ի Փայտակարան, զնոյն
«խորհեցաւ և ինքն և ճեղքեալ ի միաբանութենէ Հայոց՝
«ձեռն եա յՈրմիզդ արքայ Պարսից։ Տես էջ 405 Մ.
«Խորենացի 1881 Վենետիկ։

Հոս Զենոբի հարազատութիւնը և իր գրքին պատմական ըլլալը անգամ մը եւս երեւան կ'ելլէ որովհետեւ
«Տրդատ հրամայեաց ունել զիշխանն Աղձնեաց և ածեալ
«առաջի, կամէր ծայրատել զոտս և զձեռս նորա բայց
«ի պատւոյն մերժեալ վարեաց ի գաւառէն Հայոց. Տես
«էջ 49. Զենոբ 1832. Վենետիկ»։

Հայ Նախարարները մինչեւ ե՞րբ կրնային տոկալ անքաղաքագէտ յիմարի մը անիմաստ խժդժութիւններուն որ վերջ ի վերջոյ՝ մոռնալով իր դիրքին իր վրայ դրած պարտականութիւնները, դասալիք եղաւ և «արագ ետաս
«ի տեղի ճգնաւորին և եղեւ ծակամուտ լեռնակեցիկ և
«Նախարարքն կոչեցին զնա ունել զթագաւորութիւնն,
«իսկ ի չհաւանելն՝ տան նմա արբուցին որպէս անդ ու-
«րեմն ի հնումն Աթենացիքն Սոկրատայ զմոլախինդն,
«տես էջ 384. Մ. Խորենացի 1881 Վենետիկ.» «Պատ-
«մութիւնն յաղագս Տրդատայ ճշմարիտ է քանզի արբու-
«ցին նմա դեղ մահու. Տես էջ 387. Մ. Խորենացի 1881
Վենետիկ։»

Զենոբի պատմութիւնը ուրեմն իր վաւերականութեան կնիքը կը ստանայ Տրդատին քուրմերու պատերազմէն ետքը չարունակած ազգաւէր ընթացքէն և եղերական վախճանին պատմութեամբ։ Այո՛, այս անքաղաքագէտ հսկան մոռնալով իր դիրքին իր վրայ դրած պարտականութիւնները՝ վատութեամբ քաշուեցաւ Ման-

եայ այրը։ Նոյն օրէն երկիրը մասնուեցաւ ձեռքը տիրադրուած փախստականի մը որուն Մամգուն գռեհիկ անունը գոնէ անգամ մը չի ներկայանար Ագաթանգեղոսի գրիչին տակ և որոյ մասին արհամարհոտ լռութիւն մը կը պահէ նոյն իսկ Զենոբ։

Բայց այս ցեղն ու իր աւանդութիւնները, Ճենացիք և իրենց կարգն ու սարքը մեզ արդեօք բոլորովին անծանօ՞թ են. չէ՞ մի որ իրենց ազգային դրօշը և զինանշանը, զորս ի ստորեւ մեր ընթերցողներուն կը ներկայացնենք, մեզ արդէն զբաղեցուցին, հոն ալ կը հանդիպինք մեզ ծանօթ վիշապին։



ՃԵՆԱՑ ԴՐՕՇԸ



ՃԵՆԱՑ ԶԻՆԱՆՇԱՆԸ

Անոնք շատ մօտ յարաբերութիւն ունէին մեր երկրին հետ. որքան յանդուգն ալ սեպուի այս յայտարարութիւնը սակայն իր հաւաստի պատճառներն ունի և իրազեկները կրնան դիմել հեղինակաւոր անձանց վկայութեան, այսպէս.—

## PROVENANCE OCCIDENTALE
## DE LA CIVILISATION CHINOISE

La science vient de la démontrer, sans contes-

tation possible : non seulement la civilisation chinoise n'a pas fourni le germe de la civilisation Occidentale; mais tout au contraire c'est l'Occident, en ce cas spécial, l'Occident de l'Asie, notre «Asie Mineure» qui donna le levain de fermentation à la communauté du Hoangho destinée à devenir le Grand et Pur-Empire. P. 59. Elisée et Onésime Reclus. L'empire du Milieu. Librairie Hachette et Cie Paris.

*Ուրեմն վերակազմենք Ճենաց ի Հայս գաղթող մէկ գերդաստանին անցեալը որ իր հանած երկպառակութիւններով իրականացուց Հռովմէական Պետութեան ծրագիրը և արեան ճապաղեաց մէջ խեղդեց Հայ ազգին անկախութիւնը։*

*
* *

ՎԵՐԱԿԱԶՄՈՒԹԻՒՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆՆԵՐՈՒ ԱՆՑԵԱԼԻՆ

*Ա. Եւ ո՞ւստի եւ զիա՛րդ ազգ Մամիկոնեից. Վախ-«ճանեալ Արտաշրի որդւոյ Սասանայ. թողու զթագաւո-«րութիւնն Պարսից որդւոյ իւրում Շապհոյ։ Ի սորա ա-«ւուրս եկեալ ի Հայս նախնի ազգին Մամիկոնէից յարեւե-«լից հիւսիսականէն ի քաջատոհմիկ և ի գլխաւոր աշխար-«հէ և ամենայն հիւսիսականաց ազգաց առաջին, ասեմ «իսկ զՃԵՆԱՑՆ՝ որ ունին զրոյց այսպիսի։*

*«Յամս կատարման կենացն Արտաշրի, Արբոկ ոմն «Ճենկաբուր, որպէս ասի ի նոցա լեզուն պատիւ թա-«գաւորութեան. սորա երկու դայեկորդիք Բղդոխ և «Մամգուն անուն կոչեցեալ, մեծ նախարարք։ Եւ չա-«րախօսեալ Բղդոխայն զՄամգունայն, հրամայեաց թա-«գաւորն Ճենաց Արբոկ սպանանել զՄամգունն։ Զոր ի-*

«մացեալ Մամգունայն, ոչ գայ ի կոչն արքային. այլ փա-
«խուցեալ աղխիւն իւրով անկանի առ Արտաշիր Թագա-
«ւորն Պարսից. Եւ Արբոկ (*) հրեշտակս առաքէ խնդրել
«զնա. և ի չյուելն Արտաշրի, պատերազմ ի վերայ նորա
«յօրինէ Թագաւորն Ճենաց. Եւ իսկոյն մեռեալ Արտաշրի,
«Թագաւորէ Շապուհ.

---

(*) Il n'est plus douteux que dans l'antiquité, les ancêtres des Chinois, des Hindous, des Chaldéens, des Arabes durent être les voisins les uns des autres et se trouver en relation fréquentes, puisque ces divers peuples ont hérité des mêmes conceptions astronomiques et que la coïncidence des observations et des vues se poursuit jusque dans les détails.

La première grande révolution intérieure de la Chine se manifesta lors de l'introduction des religions hindoues. Une influence bien autrement large et bien autrement profonde que celle du brahmanisme de l'Inde, ce fut celle du boudhisme, religion partie également de la terre du Gange. Des communications s'établirent par mer entre l'Inde et la Chine méridionale surtout par le golfe du Tonkin. Le chemin était également suivi par les ambassades, entre autre celle que les annales chinoises disent être venue du grand Thsin, c'est-à-dire de Rome; ambassade envoyée par l'empereur An-toun, deux syllabes où transparaît Aurelius Antoninus, en l'an 166 de l'ère des Chrétiens P. 7, 8, 9, 10. L'empire du Milieu. Elisée et Onésime Reclus, Librairie Hachette et Cie. Paris.

Արդ, թէպէտ և ոչ տայ Շապու՛ զՄամգուն ի ձեռն Տեառն իւրոյ, այլ և ոչ յԱրևոց երկրին Թագու. բայց ամենայն ազխիւնն իւրով առաքէ զնա, իբրև վտարանդի, առ գործակալս իւր որ ի Հայս: Եւ յղէ առ Թագաւորն Ճենաց՝ ասելով. թէ. Մի թուեսցի քեզ դըժուար, զի ի ձեռս ոչ կարացի տալ զՄամգուն. վասն զի երդուեալ էր նմա հօրն իմոյ 'ի լոյս արեգական. այլ վասն անխռով զքեզ առնելոյ՝ հալածեցի զնա յաշխարհէս իմմէ յեզր երկրի և ի մուտս արևու որ հաւասար է նմա մահու. և արդ մի լիցի պատերազմ ընդ իս և ընդ քեզ:

Եւ զի քան զամենայն բնակեալս ի վերայ երեսաց երկրի խաղաղասէր ասեն զոյ զազգ Ճենաց, յանձն առնու առնել զհաշտութիւն. ուստի յայս իսկ է, թէ են արդարև խաղաղասէր(*) և կենսասէր ազգ Ճենաց:

Աքանչելի է և աշխարհն առատութեամբ ամենայն պտղոց և գեղեցիկ բուսովք զարդարեալ, քրքմաւէտ և սիրամարգաշատ և բազմամետաքս. անբաւութիւն յամուրայ և հրէշից և որ էշայծեմունսդ անուանեն. ուր հասարակաց կերակուր ասեն զառ մեզ պատուականն և ռամկաւուց ճաշակելիս. զփասեան և զպոր, և այլ այս-

---

(*) Dans les anciens livres et dans les discours de Conficius il est question des contrastes qu'offrent les traits physiques et les caractères moraux entre les différentes populations de la Chine: Celles du Nord seraient composées de braves; les hommes du Midi auraient la sagesse et la prudence en partage: CEUX DE L'EST SE DISTINGUERAIENT PAR LA BIENVEILLANCE ET L'HUMANITÉ; Ceux de l'ouest se recommanderaient par leurs mœurs fidèles et sincères. P. 56. L'Empire du Milieu par Elisée et Onésime Reclus. Librairie Hachette et Cie. Paris.

պիտիք։ Այլ զականց և զմարգարտաց ոչ առնեն գիտել զհամար՝ մեծամեծացն. իսկ պատուականքս առ մեզ ըզգեստուց և սպասուց ագանելիք, համարակաց նոցա է զգեստ։ Եւ այս յաղագս աշխարհին ծննդոց։

Իսկ Մամգունեայ յոչ կամաց եկեալ յաշխարհս մեր. հանդիպեցաւ զաւառականն Տրդատայ. և ոչ դարձաւ ընդ զօրս Պարսից. այլ ամենայն ազխիւն իւրով ընդ առաջ գնաց նմա մեծաւ պատարագաւ. և Տրդատ կալաւ զնա, բայց զկնի իւր ի պատերազմ ոչ էառ յերկիրն Պարսից, այլ ետ տեղի աղխի նորա և ռոճիկ ի կերակուր. փոխախեալ տեղի ի տեղւոջէ ցբովանդակ ամս։ էջ 342–345. Մ. Խ. 1881 Վենետիկ Բ.

Սասակում Աշխունեաց ի ծնեալընոյն Մամգունեայ. ընդ հանդչելն Շապհոյ արքայի Պարսից ի պատերազմացն՝ նիւթէ չարիս ի վերայ մերոյ աշխարհիս. Թողեալ զհիւսիւսայինսն ամենայն՝ եկանել ի Հայս, ժամ գնէ իւր գալ Արեօք ի միւս կողմանէն։ Ի սորին բանս հրապուրեալ Սլուկ նահապետն ազգին Սլկունեաց. զինքեանն սպանանէ զփեսայ՝ զծերացեալն Օտայ, որ էր ի տոհմէն Ամատունեաց, և մնուցող Խոսրովիդխտոյ՝ քեռ Թագաւորին։ Եւ այն ինչ ընդ հուր եկեալ մեծին Տրդատայ և զխաղացեալ՝ թէ ոչ ի ժամանակութիւնն եկն Շապուհ, խաղայ ի վերայ հիւսիսականացն։

Իսկ նահապետն ազգին Սլկունեաց ամրանայր յամրոցին, որ անուանեալ կոչի Ողական, ապաւէն առնելով իւրեան զբնակիչս Սիմ կոչեցելոյ լերինն և ընդդիմացեալ Թագաւորին՝ աւերէր զերկիրն, և մերձ առ լերամբն ոչ Թողացուցանէր այլում՝ պարապել գործոյ։ Առէ ամենայն նախարարութեանց տանս Հայոց՝ արքայ. Որ ոք ածէ առ իս զնահապետն Սլկունեաց, տաց նմա յաւիտենական իշխանութեամբ զգեօղս և զդաստակերտս և զամենայն իշխանութիւն ազգին Սլկունեաց։ Զոր յանձն առնույր Ճենազնեայն Մամգուն։

Եւ ի խաղալ թագաւորին զկողմամբ Աղուանից ի վերայ հիւսիսականացն. գնաց Մամգունն ամենայն աշխարհն իւրով զկողմամբ Տարօնոյ, որպէս թէ ապստամբեալ ի թագաւորէն. և ի չու անկեալ. առաքէ գաղտագնաց հետեւակս. զգուշացուցանելով նահապետի ազգին Սլկունեաց զգնալն թագաւորին զկողմամբք Աղուանից։ Վտանգ մեծ է, ասէ, թագաւորին Տրդատայ. վասնորոյ գնաց զկողմամբք Աղուանից պատերազմել ընդ ամենայն յետնատեսայն, վասնորոյ մեր է ժամանակ ի ձեռն խորհել և գործել որ ինչ կամք են. զի խորհեալ եմ դաշնաւորիլ ընդ քեզ՝ վասն արհամարհանաց իմոց ի թագաւորէն։ Ընդ որ ուրախացեալ նահապետ ազգին Սլկունեաց ընդունի զնա երդմամբ ուխտից. բայց յամուրն ոչ թողու, մինչև տեսանել թէ որպէս պահիցէ զմտերմութիւնն երդմանց և դաշնաւորութեանցն։ Իսկ ասացեալն Մամգունն ամենայնիւն ջանացեալ զմտերմութիւն ցուցանել առ ապստամբին հաւատարմացուց նմա որպէս արդարև միամիտ գործակցի. մինչև հրամայեաց նմա համարձակ մտանել յամուրն և ելանել։

Եւ յետ բազում վստահութեանն, ի միում աւուրց հաւանեցուցանէ զնահապետ ազգին Սլկունեաց ելանել արտաքս յամրոցէն և որսալ երեւ. և ի միջամուխ լինել որոցն՝ դիպեցուցանէ աղեղամբ ընդ մէջ թիկանցն և կործան յերկիր զարկուցանէ զապստամբն։ Եւ ընթացեալ իւրով արամբքն ի դուռն ամրոցին՝ առնու զբերդն, կապելով զամենայն արսն որ ի ներքս։ Նա և զազգն Սլկունեաց խորհեցաւ բառնալ և կոտորեաց զամենեսեան. երկուք միայնք փախստականք անկան յաշխարհն Մոկաց։ Իսկ Մամգունն վաղվաղակի զգուշացուցանէ թագաւորին. ընդ որ ուրախացեալ Տրդատայ, գրէ հրովարտակ՝ իշխել նմա ամենայնի. և կարգէ զնա նախարար ի տեղի ապստամբին, անուանելով յանուն իւր Մամգունեանս։

Բայց Թռուցելոցն Ալկունեաց հրամայէ չխնայել։ Տես էջ 355 Մ. Խորենացի 1881 Վենետիկ.»

Սամզունի այս դաւաճանութիւնը Տարօնի դռները բացաւ Տրդատի առջև, որկրին գրաւումը երկար տեւեց և իրարմէ տարի մը միջոց տալով երկու պատերազմ մղել պէտք եղաւ։

ԱՌԱՋԻՆ ՊԱՏԵՐԱԶՄ. Ս. Գ. Լուսաւորիչ իր կեսարիայէ վերադարձին, Ց. Տ. 302ին, մտաւ Տարուբերան։ Քուրմերը՝ Տրդատայ զօրավարներէն Հաշտենից իշխանի գաղտնի թելադրութեամբ, կռուեցան Հայոց բանակին դէմ որ կռիւին տաքցած միջոցին իրեններով (տես էջ 29 Ջենոբ) դասալիք եղաւ և անցաւ իրենց կողմ

զօրքով 700

օգնական զօրք (տես էջ 28 Ջենոբ) Գարտմոյ, Վիշապայ, Մեղտոյ 5450

իրենք ճակատեցին (տես 37 Ջենոբ) իրենց յատուկ զօրքերը

| | Հեծեալ | Հետեւակ | Աղեղ | Տէգ | Պարս | |
|---|---|---|---|---|---|---|
| Կուասա | 1500 | .... | ... | ... | ... | .... |
| Տում | 400 | .... | ... | ... | ... | .... |
| Խորնի | 700 | 1007 | ... | ... | ... | .... |
| Բրեխ | 1030 | 400 | ... | ... | ... | .... |
| Կատեղք | 800 | 600 | ... | ... | ... | .... |
| Բուզու | 1040 | .... | 840 | 680 | 280 | .... |
| Համագումար 15427= | 5470+ | 2007+ | 840+ | 680+ | 280+ | 6150 |

Այս պատերազմի միջոցին քուրմերը յաղթուեցան և Ջենոբ Իննակնեան վայրը հիմնեց վանք մը ուր հրաւիրեց յաջորդ տարին զՍ. Գ. Լուսաւորիչ։ Հոն իր մտնելու Տրդատ և առջի պատերազմէն ի վեր (տես էջ 41 Ջենոբ) տարի մը կամ քիչ մը պակաս անցած էր։

ԵՐԿՐՈՐԴ ՊԱՏԵՐԱԶՄ. Այս անգամ պատերազմը

տեղի ունեցաւ. Ց. Տ. 303ին մօտերը և Հիւսիսոյ արքան Գեղաեհոն (տես էջ 45 Զենոբ) ճակատեցաւ 58000 զօրքով Տրդատայ (տես էջ 43 Զենոբ) սակաւաթիւ 30000 զօրաց դէմ. և քիչ մնաց որ գիշերային յարձակման առեն յանկարծակիի գալով սպաննուէր եթէ Մեհնունիք իր օգնութեան չի փութային։

Սա պարագան ուշագրաւ է որ այս երկու ճակատամարտներու մէջոցին կը յիշուին Սիւնիք, Բագրատունիք, Արծրունիք, Մոկաց իշխանը, Աղձնեաց իշխանը, Անգեղտան իշխանը, Հաշտենից իշխանը, Արջուց իշխանը բայց երբեք Մամգուն պատերազմին դաշտին վրայ չերեւնար։ Միայն կը յիշուի Առաքելոց վանքին յարմար տեղ փնտռելու համար դրկուիլը և ձեռնունայն ետ դառնալը։

«Իխանն Մամիկոնէից տան՝ երթեալ խուզեաց աւուրըս բազումս և ոչ եգիտ տեղի պատշաճ յամենայն գաւառս (տես էջ 15 Զենոբ.) Բայց իրեն տեղ գտած էր քանի որ յերկրիս Հայոց ի չորրորդ բաժինս և յերրորդ Հայոց աւարտին ի լերինն որ կոչի Տաւրոս, և հասեալ անցանէ մինչև ի դրունս Պալհաւեայ Պարսից, առ սովաբնակի երկիրն ՄԱՄԻԿՈՆԷԻՑ, բազում վայելուչ տեղօք և ծառաստունկ պիտոյից որ և աստ իսկ որջացեալ էր մահ յերկուս տեղիս, ի միում վայրի զոր Իննակնեան կոչեն։ տես էջ 8 Զենոբ. 1832 Վենետիկ։»

Ուստի Մամգուն իր վաչկատուն ցեղին բնակութեան տեղ կը գտնէր, անկից անդին աշխարհք կործանէր՝ իր փոյթը չէր։ Նոյն իսկ ընդհանուր աղետին մէջ իր ցեղին յաջողութիւնը կը գտնէր։ Նոյնպէս վարուեցան իր յաջորդները, անցնինք անիշխանութեան երկու տարիները և հասնինք Խոսրով Կոտակի։

«Վաչէ Մամիկոնեան երթեալ հասանէր ի վերայ Մանաւազ-եանց և Որդունեանց և ոչ թողոյր երկոցունց տոհմացն զարմ կա-թիւն և ոչ զիք. և ինքն դառնայր առ արքայն Խոսրով. էջ 9։ Եւ զազգ Դատաբայ Բզնունւոյ և զկին և զորդիս զատանէր յԱղ-թամար կղզւոջ։ Եւ Վաչէ Մամիկոնեան անցեալ ի կղզին՝ առ հա-սարակ ոչ զէգ թողոյր և ոչ զարու. և այսպէս բարձաւ այգա-տոհմ նախարարութեան այնորիկ. էջ 20. Արտաւազդ և Վասակ Մամիկոնեան թողին զամեն իւրեանց զորդ[illegible]ն Արշակ և չոգան յամուրս Տայոց և անդ նստան ամս բ[illegible]. էջ 47. Մամիկոնեանք պառակտեալ և քակեալ էին յընտանութենէ և յամենայն գործոց Հայոց էջ 67. Եղբայրն Վասակ Մամիկոնեան նախանձ բերէր ընդ-երիցու եղբօրն իւրում ընդ Վարդանայ։ Կամեցաւ խանգար առ-նել ի մէջ Արշակայ թագաւորին Հայոց և փախչել. էջ 130։ Ապա յետ այսորիկ եկն Վասակ Մամիկոնեան և գրգռէր զթագաւորն Արշակ ընդ իւրում եղբօրն երիցու. ասելով՝ թէ Վարդան է որ մատնէ զքեզ թագաւորին Պարսից և կամի կորուսանել զքեզ էջ 132։ Եւ Անդովկ բազում ոսկի զօրավարին Հայոց, Վասակայ Մա-միկոնենոյ մատուցանէր և կաշառէր զնա. էջ 137. Եւ զՆերսեհան նահապետ որ տոհմին իսկ էր ազգաւ տոհմին Մամիկոնենից, առա-քէր զնա թագաւորն Պարսից Շապուհ յերկիրն Հայոց ի վերայ Արշակայ արքային Հայոց։ էջ 153 Եւ Վահան եղբայր Վասակայ սպարապետին, ի Մամիկոնեան տոհմէն, ապստամբեաց յԱրշակայ յարքայէն Հայոց և յանձն առ պաշտել զօրէնս մոգութեան. այս ինքն երկիր պագանել կրակի և արեգական և ուրանալ զօրէնս քրիստոնէութեան՝ յորում ծնեալն էր և ետ Շապուհ կին Վահա-նայ զՈրմիզդուխտ զքոյր իւր և մեծարեալ փեսայ արար զնա իւր թագաւորն. էջ 164. Եւ Վահան Մամիկոնեան պիղծ և անօրէն էր. էջ 182. Իսկ Վահանայ էր քոյրաթիւ ի Մամիկոնեան տոհմէն Հա-մազասպուհի և անօրէնն Վահան հրաման տայր բերդակալին զի՛ նեղեսցէ զկինն յանձն առնել զօրէնս Մազդեզանց։ Իսկ նա ոչ առ-նոյր յանձն Համազասպուհի, հանին զնա ի բարձր աշտարակն և մերկացուցին զնա իբրև ի մօրէ և արկեալ կապ ոտիցն, գլխի-վայր կախեցին զնա ի բարձուէն կուսէ. և այնպէս մեռաւ ի կա-խաղանին և փաղփայլէր մարմին նորա ի բարձուէն զօր օրինակ ձիւն սպիտակութեամբ. էջ 183 Եւ Մուշեղ Մամիկոնեան յղէր առ-մարդպետն Հայր դաւով, և առ ինքն կոչէր յՈղականն և էին աւուրք ձմերայնոյ, և սաստկացեալ կցեալ էր գետն Եփրատ։ Եւ հրաման զօրավարն Մուշեղ զօրականացն ունել զնա, և մերկանալ

իբրև ի մօրէ, և կապել զձեռս նորա ի ներքոյ ծնկաց նորա, և բլուցանել զնա ի գետն. և դնել ի վերայ սառինն կցելոյ գետոյն, Եւ ի վաղիւ անդ չոգան տեսին, զի ուղիղ գլխոյն ի ցրտոյն վայրեալ ի բաց իջեալ թափեալ էր ընդ քիթս նորա. էջ 196. Եւ թագաւորն Պապ յիշեաց զհին զրոյցն և ասէ՝ Ո՞չ այդ այն Մուշեղ է, որ արձակեաց զկանայս թագաւորին Պարսից Շապհոյ համդերձ ժանուարօք և վաշտկանօք. և լուեալ ես է իմ. թէ ի Պարսիկս խօսի. արդ մի մնացէ դա ի ճակատ։ էջ 198 Եւ Մուշեղ սպարապետն Հայոց դիպէր գնդին Աղուանից և հասանէր Ուռնայրի արքային Աղուանից և թոյլ ետ նմա փախչել երթալ յաշխարհն իւր։ Ապա ամբաստան լինէին առ Պապայ զզօրավարէն Մուշեղի և ասէին՝ թէ գիտեա, արքայ, զի մեծաւ նենգութեամբ է ընդ քեզ և քեզ մահու սպասէ զի զբազումս բազում անգամ ի բուռն արկեալ՝ սովոր է արձակել զթշնամիս։ էջ 203 Եւ Մուշեղ, սպարապետն Հայոց ասէր. այսուհետև ես ոչ կարեմ երթալ ի վերայ թշնամեաց և ոչ նիզակ ումեք ուղղել։ Եւ զգային ամենայն ազատք և շինականք ի ծագէ ի ծագ ամենայն սահմանաց երկրին Հայոց։ էջ 233։ Եւ Բաւս սկսաւ ասել. թէ ի սկզբան ի նախնեաց հետէ զձեր արշակունեաց տոհմին Մամիկոնէից է կորուսեալ. զի հակառակորդք ձեր դոքա լեալ են ի բնէ անտի և համակ երկիրս Հայոց դոցա է կերեալ. էջ 242.

«Մանուէլն առանց հրամանի թագաւորին Վարազդատայ յինքն յափշտակեաց զզօրավարութեանն սպարապետութիւնն։ Եւ յետ այսորիկ պատգամ յղէր Մանուէլ Մամիկոնեան առ թագաւորն Հայոց և ասէր. Դու չես արշակունի, այլ ի պոռնկութենէ եղեալ ես որդի։ Նա մեք չեմք իսկ լեալ ձեր ծառայք. այլ ընկերք ձեր և ի վերայ քան զձեզ զի մեր նախնիքն լեալ էին թագաւորք յաշխարհին ձենաց և վասն եղբարց իւրեանց գրգռութեանն, զի արիւն մեծ անկեալ է ի վերայ. վասն այնր եմք գնացեալք։ Այլ զի դու, քանզի չես Արշակունի, գնա յաշխարհէս, և մի մեռանիր ի ձեռաց իմոց։ էջ 247. Իսկ Վարազդատ թագաւորն պատգամ յղէր առ զօրաւարն Մանուէլ, և ասէր. Եւ քանզի չեմ Արշակունի, զի եդի զթագ նախնեաց իմոց Արշակունեացն, և կալայ զաշխարհ առաջնոց իմոց և խնդրեցի զվրէժ հօրեղբօրն իմոյ Պապայ ի չարագործ յեղբօրէն քումմէ ի Մուշեղայ, բայց զի դու չես յաշխարհէս յայսմանէ, զի քեզէն իսկ ասացեր. բաս յերկրէն յաշխարհէն ձենաց եմք լեալք թագաւորք ի բնութենէ, և այսր պանդուխտ եմք եկեալք. արդ ըստ օրինակի եղբօրն քո մի մեռանիր.

երթ գնա յերկիրն ձենաց, անդ կեաց, և անդէն թագաւորեսջիր յերկրին քում։ Ապա եթէ ոչ կամիցիս գնալ, մեռանիս ի ձեռաց իմոց որպէս և Մուշեղն մեռաւ, էջ 248։ Եւ յետ այսորիկ ժամադիր միմեանց լինէին՝ պատերազմաւ զմիմեանս տեսանել և ի դաշտին Կարնոյ լինէին խառնուրդք երկոցունց գնդացն. և արքայն Վարազդատ ի փախուստ դառնայր յերեսաց զօրավարին Մանուէլի. և անդէն Մանուէլ զտէգ նիզակին ի ձեռինն կալեալ և նիզակաւն ի կառափն մտուցեալ ծեծէր զարքայն Վարազդատ. էջ 249 եւ սպարապետն Մանուէլ հրամայէր փողոտել զորդին Բատ Սահառունւոյ, ապա յետոյ զնա գլխատել և զայլսն կոտորեաց ըստ նմին օրինակի։ Եւ զթագաւորն Վարազդատ հալածեցին ի յերկրէն ի սահմանացն Հայոց, և անդէն մեռաւ. էջ 250. Եւ Մանուէլ նուաճեաց զաշխարհս Հայոց և տայր հրաման աշխարհի փոխանակ թագաւորի և զկինն Պապայ արքայի զԶարմանդուխտ տիկին, հանդերձ երդուովք արշակունովք, ի տեղի թագաւորի կալեալ՝ շրջեցուցանէր. ապա կամեցաւ ի թիկունս առնել զարքայն Յունաց. էջ 251. Ապա առաքեաց սպարապետն Մանուէլ զԳարջոյլ Մաղխազ և ընդ նմա բազումս ի նախարարաց Հայոց առ թագաւորն Պարսից զի զնա պաշտիցեն և տայցին նմա զաշխարհս Հայոց. էջ 252. եկին բերին ի Պարսից պարգեւս սպարապետին Մանուէլի և սպարապետն մեծաւ խնդութեամբ մեծարէր զՍուրէն և տայր զաշխարհս Հայոց ի ձեռս Սուրենայ և հնազանդէին հրամանաց թագաւորին Պարսից. է՛ջ 253. և յեղակարծումն զօրավարն Հայոց Մանուէլ հասանէր անկանէր ի վերայ բանակին Սուրենայ և զտասն հազար Պարսիկսն միանգամայն կոտորէր։ Եւ յայնմ հետէ զտիկինն Զարմանդուխտ ի գլուխ առեալ ի տեղի թագաւորացն շրջեցուցանէին. էջ 255. Եւ զտիկինն արշակունի հանդերձ մանկամբքն Արշակաւ և Վաղարշակաւ յամուրն յուղարկէին և որպէս օրէն էր՝ մանուկն Արտաւազդ Մամիկոնեան գերծեալ էր զգլուխն և ցցունս էր թողեալ և գէս արձակեալ էջ 260 ապա եբաց Մանուէլ զամենայն անդամս իւր, մերկացաւ և եցոյց զի քան զդրամ խայծ ոչ գտանէր ողջ ի մարմնի նորա. զի յառնի յանդամն աւելի քան զկիսան ապի կայր վիրաց և զայն անգամ բացեալ ցուցանէր ամենեցուն։ Եւ անդ էին թագաւորն Արշակ և անդ Վարդանդուխտ կին թագաւորին. էջ 265 Ապա յետ մահուան Մանուէլի բազումք ի Հայոց նախարարացն անտի ելին պատեան գնացին առ թագաւորն Պարսից և խնդրեցին ի նմանէ թագաւոր արշակունի։ էջ 269. Եւ թագաւորն Պարսից տանէր ի նմին տոհմէ

մանուկ մի անուն Խոսրով, կապեաց թագ ի գլուխ նորա և ետ նմա կին զքոյր իւր զՋրուանդուխտ։ Իբրև ետես Արշակ արքայ՝ տեղի ետ չոգաւ գնաց յաշխարհն Յունաց. և Յոյնք էին թիկունք Արշակայ և թագաւորն Պարսից՝ Խոսրովու. էջ 270. Եւ այնուհետև առնէ խորհուրդ թագաւորն Յունաց ընդ թագաւորն Պարսից զաշխարհն Հայոց ընդ երկուս ի մէջ իւրեանց բաժանել. զի ասէին՝ թէ ի միջի մերում բնակեալ է այս հզօր եւ հաստատ թագաւորութիւն, լաւ է այսու եղծանել եւ խանգարել զայս թագաւորութիւնս երկու թագաւորօքս արշակունեօք՝ զոսա կացուցեալ ապա ջանասցուք կրծել, աղքատացուցանել զի մի կարասցեն ի մէջ մեր ամբառնալ զգլուխ. էջ 270: ԵՒ ԲԱԶՈՒՄ ԴԱՒԱՌՔ ՑԵՐԿՈՑՈՒՆՑՆ ՀԱՏԱՆ ԵՒ ՆՈՒԱԶԵԱՑ, ԲԱԺԱՆԵՑԱՒ, ՑՐՈՒԵՑԱՒ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆՆ ՀԱՅՈՑ, ՊԱԿԱՍԵԱՑ ՅԻՒՐՄԷ ՄԵԾՈՒԹԵՆԷՆ ՅԱՅՆ ԺԱՄԱՆԱԿՆ ԵՒ ՅԱՊԱՅ։ էջ 271. Փ. ԲՈՒԶԱՆԴԱՑԻ. 1889 ՎԵՆԵՏԻԿ։

Մամիկոնեանք Հայաստանի թշնամիներու պատհութիւն կուսային փախչիլ ազատելու, Ուռնայր և Շապուհ կը մեծարուէին մինչդեռ նոյն Մամիկոնեանք կը յանդգնէին իրենց բնակ տիրոջ Վարազդատին գլուխը նիզակին տէգովը ծեծելու ինչ որ յետին թշնամանքն էր այդ ասպետական կարգերու մէջ։ Այս տիրադրուժ վարմունքը Հայոց նախարարաց ալ աչքէն չէր վրիպած և քանիցս այս մասին գանգատեցան։ Ի՞նչ էր ուրեմն Մամիկոնեանց հետեւած քաղաքականութիւնը. անոնց նպատակն էր նախ Հայոց բնիկ նախարարութիւնները ջնջել, յետոյ իրենց փառասիրական դատին շահիլ Հայաստանի թշնամիները, վերջապէս արշակունիները գահէն վար առնելով՝ անոնց գիրքին բարձրանալ։

Այս ծրագիրը մասամբ յաջողեցաւ, երբ Մամիկոնեանց և Բագրատունեանց մրցակցութիւնը սկսաւ և նոր արքայական հարստութեան թեկնածու կողմերը իրենց մարդոց ձեռքով Ջաւագովականին խմբագրել տուին՝ այն ժամանակի իշխաններուն մէջ ա՛լ չեն յիշատակուիր ո՛չ Հայոց չորս գահերէց իշխանները, ո՛չ բդեշխները, ո՛չ կողմնապահները, ո՛չ թագադիր իշխանութեան ասպ-

ման կը մնայ, ոչ Անգլիական իշխան ամէնքը հողուն հաւատար կըլլան:

Մամիկոնեանք կը յաջողին նոյ իսկ իրենց ետեւէն քաշքշել Արշակունի անշահախնդիր իշխաններն ԱՐՇԱԿ և ՎԱՂԱՐՇԱԿ (տես էջ 251 Փ. Բուզանդացի): Միայն թէ Յոյնք և Պարսիկ միաբանելով կը հասկցնեն իրենց որ իր երկիրը ակարացնողը ընդ երկուք իր երկրին գլուխը չի կրնար մնալ և զիրենք կը խոնհարեցնեն:

Անժողովրդական դարձած Մամիկոնեանք աչքերնին կը դարձնեն եկեղեցական դասակարգին կողմը և կը խընամենան Հայ Հոգեւոր իշխանութեան պետերուն հետ և նոյն իսկ չեն վարանիր իրենց կիները իրենց ծրագիր-ներուն իրագործման հաղորդ ընելու:

«Մեծն Սահակ ունելով դուստր մի Սահականոյշ կոչեցեալ որ առեալ յամուսնութիւն Համազասպ Մամի-կոնենւոյ, վասնորոյ ի թախանձելոյ դստերն հայրապետն չոգաւ առ Արտաշիր Պարսից արքայն որ կատարեաց զխնդիրն վասն փեսայի նորա Համազասպայ ի վերայ մա-տուցանել զնա զի կարգեսցին ունել զհինգերորդ գահ նախարարացն Հայոց. ի դիւանի իւրում գրել, այլ նմա գահս պատուոյ՝ հանդերձ իշխանութեամբ գիւղից և դաս-տակերտաց որում ցանկայրն և սպարապետութեանն Հայոց հրովարտակ առ Վռամշապուհ թագաւորն մեր գրեալ.» էջ 510—513. Մ. Խ. 1881 Վենետիկ:

«Այլ Սահակ առէ ցհամազգին իւր զՍուրէն. հաւա-նեցուցեա զՎռամ թողելով զորէն համօզակեր թոլչի: Այնմ լսող եղեալ Վռամայ՝ հրամայէ հաստատել զթոռն Սահակայ հայրապետի, զՎարդան սպարապետ ի տէրութեան իւր ազգին Մամիկոնենից և արձակէ զնա ի Հայս»: էջ 561—562. Մ. Խ. 1891 Վենետիկ:

«Յայնժամ Մեծին Սահակայ հաւանեալ հիւանդու-թիւն մահու բարձին զպատուական մարմին նորա տար-

կուագապետն նորա Երեմիա՝ հանդերձ աշակերտակցօք և տիկնաւն Մամիկոնենից, նորին նուաւ, որում անուն էր Դատրիկ, կին Վարդանայ սպարապետի, տարեալ հանգուցին յԼուրեանց գիւղն յԱշտիշատ, որ է ի գաւառին Տարօն։

Կղերական և քաղաքական անձնաւորութեանց այս համաձայնութիւնը մեզ գիտելու՝ գիտէն իբրև 27 տարի վերջ Թուականի մը կը հասցնէ ուր «ի Նախարարս Հայոց անկանէր Թաղաւորութիւնն. էջ 11 Եղիշէ 1864 Վենետիկ» և Սիւնեաց իշխանն կարծեց թէ «անկցի նմա հասանել 'ի Թագաւորական մեծակն. էջ 157 Եղիշէ 1864 Վենետիկ» և նոյն պատճառն հանելու սին յուսով Վարդան Մամիկոնեան ալ ուրացաւ հաւատքը և զկամս նորա ամբարշտութեանն կատարեաց. էջ 177 Եղիշէ 1864. Վենետիկ։



# ՏՐԴԱՏ
# ԵՒ
# ԱՐՇԱԿՈՒՆԻՔ

*Հայք ուրեմն այն օրէն որ Քրիստոնէութիւնը ընդունեցին, նոյն օրէն երկինքը շահելու տեղ երկիրը կորսնցուցին։ Այս հակասութիւնը ինչպէս մեկնելու է. չէ՞ մի որ յաւիտենական բարիքներու ի խնդիր ելողին Աստուած առատապէս աշխարհային բարիքներն ալ կը շնորհէ։ Պէտք չէ զարմանալ, մեր տեսած Յոյն և Ասորի կրօնաւորները չէին որ քրիստոնէութիւնը ի Հայս սկզբնաւորեցին այլ նոյն ինքն Քրիստոս իր Ս. Առաքելոց Թադէոս և Բարթուղիմէոսի ձեռամբ։*

*Այդ մասին իր յարմար տեղին պիտի խօսինք բայց այժմէն կրնանք ըսել թէ սուրերով և բիրերով եկողները Յիսուսի խաղաղութեան Աւետարանին ճշմարիտ պատգամաւորները չէին կրնար ըլլալ։ Անոնց գլխաւոր ջանքը եղած էր Յոյն և Ասորի լեզուներու ուսումը մեր երկրին մէջ տարածել։ Հայ ազգը այլասերել և ձուլելէ ուրիշ ծրագրի չէին հետեւիր։*

*Ուրեմն քուրմերու և մոգերու կողմէ խիղճերու հին շահագործումը նոր ձեւի մը տակ մշտնջենաւորելու եկող կեղեքիչներ էին և անոնց իրենց բռնի դաւանափոխ ըրած բազմութեան վիճակը յետինին չար քան զառաջին պիտի ըլլար։*

*Զենոբ մեզի հանդիսատես կընէ այս տխուր իրադարձութեան և ասով անգամ մըն ալ կը հաստատուի վաւերական հեղինակ մը ըլլալը.*

«Եւ որ մի էր ՆԱԽԱՄԱՐԴԻ և առեալ Սրբոյն Գրիգորի, իջուցանէ զնոսա ի ձորն Այծամնայ և մկրտեաց զնոսա յորեւելից կուսէ հանդէպ Կաճկօնից՝ Աստղօնից բերդին։ Եւ որք մկրտեցանն էին ոգիք 5050։ Եւ ժողովեալ զպաշտօնեայս կռոցն՝ աղաչէր դառնալ առ Տէր Աստուած։ Իսկ նոքա ոչ առնուին յանձն և ետ տանիլ զնոսա ի Փայտակարան քաղաքն ի տուն բանտի արս 438 գերծեալ զգէս նոցա»։

«Զի ի վաղնջուց յորմէ հետէ առին նոքա զանունն քրիստոնէութեանն՝ ոչ ջերմեռանդն ինչ հաւատովք ընկալան. այլ իբրեւ զմոլորութիւն ինն մարդկութեան ի հարկէ, (տես էջ 33. Փ. Բիւզանդացի 1889 Վենետիկ».

Այո՛, նոյն իսկ «Որդիքն Ցուսկան, Պապն և Աթանագինէս յաստուածատեցութեան զկեանս իւրեանց վարեցին և յաւուր միում մտեալ ի Տարօն յեկեղեցին որ զառաջինն էր շինեալ ի հաւրյն նոցա Գրիգորէ զտաճարն այդն առնէին և ըմպէին անդ զինի բոզօք և վարձակօք և գուսանօք և կատակօք։ (Տես էջ 48 Փ. Բուզանդացի. 1889 Վենետիկ.»

Այո՛. Զենոբի մէջ ցոյց տրուած նոյն աններող ոգին է որ Ցունական եկեղեցիէն Հայոց ազատ եկեղեցւոյն կը փոխանցուի Տրդատայ և Ս. Գ. Լուսաւորչի օրով որ Ասորի պատմաբանին հարազատութեան կնիքն ըլլալով հանդերձ՝ անցեալ օրերու տխուր էջերը կը լուսաւորէ։ Այո՛, խղճի ազատութիւնը կապտուած էր, նորահաւատները համոզելու և հրահանգելու հոգ տանող չը՚կար և Արշակունիք մեր սիրելի ազգին շահած երկինքն ու երկիրը միասին կորանցունել տուին իրեն։

Եւ մինչդեռ նոյն իսկ Ս. Գ. Լուսաւորչի թոռները բոզերու հետ եկեղեցին մտնելով կը յանդգնէին եկեղեցին պղծել և իբրեւ նոր Հեղի քահանայապետ անոնց այս ապօրէն ընթացքին աչք կը գոցուէր և զանոնք չանթա-

հարկյու հոգնութիւնը Աստուծոյ կը ձգտէր այնպէս որ «յանկարծակի հրեշտակ տեսան երեւեցաւ ի նմանութիւն փայլատական և հարկայ սաստկէր զերկոսեան եղբարսն միանգամայն ի բազմականին անդ ։ (Տես էջ 48 Փ. Բիւզանդացի 1889 Վենետիկ.» Գաղափարի զանազանութեան համար այլադաւաններ կը մահացուէին ։

Եկեղեցւոյն հայրն ու սուրբ այլակրօններուն գլխուն տեղացողները նոյէն Մամիկոնեանք էին և այդ խղճի ազատութեան դէմ մեղանչողները նոյն հոգեւորականներու սերունդն էին ։ «Ս. Սահակ թողու առ նմա զթոռունս իւր զՀմայեակ և զՀամազասպեան զեղբարսն Վարդանայ սպարապետի Մամիկոնեանց և հրամայէ քննել զժանդագործ Բորբորիտոնսն, և եթէ ոչ հեզութեամբ և սաստիւ գայցեն յուղղութիւն՝ չարչարանօք հալածել զի խայտառակեսցի իրաւացի մահուամբ անիրաւ մահ հոգւոց (էջ 538 Մ. Խորենացի 1881 Վենետիկ) ։

Այս մահաբոյր տողերը հաւատաքննութեան ատեանէ մը արձակուած վճիռի մը երեւոյթն ունին և արեւմուտքի մէջ մարքերը յուզող եկեղեցւոյ ու պետութեան միացման և բաժանման կնճռոտ խնդրոյն նաև ի Հայս գոյութիւնը կը հաստատեն. ուստի պէտք է անոր անցեալին վերադարձ մը ընենք անոր բուն արժէքը ըմբռնելու համար ։

Երբ Արշակունիք Հայոց տիրեցին՝ իրենցմէ անկախ ոյժ մը չարունակեց մեր երկրին մէջ տեւականութիւն ունենալ ։ Քուրմերու դասակարգը Թագաւորական նոր հաստատութեան դէմ դժգոհ տարրերուն ընդդիմութիւնը կազմակերպեց ։ Արդարև Արշակունիք երկրին մէջ անժողովրդական էին իբրև յունական քաղաքականութեան ծայրայեղ յարեալ ։

Արտաշէս յԱսիա գտնելով Արտեմիդեայ, Հերակլեայ, և Ապողոնի արձանները, զանոնք մեր աշխարհը բերել

տուաւ, բայց Վահունեաց ցեղէն եղող քրմապետներ Հերակլեայ անդրիապատկերը՝ իրենց նախնի Վահագնը կարծելով, տարին կանգնեցին ի Տարօն իրենց սեպհական գեղը Աշտիշատ. Արտաշէսի մահէն վերջ էջ 1960 Մ. Խորենացի 18-2 Վենետիկ։

Եւ Արտաշէս, յԵլլադայ գտնելով Դիոսի, Արտեմիդեայ, Աթենասայ, Եփեստու, Ափրոդիտեայ պատկերները ի Հայս բերել տալով, երբ Արտաշէսի մահուան լուրը առին զանոնք Անի ամրոցը փոխեցուցին անոնց քուրմերուն հետ մէկտեղ. էջ 157 Մ. Խորենացի 1881 Վենետիկ։

Արդ, Արտաշէս իր Մաժան որդին արձակեց մեծ գունդով Արգամայ վրայ և Մուրացան ազգէն շատերը սպաննել տուաւ, այնպէս որ անոնցմէ անձշանները ճխացին և Մաժան անոնց իշխանութիւնը իրեն գրաւեց Տես էջ 277. Մ. Խորենացի 1881. Վենետիկ։ Եւ Մաժան քրմապետ կարգուեցաւ Արտաշէսի կողմանէ յԱնի գիւղ Արամազդայ էջ 252. Մ. Խորենացի 1881 Վենետիկ.

Արդ երբ Մաժան իր եղբայրները Տրայեանոսի մատնեց՝ անոր Պարսկաստանէ վերադարձին, Արտաւազդ և Տիրան անոր խորհուրդը իմանալով Մաժանը սպաննեցին և Արտաշէս այնուհետեւ անայլթաք հարկ վճարեց Տրայեանոսի և անկէ ետքը Ադրիանոսի. էջ 257 Խորենացի. 1881 Վենետիկ։

Տիգրան Հայոց թագաւորը իր քրմապետ եղբօր գերեզմանը պատուելով անոր վրայ բագին շինեց, որպէսզի ամէն անցուորներ անոր զոհերէն վայելեն և երեկոյթիւք հոն հիւր ընդունուին։ էջ 312 Մ. Խորենացի 1881 Վենետիկ։

Տիգրանին առաջին գործը եղաւ մեհեանները շինել. բայց Յունաստանէն Արտաշէսի օրով եկած քուրմերը չուզեցին Հայաստանի խորերը երթալ և պատճառեցին

ըղձութիւն, իբր թէ նա կ'ուզէր դիք բնակել։ Եւ Տիգրան հաւանեցաւ առ այս ու Դիոսի Ողիմպեան պատկերը կանգնեց Անի ամրոցին մէջ, Աթենասինը՝ ի Թիլնաւան, և Արտեմիդայ միւս պատկերը յԵրիզայ, և Եփեստոսինը՝ ի Բագայառինջ։ Բայց Ափրոդիտեսի պատկերը, իբրև Երակլեայ սարփաւորի՝ անոր պատկերին քով հրամայեց կանգնել յԱշտից տեղին։ Եւ Վահունիներուն բարկանալով թէ ինչո՞ւ իրենց սեպհականին համարձակեցան իր հօրմէն գրկուած Երակլէսի պատկերը կանգնել՝ զանոնք քրմութենէ ձգեց և գիւղերնին արքունիք գրաւեց. էջ 194. Մ. Խորենացի 1881 Վենետիկ։

Նոյն տեղը անկից վերջ Ղազար Աշխարհախումբ տօն կարգեց նոր տարւոյ սկիզբը ի յուսան Նաւասարդի էջ 312. Մ. Խորենացի. 1881 Վենետիկ։ Երկու Հնդիկ իշխաններ Դեմետր և Գիսանէ, ապստամբեցան առ Թագաւորն Վաղարշ(ակ), որ անոնց Տարօնոյ երկիրը տուաւ, ուր Վիշապ քաղաքը շինեցին և Աշտիշատ գալով հոն այն կուռքերը կանգնեցին որ ի Հնդիկս կը պաշտէին։ Եւ տասնևհինգ տարի վերջ թագաւորը զանոնք սպաննեց և անոնց իշխանութիւնը անոնց երեք որդւոց տուաւ։

Եւ ժամանակ անցնելէ վերջ երեք եղբայրներ խորհուրդ ընելով, Քարքէոյ լեռը եկան և հոն կանգնեցին երկու կուռք մէկը յանուն Գիսանեայ և միւսը յանուն Դեմետրեայ։ Տես էջ 35 Զենոբ 1832 Վենետիկ։

Արտաւան Պարսից թագաւորին երրորդ տարին՝ Վաղարշի որդին Խոսրով անոր տեղ թագաւորեց և անգնելով կապանն ծոցայ՝ իր ակէութեան նշան, արձան հաստատեց հեթենացի գրով որպէսզի յայտնի ըլլայ ընդ հնազանդութեամբ լինելն Հռովմայեցոց։ Տես էջ 310։

Իսկ Արտաշիր Սասանեան գեղեցկապէս յարդարելով Հայոց աշխարհը ի կարգ առաջին հաստատեց և մեհեաններու պաշտամունքը աւելի ևս յորդորեց և զհուրն

ՈՐՄԶԴԱԿԱՆ, որ ի վերայ բագնին ի Բագաւան, ան չէջ լուցանել հրամայէ. էջ 334, Մ. Խորենացի, 1881 Վենետիկ։»

Այսպէս ուրեմն քաղաքական ընդդիմակաց փառասիրութիւններու մրցարանին վերածուած էր Հայաստան։ Հոն վաղուց տեղաւորուած էր Պարսից կրակապաշտութիւնը յԱտրաշատ (آذر شاد) իր Որմիզդի մեհեանով. ժամանակ մը ետքը հոն փոխադրուեցաւ Յունաց կռապաշտութիւնը Անի ամրոցը (էջ 282 Մ. Խ. 1881 Վենետիկ) իր Արամազդի մեհեանով։

Արդ, քանի որ հեթանոսական կրօնն էր երկրակալութեան պատրուակ՝ ի հարկէ իւրաքանչիւր ախոյեաց քուրմեր քաղաքական իրադարձութեանց ատեանքը պիտի դառնային և նուիրական թուով եօթը հակառակամարտ մեհեաններու տեղ՝ եօթը այլ մեհեաններ պիտի կանգնուէին և այսպէս Արշակունիք հոգևոր և մարմնաւոր իշխանութիւնները իրենց ձեռքին մէջ պիտի ամփոփէին։

## ՀԱԿԱԹԱԿԱՄԱՐՏ ՄԵՀԵԱՆՆԵՐ

| Արշակունեաց | Պարսից |
|---|---|
| 1.—Հեփեստոս (Միհր) | ١- آذر مهر |
| 2.—Աթենաս (Նանէ) | ٢- آذر نوش |
| 3.—Արտեմիս (Անահիտ) | ٣- آذر بهرام |
| 4.—Դիոս (Արամազդ) | ٤- آذر بين |
| 5.—Բարշամէն (Բարշիմնիա) | ٥- آذر حرذاد |
| 6.—Ապողոն (Տիւր) | ٦- آذر برزين |
| 7.—Արտէմիս (Անահիտ) | ٧- آذر زردهشت |

Ատրուշաններու նախկին պաշտօնեաներ իրենց շուրջը խմբած էին Հայ նախարարական գերդաստաններ և

տարուէներ։ Արշակունիներուն կը մնար հալածել բնիկ քուրմերու դասակարգը եւ Յոյն քուրմերը անոնց տեղ դնել։ Վահունիք ճորտահատ ապստամբեցան Տարօն ու հաստատեցին ութերորդ պաշտօն մը։ Արշակունիք հոն ալ եւեւնուն հասան անոնց կալուածները յարքունիս գրաւեցին եւ զանոնք պաշտօնէ ձգելով՝ Հնդիկներ անոնց տեղ կարգեցին։

Բայց Արշակունիք լաւ հաշիւ չէին ըրեր եւ իրենց ծայրայեղ յունասիրութեամբ բնիկները իրենցմէ ցրտացուցին։ Զէ՞ մի որ դրամներնուն մակագիրը յունարէն կարձանագրէին, իրենց պալատին մէջ յոյն դերասաններ յոյն լեզուով ողբերգութիւններ կը ներկայացնէին, յոյն արքունական գերդաստաններու հետ խնամութիւն կը հաստատէին, յոյն կուռքեր կը ներմուծէին ի Հայս, նախարարներուն կալուածները գրաւելով բաղդախնդիր օտարներու կը բաշխէին. Հասի գանձը լեցնելու համար ժողովուրդը տուրքերու տակ կը ճնշէին։

Չափազանցութիւնը շատ աւելի յառաջ տարին երբ Հայաստանով չը բաւականանալով՝ դուռ դրացի անհանգիստ ընել սկսան եւ Խոսրով Ա. անցնելով Ճորայ Կապանէն հոն արձան կանգնեց Հելլէնացի գրով որպէսզի յայտնի ըլլայ ընդ հպատակութեամբ Հռոմայեցոց ըլլալը։ Փոխարէնը վերջապէս պայթեցաւ Խոսրովի գլխուն. Արտաշիր Սասանեան՝ օգտուելով ընդհանուր ատելութենէն, Հայաստան մտաւ ու գրկաբաց ընդունեցաւ Հայերէն։

ԱՌԱՋԻՆ գործը եղաւ Թագէն մերժուացեալ աւագանին վերահաստատել Այրարատայ մէջ իրենց երբեմնի մուլք եւ ռոճկօք։ ԵՐԿՐՈՐԴ անորէնութեամբ Արտաշէսի տնկած սահմանաքարերը նորոգել, այսինքն գրաւուած հողերը իրենց նախկին տէրերուն վերադարձուց։ ԵՐՐՈՐԴ, հոգ տարաւ բնիկ քուրմերը իրենց հին դիրքին բարձրացնելու եւ հին աւանդութիւնները վերանորոգելու։

Տարակոյս չկայ թէ Արտաշիր Սասանեան Վահունիքը նորէն հաստատեց Տարօնի մէջ քանի որ Զենոբէ կ'իմանանք թէ Պարսիկ զօրքերը հոն էին Հնդիկ զօրութեան քով և Միհրի ( مهر = սէր ) պաշտօնին հետ կը նոյնացնէին հոն կատարուած պղծութիւնները։ Տրդատ սակայն վտարեց Արտաշրի որդին Շապուհը և ինքն ալ իր կարգին վերահաստատեց յունական աւանդութիւնները նոյն Աշտիշատի մէջ կամ նոյնացուց Միհրի պաշտօնը Ոսկեգիսակ (Դիանէ) Դեմետրի դիցուհւոյն հետ։

Արդ Հայոց մէջ անոնք որ Տրդատէ զրկանք կրած էին՝ կը յիշէին Արտաշիրը և նախկին բարեկարգ դրութեան վերադարձ կ'երազէին։ Նոյն ինքն Խորենացին անգամ՝ որ քրիստոնեայ էր, սքանչացմամբ կը հաստատէ թէ «Արտաշիր գեղեցկապէս յարդարեաց զաշխարհս Հայոց ի կարգ առաջին հաստատէր. էջ 334 Մ. Խորենացի 1881.»։ Խոսրովի սպաննութենէն ետքը ինչ անցած դարձած էր, Պարսից աշխարհակալութեան միայն երկու ընդդիմադիրներ գտնուած էին երկուքն ալ օտար ծագումով նախարարներ, Օտայ Ամատունի և Արտաւազդ Մանդակունի։

Օտայ Ամատունի գանձերը և Խոսրովիդուխտը առած ամրացած էր իր ի կաղաղի Անի ամրոցին մէջ և Արտաւազդ Մանդակունի 3 տարեկան Տրդատը փախցուցած էր Հռոմ ուր ապագայ Հայոց Թագաւորը դաստիարակուեցաւ աշխարհակալ կայսրութեան ծրագրին համեմատ և հայատեաց եղաւ։ Շապուհ հազիւ տարի մը ի վեր Հայոց վրայ կը թագաւորէր երբ Դիոկղետիանոս իր կայսրութեան երրորդ տարին Տրդատը իր 30 տարեկան հասակին Հռոմէական լէգէոններու գլուխ անցուցած Հայաստան ղրկեց երկիրը նորէն ընդ հնազանդութեամբ Հռոմայեցոց դնելու։

Վրոյ իշխանակալ Օտայ Ամատունին և Արտաւազդ Մանդակունւոյ խնամեցած Աշխոյ Տէրը միայն՝ Տրդատը զինուորեցին ի Կեսարիա, հետն էր Տրդատի խնամակալ Արտաւազդ Մանդակունին: Համէջական չէգէնելու նախկայ թենէն զատուած՝ Հայ նախարարներ ապաստանեցան կամայ ակամայ Շապուհին և Արտաշրի յաջորդը Շապուհ՝ որ տակաւին անվարժ էր կառավարելու, մեկնեցաւ երկրէն:

Աւելորդ է ըսել թէ Արշակունեաց գահաւոր աւանդութեան համեմատ նորէն յանձնարութիւնը տալեց Հայ աշխարհին և նորէն թախտական տարիներ թագաւորական քմահաճոյքով մը նախարար սպեցուեցան, նորէն Հայոց կալուածները տարիներու տրուեցան, նորէն Հայաստանէն գանձուած տուրքերը Համեմայեցոց գանձը լեցուեցան և հին հեթանոսութիւնը անարգուեցաւ. և Համեմայեցոց Դիւնապը Հայոց Մեծաց յաչաց ակեաց մէջ կանգնեցաւ այնպէս որ այս անմաղմախուրդալան իշխանին դէմ դանդաղները 14 տարի համաձայնաւ տանն ունեցան:

Պէ՞տք է աւելցնել թէ նորէն Հայ ուազգրեարը թագէն մեկուսացաւ և հողագործի մշակը նորէն բանութեան լուծին տակ հեծեց. բայց երբ կարգը եկաւ մեծամեծներու քաղաքական եղաւ՝ անոնք Արտաշրէ ստացած սատանձնաշնորհումներնին չուզեցին զիջու ձեռքէ հանել և ապստամբեցան: Տրդատի համար վճռական ժամը հնչած էր. պէտք էր կամ արեան հեղեղներու մէջ ընդդիմադիր տարրը խեղդել և կամ Հայաստանի գահէն հրաժարիլ: Այդ յանկարծ Տրդատի գործը վաղուց դիւրացնող մեծ յեղափոխութիւն մըստեղի ունեցած էր Հայաստանի մէջ:

Քրիստոսի խաղաղութեան Աւետարանը նախ ժողովուրդին խորճիթին մէջ և յետոյ անկէց ալ վեր մինչև Արշակունեաց պալատին դռներէն ալ ներս մտած էր և

ամենուն հաւասարութեան, ազատութեան և եղբայրութեան սկզբունքը քարոզած էր։ Ոսկեանք՝ որ Ս. Թադէոսի աշակերտած կը համարուէին, երկար ժամանակ Ծաղկէոյ լեռներուն մէջ ճգնելէ վերջ, իջան Արտաշատ և մինչև Արտաշէս Բ ի արքունիքը մտան ու Սաթենիկ թագուհւոյն ազգականներէն Սուքիասեանք իրենց հետեւեցան։

Ինչպէս Ոսկեանք նոյնպէս Սուքիասեանք նահատակուեցան Արտաւազդ արքայորդւոյն ձեռքով՝ բայց մարտիրոսներու արիւնով ոռոգուած երկրէն ծլան ծաղկեցան ուրիշ թուով հաւատացեալներ որոնց ի Հայս Յ. Տ. 140ին ներկայութեան կը վկայէ Տերտուղիանոս։ Նոյն իսկ Փերմիլիանոս իր հալածանաց պատմութեան գիրքին մէջ կը հաստատէ թէ Խոսրով Ա. անոնց դէմ հալածանք հանեց։ Տրդատ ալ Յ. Տ. 287ին իր թագաւորութեան սկիզբը երկու հրովարտակ հանեց որով մահու պատիժ կը սպառնար քրիստոնեաներու և անոնց ստացուածքը կը բաշխէր զանոնք մատնողներուն։

Այդ պատմութիւնը մեզ կը հասցնէ անանկ ատենի մը ուր Տրդատ և Շապուհ սկսած էին մրցիլ և Հայաստանի տիրապետութիւնը իրարմէ խլել։ Շապուհ իրեն հաւատարիմ մնացած Հայաստանի քուրմերու դասակարգը ձեռք առած էր և երկիրը կաղմկէր։ Տրդատի մտերիմ խորհրդականն, Օտայ Ամատունին՝ որ թէպէտ չէր ճանչցեր ճշմարտութիւնն վասն Աստուծոյ բայց գիտէր կուռքերու ստութիւնը, (էջ 346 Մ. Խ. 1881 Վենետիկ) գիտել տուաւ իրեն որ Հայաստանի քաղաքական ծանրութեան կեդրոնը անցած էր քրիստոնէից կողմը և պէտք էր անոնց կռթնիլ ու կործանել հօթը մեհեանները և Շապուհի կուսակիցներուն ուժը ջախջախել։

Հարկաւ Տրդատ այս մասին կարծիքն առաւ Դիոկղետիանոսի. բայց ան իրեն յատուկ դժուարութիւններն

ունէր. և գիտենք թէ երեք տարի վերջ Յ. Տ. 305ին պիտի հրաժարէր կայսրութենէ. ուստի Տրդատի ձգեց ընկերքը պայմանաւ որ չարունակէ Հռովմայեցոց հարկատուութիւնը։ Արդարև Դիոկղետիանոսի դժուար էր առանձին պաշտպանել կայսրութեան սահմանները այնպէս որ նախ իրեն գահակից ընտրեց Մաքսիմիոս, վերջէն ալ երկու կեսարներ, Կոստանդ ու Գալերիանոս հովիւ։ Եւ կայսրութեան մայրաքաղաքներն եղան Նիկոմիդիա՝ ուր բնակեցաւ Դիոկղետիանոս, Միլան՝ ուր բնակեցաւ Մաքսիմիանոս և Սիրմիոն ու Տրէվ կամ Արլ։

Արևելքի ընդդիմութիւնը այն աստիճան սաստկացած էր որ Դիոկղետիանոս պատահած խռովութիւններէն ձանձրանալով, գահէն հրաժարեցաւ և Դալմատիոյ մէջ իր Սալոնա գիւղը քաշուեցաւ։ Հարկաւ զինք տաղտկացնող խռովութիւններէն մէկն ալ Հայոց քուրմերու ըմբոստութիւնն և անոր հետևանօք մեհեաններու քարուքանդ ըլլալն էր։

ՆԱԽ Վաղարշապատէ Արտաշատ երթալու ճամբուն վրայ քանդուեցաւ Երազացոյց Երազըներիւան պաշտաման Տիւր դից դպրի գիտութեան ուսմանց՝ անուանեալ դիւան գրչի Որմզդի ուսման ճարտարութեան մեհեանը էջ 580: ԵՐԿՐՈՐԴ, Արտաշատու մէջ ԱՆԱՀՏԱԿԱՆ դից Երազամոյն մեհեանը ցուցեալ հրդեհեցաւ էջ 581 և մթերուած գանձերը կողոպտուեցան էջ 583. ԵՐՐՈՐԴ. Ի Թորդան գիւղ Բարշիմինիա սպիտակափառ դից պատկերը փշրեցին և ոսկին և արծաթի գանձերը առին տուին էջ 585. ՉՈՐՐՈՐԴ. Անի ամրոցի Արամազդայ բագինը կործանեցին. էջ 586. ՀԻՆԳԵՐՈՐԴ Երէզ աւանի Անահտական դից ոսկի պատկերը փշրեցին և գանձը առին տարին էջ 587. ՎԵՑԵՐՈՐԴ Թիլն աւանի Արամազդայ դատր Նանէական մեհեանը քանդեցին և գանձը Ս. Եկեղեցւոյ յատկացուցին. էջ 588. ԵՕԹԵՐՈՐԴ. Բագայառինճ

գիւղի Մհրական մեհեանը ի հիմանց բրեցին և մթերուած գանձերը կողոպտեցին· էջ 510 Ագաթանգեղոս 1835 Վենետիկ։

Հեթանոսական կայաններու այս բանադատ կործանումը քրիստոնէից կողմէ հաշտ աչօք դիտուեցաւ, իսկ խուժանը կողոպուտի խայծէն հրապուրուած, Տրդատայ կողմը անցաւ, նախարարները ցրուեցան Տրդատի տրամադրած Հռոմէական լէգէոններու ներկայութենէն։ Շապուհ իրեն դէմ ուղղուած այս կռիւներէն հարուածը փոխանակեց Հայ նախարարները գրգռելով Տրդատայ դէմ և Սլուկ անուն դրդմամբ սպանեց Օտայ Ամատունին որ մեհեաններու կործանման թելադրիչ ու իր փեսան էր և յետոյ ամրացաւ Ողական Ամրոցը ապաւինելով Սիմ լեռան բնակչաց և չէր թողուր որ լերան մարդ մօտենայ։

Տրդատ դաւաճան մը փնտռեց Սլուկէ ազատելու համար մինչդեռ ինք կը փութար Վրաց առաջնորդ Միհրանին օգնութեան որ Աղուանից դէմ կը կռուէր (տես էջ 40 առ 17 Զենոբ 1832 Վենետիկ) և (էջ 355—357 Մ. Խորենացի 1881 Վենետիկ)։ Նոյն միջոցին Մամգուն սպանեց Սլուկը որով Տրդատի կռնակը գտնուող թշնամին մէջ տեղէն վերցաւ. և հիւսիսի երեք թշնամի իշխաններ գերի բռնուեցան՝ ինք դարձաւ ի Հայս ու պատերազմին թատրը փոխադրուեցաւ Տարօն, հայ հեթանոսութեան սիրտը։

Ս. Գ. Լուսաւորիչ, հայրապետ ձեռնադրուած, Կեսարիայէն կը վերադառնար Ց. Տ. 302ին, ճամբան հանդիպեցաւ Տարօն։ Երբ Աշտիշատ հասաւ, արդէն հոն տեղաւորուած էր Մամգուն և իրեն իմացուց թէ երեք չէն բագիններէն միայն առաջինը կործանած էր և դեռ երկու բագիններ ալ կային որ դիւաց կը ձօնէին (էջ 25 Զենոբ 1832 Վենետիկ) բայց քուրմերուն կանոնաւոր

բանակը Կուատատան մօտ և Խնձակնեան աղբիւրին քով արդէն կազմ և պատրաստ էր մինչ որ Ս. Գ. Լուսաւորչի հետ գտնուող Հայ Նախարարներէն Հաշտենից իշխանը գաղտնի լուր դրկած էր քուրմերուն և նոյնիսկ կռիւին ժամանակ ինք ալ դասալիք ըլլալով իր 700 զօրքերուն հետ քուրմերուն կողմը անցաւ (էջ 29 Զենոբ 1832 Վենետիկ.)

Յաղթութենէն վերջ Արտիշատի երեք բագինները փոխուեցան երեք եկեղեցւոյ և կուռքերուն տեղ Ս. Կարապետի մասունքէն նոյն վայրերը զետեղուեցան բայց լոկ եկեղեցւոյ հիմը դրուած էր (էջ 40 Զենոբ 1832 Վենետիկ) իսկ Զենոբ Ս. Գ. Լուսաւորչի մեկնելէն ետքը քարուկիր վանք մը կանգնեց հոն և ինքը շինեց եկեղեցին զոր Ս. Գ. Լուսաւորիչ միայն հիմնարկեց (էջ 13 Զենոբ 1832 Վենետիկ)։ Նոյն միջոցին Ս. Գ. Լուսաւորիչ Տարօնէն ելլելով՝ անցաւ Հաշտենից կողմերէն և գնաց յԱրարատեան գաւառն ի Վաղարշապատ (էջ 12 Զենոբ 1832 Վենետիկ) ուր ետ դարձած էր Տրդատ՝ դիմաւորելու զՍ. Գ. Լուսաւորիչ իր Կեսարիայէն հայրապետ ձեռնադրուելով վերադարձին։

Ս. Գ. Լուսաւորիչ իր Տարօնի մէջ մեհեանները քակելէն անմիջապէս ետքը Կեսարիոյ Հայրապետին՝ զինք ձեռնադրող Ղեւոնդէսի, նամակ դրկած էր և անկէ խնդրած էր Եղիազար և Յակոբ Ասորիին եղբայրը, էջ 9 Զենոբ 1832 Վենետիկ։ Եւ նոյն միջոցին ետ դարձան այն պատգամաւորները որ իր նամակին պատասխանը կը բերէին և զինքը Տարօնի մէջ չի գտնելով անցան մինչև Վաղարշապատ եկան և նամակին պատասխանը հանելով Ս. Գ. Լուսաւորչի մատուցին էջ 12 Զենոբ 1832 Վենետիկ։

Այն նամակը կարդացին Ս. Գ. Լուսաւորիչ և Տրդատ Թագաւոր, շատ տրտմեցան Եղիազարու երկրէն

հայածուելով հեթանոսաց համար և Տրդատ ու իր չորս զաւերէց իշխաններն և Ս. Գ. Լուսաւորիչ՝ նամակ գրեցին և հրաւիրեցին զինքը որ գրկուող մարդոց հետ գայ և իր եղբօր՝ Զենոբի վանքէն զատ, ուր որ ուզէ Տարօնի մէջ իրեն վանք հաստատէ, էջ 13 Զենոբ 1832 Վենետիկ։

Նոյն միջոցին Զենոբայ եղբայրը Եպիփան, եկաւ հասաւ և Տաւրոս լերան ստորոտը վանք մը շինեց որ յետոյ կոչուեցաւ Ղազարու վանք «էջ 17 Զենոբ 1832 Վենետիկ.» Զենոբ աղաչեց զՍ. Գրիգոր որ իր վանքը այցելէ և Թագաւորն ալ յանձն առնելով Քարքէոյ լերան ստորոտի յԻշանից տեղէն եկելով դէպի լանակողմը բարձրացան (էջ 41 Զենոբ 1832 Վենետիկ)։

Յանկարծ այնպէս տարածայնուեցաւ թէ հիւսիսի գործքերը կուրան ինչու որ Աղուանից երկրին մէջ Տրդատ անունց շատ գաւառները և քաղաքները քանդած էր։ Բարեբաղդաբար Տրդատ տեղեկացաւ որ Յունաց զօրքն էր եկողը, ուստի եկաւ Արձանին գլուխը և տեղին ընդարձակութեան համար Հաշտենից գաւառը բնակեցաւ. էջ 41 Զենոբ 1832 Վենետիկ.»

Երբոր Տրդատ Իննակնեան վայրը եկաւ Ս. Գրիգոր Լուսաւորիչին հետ մէկտեղ՝ տեսնել ուզեց Անտոն ու Կրօնիտէսը. պաշտօնեաները ըսին թէ տարիէն քիչ մը պակաս առենէ ի վեր զանոնք տեսած չէին. ուրեմն Ց. Տ. 303 տարւոյ վերջերն էր, Ի. պատերազմը և Թագաւորը շատ տրտմեցաւ։ Ուստի արեւելեան բլուրը եկան հոն ուր Դեմետրի պաշտօն կը մատուցանէին երբեմն ինչու որ հոն էին Անտոնի ու Կրօնիդեայ դարափոս խուցերը և հոն կը ճգնէին. տես էջ 41 Զենոբ 4832 Վենետիկ։

Եւ Թագաւորը տասնեւհինգ օր հոն կեցաւ ու բժշկութեան աղբիւրին մօտ, ուր առաջ Դիանէին տաճարը կը գտնուէր. Տրդատ մեծամեծ քարակոփ խաչ մը տնկեց և երբոր խաչը տնկեց հոն ժողուեցան 100,450

*մարդ. Թող Թագաւորին զօրքն և Ս. Գ. Լուսաւորիչի պաշտօնեաները և անոնց Թիւը բուն խաչին վրայ գրըուեցաւ. էջ 42 Զենոբ 1832 Վենետիկ։*

*Բայց Աղձնեաց իշխանը, որ Տրդատայ զօրքին Վրաստանէն դարձին ժամանակ կողմնապահ կարգուած էր 4000 զօրքով՝ Հիւսիսի Թագաւորէն 60000 դահեկան կաշառք առնելով մատնեց զՏրդատ. և նոյն գիշերը լեռան գլուխը գիւղին կողմէն Թշնամիին հեծեալները պաշարեցին և լերան վարի կողմէն անոր հեծեալները յարձակեցան և սկսան հնչեցնել պատերազմի փողերը և շուրջանակի կը լսուէին Թնդիւն և ձիերու վրնջիւն, էջ 44 Զենոբ 1832 Վենետիկ։*

*Եւ կէս գիշեր էր և Տրդատ խորհուրդ տուաւ մինչեւ առաւօտ սպասել և 6000 մարդ ի գլուխ Արձանին այգիներուն մէջ դարանակալ դրաւ. 4000 զօրք Հաշտենից կողմը և 4000 զօրք ի վերին գաւն, էջ 44 Զենոբ 1832 Վենետիկ։*

*Սիւնեաց իշխանը Թշնամի զօրքէն պատանի մը բռնեց և իմացուեցաւ որ գիշերային յարձակումը գործուած է նոյն իսկ Տրդատի զօրքերէն և իշխաններէն անոնց դաւաճանութեամբ։ Առաւօտ Տրդատ ուզեց իր ապաստանած փոքր(*) ամրոցէն ելել Արձանին գլուխը. բայց Գեղաւնան՝ հիւսիսային Թագաւորը, ջանաց զինքն 6000 պատանեկնոք արգիլել. «էջ 44 Զենոբ 1832. Վենետիկ.»*

*Բարեբաղդաբար Տրդատին նախորդ գիշեր Արձանին գլուխ դարանի կեցուցած 6000 զօրքը յանկարծ ռազմնուն ելան և գիւղի 4000 զօրքերն ալ անոնց միանալով մէջ առնելին ասին Թշնամին և անոնցմէ 4212 մարդ ջարդեցին։ Տրդատ՝ այս փոքր խառարածէն դառնալով, բարձրացաւ արձանին գլուխը և իր զօրքը իր շուրջը խմբե-*

(*) The ruins of an Armenian fortress may still be seen. P. 177 Armenia Travels and studies. Vol. II. By. H. F. B. Lynch.

լու համար ապգարար փող զարնել տուաւ. էջ 45 Զենոբ 1832. Վենետիկ:

Հիւսիսի արքան իր զօրքը առնելով դիմեց հաշտենից տափարակը և հոնկէ դեսպան զրկեց Տրդատին որ իր թագաւոր նստելու թուականէն, այսինքն Ց. Տ. 287էն ի վեր դադրեցուցած 15 տարուան տուրքը տայ և կամ իր երկիրը քարուքանդ պիտի ընէ. էջ 46 Զենոբ 1832 Վենետիկ ուրեմն նոյն միջոցին պէտք էր թուականութիւնն ըլլար Ց. Տ. 303ի մերջերը:

Տրդատ, Հռոմի քաղաքական ծրագիրներուն գործադրիչը, Զենոբի գրածին համեմատ նոյն միջոցին ընդունած էր 30,000 Յունաց զօրք և զանոնք ճակատեցուց Աղուանից կողմէ եկող Հիւսիսայնոց դէմ: Ինքն ալ իր վաղեմի սովորութեան համեմատ մենամարտեց թշնամի բանակին վարիչ Գեղեհոնի դէմ. Այս մասին համաձայն են Մ. Խորենացի և Զենոբ:

ԶԵՆՈԲ

Իբրեւ ամենայն զօրքն սկսան ընդդէմ իրերաց անցանել, ձայն բարձեալ Արքայն Հիւսիսայ ասէր. Արքայ Հայոց, ինձ մատիր։ Եւ իբրեւ եկին ընդդէմ իրերաց, սկսան իբրեւ զմրճուորս քարտաշտաց կամ իբրեւ զօւռնածս որք պատեն զշանթս հրայրեացս, մին առնայր և միւսն իջանէր։ Քանզի արքայն Հիւսիսայ մեծահասակ էր և կորովի իբրեւ զՏրդատ և բազում կոփեալ մրմեանց՝ ոչ ինչ եղեւ։

Բայց սկսաւ պակասել արքայն Հիւսիսայ և գիտացեալ եթէ վնասելոց է և քանզի ծո-

Մ. ԽՈՐԵՆԱՑԻ

Ոչ կարեմ ասել զերագութիւն ձեռինն, որպէս անբաւս ի նմանէ յերկիր անկեալ թաւալգլոր խաղային օրինակ իմն ի գեղեցիկ ցանցորդէ ըի ձըկամբ յերկիր թափեալ ցանցոյն, կայտառէին յերեսս երկրին։ Զօր տեսեալ թագաւորին Բասլաց, մտ հասանէ յարքայն. և հանեալ յասպազինէն զնեբդեայ քեմխտապատ պարանն և կորովութեամբ ձըգեալ յետուստ կողմանէ, ճարպ դիպեցուցանէ յուս ձախակողմանն, զի էր վերացուցեալ զձեռն ածել ումեք սուսերաւ. և ինքն վառեալ վերտ պահ-

պանաւոր էր՝ անձապարեաց և ձգեաց զձօպանն և արգել զայն թիկն ընդ պարանոցն և փաթթեաց դարձեալ և կղթեաց զձօպանն մինչ զի չկարաց բնաւ շարժել զձեռն Տրդատ։ Եւ մտրակեալ զկուշտ երիվարին զկնի Գեդռեոնի այնպէս փութացեալ մինչ զի ոչ ետ քայլել նմա առաջի իւր տասն քայլ իբրեւ եհաս նմա. ասէ. Կատաղի շուն, խառանեցեր զկնի քո ջլացդ։ Եւ ամբարձեալ զայն ձեռն իւր ի վեր իջուցանէր զսուսերն ի վերայ ձախոյ թիկանն Գեթռեոնի և անցուցեալ ընդ գօտին և զողն երիվարին հանդերձ գլխովն բաժանեալ յերկիր ձգէր։ Էջ 46—47 Ջենոբ 1832. Վենետիկ.

պանակօք, ուր ոչ գծէին նետք։ Եւ քանզի ոչ կարաց շարժել ձեռամբ զ՛նկայն, զլանջիւք. ա՛ռ երիվարին. և ոչ այնչափ ինչ շութափեաց մտրակել զերիվարն, քան թէ ա՛նեակ ձեռամբն ի ներքեայն անձապար եալ սկային, և սաստկութեամբ ուժոյն ցանցեալ, ի ձա՛ն դիպեցուցանէր զերկսայրին և ընդ մէջ կտրէր զայրն և զոյգ ընդ պարանոցին զգլուխ երիվարին։ Իսկ զօրացն ամենայն տեսեալ զթագաւորին իւրեանց միջակտուր յայնպիսի ա՛ւուր բազկէ լեալ, ի փախուստ դառնային։ Էջ 356 Մ. Խորենացի, 1881 Վենետիկ։

Տրդատի բանակը հռովմէական լէգէոններու յատուկ կարգաւորութեամբ յարդարուած էր, բանակին մէջ փողոց թողած, դռնապաններ կարգած, աջ ու ձախ թեւապաններ սահմանուած, թիկնապաններ որոշուած, մեհեանին կրակը արծարծող մեհենականներ յատկացուած և այսպէս ճակատ կազմուած էր թշնամւոյն դէմ. էջ 46 Ջենոբ 1832, Վենետիկ։ Ուրեմն զարմանալու չէ որ թշնամիք յաղթուեցան և Հիւսիսային թագաւորին սպաննուելէն ետքը՝ միացեալ զօրքը հալածուեցան մինչեւ Հաչանից դարատափին այն մասը ուր հիւսիսային արեւելք փոքր գետ մը կայ. էջ 47 Ջենոբ 1832 Վենետիկ։»

Առտուան դէմ հիւսիսի զօրքերը յարձակելով Ծոփաց իշխանը վիրաւորեցին և հազիւ կազմուած բանակը մտնելով քիչ մնաց Տրդատն ալ յանկարծակիի բերէին

բարեբախտաբար Մեհենանենաց գաւառ մը խուժակելով՝ միջոց տուաւ որ Տրդատ հիւսիսային զօրքին գլխաւորն ելէ և թշնամի զօրապետին վրայ յարձակելով զայն սպաննէ և մինչև Հարքայ կողմը հալածէ փախստական թշնամին. էջ 45: Ջենոբ 1832. Վենետիկ:

Արդ երբ հոն հասան Հարքայ իշխանը թշնամիներուն միացեալները կոտրեց և զանոնք քշեց մինչև Կարնոյ կողմերը և մինչև Վիրք հալածելով անոնցմէ միայն 6000 հոգի թողուց: Երբ Տարօն մտան թշնամիները 58000 հոգի էին. էջ 49. Ջենոբ 1832 Վենետիկ: Եւ Տրդատ Պատերազմէն ետքը սպիտակ զուարակներ, նոխազներ, և շատ գանձեր զոհ մատոյց. էջ 48 Ջենոբ 1832 Վենետիկ:

Այնուհետև Ապահունեաց գաւառը գնաց իր հետ տանելով հիւսիսայիններու գերի բռնուած երեք իշխանները որ Ոսկան բերդը զրկուած էին և 400 մարդիկ արքունի դիւանը գնել տուաւ: Իրմէ առաջ ղրկած զօրքերը Ապահունեաց մէջ ձերբակալեցին Աղձնեաց իշխանը. Տրդատ վայրկեան մը խորհեցաւ այս ազդեցիկ նախարարին ոտքն ու ձեռքը ծայրատել և վերջի վերջոյ Հայոց գաւառէն վտարեց. (էջ 49 Ջենոբ 1832 Վենետիկ) և թողուց որ երթայ Հայոց արդէն բազմաթիւ թշնամեաց խումբը ստուարացնէ:

Արդ Աշտիշատ, Հայոց Մեծաց թագաւորներու արքունեաց գրաւած կալուածներէն էր, ուստի Տրդատ կը վերաբերէր իբրև սեպհականութիւն անոր կրօնական կառավարութեան մասին ալ կարգադրութիւններ ընել և քանի որ այն ատեն միայն Ասորիներէն բաւականաչափ կղեր կար օտար առաքելութեանց մէջ գործելու պատրաստ՝ անոնցմէ հրաւիրեց բռնելու քուրմերուն տեղը և Ջենոբ երկրին առերևոյթ խաղաղացումէն չլացած՝ իր հայրենակիցները ապահովցուց որ եթէ Բեկտոր, Անաստաս և

այլ գոնէ՝ երկիրը շատ ամրոցներով պաշտպանուած պիտի գտնէին և թէ նոր խառնակութիւններէ վախնալու տեղի չունէին։ էջ 49 Ջենոբ 1832 Վենետիկ։

Երբ Դիոկղետիանոս՝ Յ. Տ. 305 ին քաշուեցաւ ի Սալոն՝ իր գահակիցը Մաքսիմինոս Յ. Տ. 311 ին ուզեց բռնութեամբ հեթանոսութիւնն վերահաստատել ի Հայս ըստ վկայութեան Եւսեբիոս Կեսարացւոյն։

Տրդատ առիթ ունեցաւ ստուգելու թէ իր նախարարները որանց քրիստոնէութեան դարձած չէին և անշուշտ շատեր դարձեալ ապստամբութեան դրօշը պարզեցին։ Բարեբաղդաբար Յ. Տ. 313 ին Միլանի հրովարտակով Կոստանդիանոս քրիստոնէից ազատութիւն շնորհեց և իր գահը Միլանէն արեւելք փոխադրելու մեծ խնդրով՝ եկաւ այն ատենի մայրաքաղաքը Նիկոմիդիա և մտերմացաւ Եւսեբիոսի հետ։ Եւ հրաման ըրաւ որ Տրդատ, Ս. Գրիգորի հետ Նիկոմիդիոյ ժողովին երթայ։

Տրդատ նոյն միջոցին իմացաւ որ իր թշնամին Շապուհ, խնամեցած է Հնդկաց թագաւորին և Արեւելեան Թուրքանին հետ ուստի չի կրցաւ Հայաստանը իր բացակայութեան միջոցին նշաւակ թողուլ անհաշտ թշնամիի մը յարձակումին։ Իսկ Ս. Գ. Լուսաւորիչ ալ համեստութեան մերժեց իրեն եղած պատիւը և իր տեղ զրկեց իր որդին Ռըստակէս որ Նիկիա կը հասնի Ղեւոնդէսի հետ (էջ 372–374. Մ. Խորենացի. 1881 Վենետիկ։)

Վերադարձին Ռըստակէս կը հասնի Վաղարշապատ և կընդունուի Ս. Գ. Լուսաւորիչէ և Տրդատայ կողմէ, նոյն առթիւ Արշաւիր Կամսարական կը մկրտուի իր գերդաստանի անդամներուն հետ միասին և որպէս զի իր հաւատքը անվրդով պահէ՝ իրեն հաւատափոխութիւնը կը վարձատրուի Շիրակ գաւառը և Դրասխանակերտը իրեն շնորհելով. «էջ 375 Մ. Խորենացի 1881 Վենետիկ։» Այս գինով ձեռք բերուած քրիստոնէութիւն մը շատ

տեսուր գաղափար կուտայ հաւատոյ տարածման աշխատողներու գործածած միջոցներու նկատմամբ և յայտնի կընէ թէ իրենց ստացուածքէն զրկուած նախարարներն ապագայ քաղաքական կենդանութիւններ պատրաստեցին ։

Ս․ Գ․ Լուսաւորիչ իր շուրջ պարզուած տեսարաններէն ձանձրացած, կը քաշուի նախ Տարօն և անկից կը փնտռուի Անտոնի և Կրօնիդէսի կողմանէ և Մանեայ այրը երթալով՝ եօթը տարի վերջ կը վախճանի «էջ 7․ Յով․ Եպ․ Մամիկոնեան 1832 Վենետիկ»։ Արիստակէս իրեն կը յաջորդէ, բայց Արքեղայոս Զօրաւոր Հայոց վերակացուն Ծոփաց գաւառին մէջ ճամբան սպասելով զինք կը սպանէ և իր երէց եղբայրը, Ս․ Վրթանէս իր տեղ կը յաջորդէ․ Տրդատայ թագաւորութեան 54րդ տարին «էջ 378․ Մ․ Խորենացի 1881 Վենետիկ»։

Տրդատ նոյն միջոցին արդէն 84 տարեկան է և իրեն գահակից առած է Խոսրով Կոտակ։ Ուստի ըստ սովորութեան Ս․ Վրթանէս հանդերձ թագաւորօքն և աշխարհախումբ բազմութեամբ կը հանէ Տարօնոյ Ս․ Յ․ Կարապետի մատուռը կատարել պատարագ օրհնութեան բայց ժանտագործ քուրմերու տոհմէն իբրև հազար երկու արք որք զհնութիւն կռապաշտութեան մինչև ցայնժամ գաղտնի ունէին թագաւորին (Խոսրով Կոտակի) կնոջմէն համարձակութիւն առնելով զՍ․ Վրթանէս եկեղեցւոյն մէջ պաշարեցին (էջ 7—8 Բ․ Փաւստոս 1889 Վենետիկ։)

Նոյն ժամանակ խռովութիւն ծնաւ Հայոց աշխարհի նախարարներուն մէջ և թագաւորը (Տրդատ) բազում սրտմտութեամբ անոնց վրայ արձակեց զՎաչէ Մամիկոնեան որ այդ նախարարութիւններէն և ոչ մէկ որձ կորիւն ողջ թողուց (էջ 9․ Փաւստոս 1889․ Վենետիկ։) Նոյն միջոցին Ս․ Վրթանէսի որդին զՍ․ Գրիգոր ձիումը ագիէ կապեցին և հիւսիսային ծովու եզերք ի դաշտին Վատնեայ քաշկռտել տալով նահատակեցին։ Տրդատ՝

զգուած իր սեւաձնիքէն, քաշուելու։ Մանեայ այրը ատանց մօքէն խոկ անցնելու թէ թագաւորի մը վայել գիրքը իր պարտականութիւններուն մարմնացումը եղող գահն է ուր պէտք է ապրի և մեռնի։

Արդ այն Աղձնեայ բդեշխը որ Զենոբի պատմութեան մէջ մեզ կը ներկայացուի իբր ապստամբ վտարեալ Հայոց գաւառէն (էջ 49 Զենոբ 1832 Վենետիկ) այս անգամ նոյն Աղձնեայ իշխանը պարսիկ զօրքերուն գլուխն անցած կը մտնէ աւերել Հայաստան (էջ Բ. Փաւստոս 1880 Վենետիկ)։ Նախարարները իրեն հնարք մը փնտռելով պատգամաւոր կը ղրկեն Տրդատի որ գայ և ըլլայ իրենց կամքին համեմատ (էջ 383-387 Մ. Խորենացի 1881 Վենետիկ) և երբ կը մերժէ՝ զինք կը թունաւորեն, ձուքէն կազատին։ Վերջապէս Որմիզդ Պարսից թագաւորին երկրորդ տարին անոր օգնականութեամբ Խոսրով Կոտակ իր հօրը կը յաջորդէ (էջ 411 Մ. Խորենացի 1881 Վենետիկ)։

Ուրեմն Զենոբէ նկարագրուած քաղաքական ողբերգութեան վերջին արարուածը Բ. Փաւստոսի բացատրութեամբ առաջ կը տարուի և Մ. Խորենացւոյն պարզած տարաազդեցիկ տեսարանով կը փակուի։ Այսպէս անգամ մը եւս առիթ կունենանք հաստատելու թէ Զենոբէ առաջ և Զենոբէ վերջ պատահած քաղաքական իրադարձութիւններ, Զենոբի մեզ հաղորդած պատմական ծանօթութիւններով իրար կը հիւսուին միաչափ և անոր խօսքերուն ճշմարտութեան անհերքելի կնիքը կը դրոշմեն։

Շատ աւելի դիւրին է ուրեմն հաստատել Զենոբի վաւերականութիւնը քան բացատրել հայաստանեայ Արշակունիներու ընթացքը որով ցվերջ աշխատեցան քանդել տունն այն ազգին որուն հացը կուտէին։ Ասիկայ զարգացեալ ժողովուրդներու և իրենց խակ բանուորներու ողբալի առընչութեան կը նմանի. բայց բիրտ ուժի և խա-

իմացական զօրութեան պայքարի միջոցին վերջին խօսքը բանականութեան կը մնայ։

Պատմութիւնը չէ արձանագրած այն խօսքը զոր Ս. Գ. Լուսաւորիչ ուղղեց նորահաւատին երբ խրոխտ Տրդատ իջաւ մկրտութեան աւազանը նոր կեանքի մը վերածնելու։ Արդեօք Արշակունի միապետին զրուցեցա՞ւ «Courbe la tête, fier Tiridate, adore ce que tu as brûlé, brûle ce que tu as adoré։ Եթէ Ս. Գ. Լուսաւորիչ ինք չըսաւ, բայց իր յաջորդները Արշակունեաց հասկցուցին թէ ալ անցած էր Նեբրովթի, Բելի, Հերակլէսի, Սամսոնի և Գողիաթի դարը։

Արշակունիներու պարթև հասակին ազդած երկիւղը չէր զօրեր արդարութեան ձայնը հնչեցնել հայ եկեղեցւոյ անվեհեր հայրապետներուն վրայ, թէև հալածեալ իրենց յանդգնութիւնը տուժեցին։ Ս. Յուսիկ բրածեծ եղաւ, ծերունին Դանիէլ խեղդամահ եղաւ, Ս. Ներսէս թունամահ եղաւ։ Արշակունիք հասկցան թէ ժողովուրդին գերիշխանութիւնը ներկայացնող ուժի մը հաստատուելուն օգներ էին՝ կարծելով թէ իրենց քաղաքական ծրագիրներու յաջողութեան պիտի ծառայեցնեն քրիստոնէութիւնը։

Իրենց յետամնաց ուշադրութիւնը իրենց սուրի պիտի նայէր։ Երբ Արշակունի արքունեաց մէջ ամէն կերպ զեղծում ըստ առաջնոյն շարունակեց, երբ հակառակ իրենց ընդունած քրիստոնէութեան՝ շարունակեցին բազմակնութիւնն ու սոդոմականութիւնը, երբ շարունակեցին իրենց հայատեաց ընթացքը և իրենց անեղծագործած նախարարութեան ձեռքով [illegible] Մանաւազեանք. Բզնունիք. Արծրունիք եւն, եւն., նախ սահմանապահ բդեշխները ապստամբեցան և ինքնագլուխ սկսան իշխել որով ձեւացան այսօրուան Հայ ազգին ուծացեալ ցեղեր. յետոյ Հայոց միջնաշխարհի նախարար-

*ներն ընտրեցին բնաւ թագաւոր չունենալ քան գլուխ ծռել Թագաւորի դաւաճաններու առջեւ, ինչու որ «Թագաւորն Հայոց Արտաշիր անհուն միայն ողորմանի յանուանակ գանկութիւն մինչեւ տաղտկանալ ի նմանէ ամենայն նախարարացն։ Մինչեւ հրամայեաց Վռամ առնուլ զԹագաւորութիւնն յԱրտաշրէ եւ զամենայն ինչս նորա առնել յարքունիս։ Եւ որձակեաց զնախարարսն Պարսից մարզպանաւ որում անուն էր Վեհմիհրշապուհ» էջ 552 – 556 Մ. Խ. 1851 Վենետիկ։*

*Ուրեմն Արշակունիք կործանեցին եւ կործանեցան, բայց անոնց անկմամբ երկրէն վտարուեցաւ ազատ ինքնավ ծիրանաւորութիւնը, Հայ իշխանքներ Հայ սրտերու խօսեցան Աստուածաշունչ գրոց թանկագին պատգամները, Հայ սրտակը ընկերական աստիճանին վրայ վեր բարձրացաւ, մարդկութիւնը իր մէկ հատուածին մէջ դէպ ի նոր գաղափարներ քայլ մը ալ առաւ։ Ոսկեանց եւ Սուքիասեանց աւանդութիւնները վերարծարծեցան եւ եթէ Արշակունեաց օրով Հայք երկիրը կորսնցուցին, բայց շահեցան ապահովաբար երկինքը ուր անթիւ նահատակներ իրենց արեան ի գին վաստկեցան Մարտիրոսի փառաց պսակը։*



# ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆ



*Հայ ազգի՝ Զենոբէ պատմուած, բանաւոր հաւատախօսութեան հետեւանք ընտանի պատերազմներ կը ծանուցէ որոնց փախճանի չէին կրնար հասցնել օտարամոլ Արշակունիները: Պատմութեան նախընթաց խաղարձութիւնները իրենց յարմարագոյն ելքին յանգած կը տեսնեն նաքէն ետող մարդին: Ժամանակակից դէպքերն են որ մեզ անակնկալի հանդէպ կը դնեն եւ խռովէս ուհանելի անակնկալներու:*

*Տժգոյն մահը նոյն ցուրտ շունչով կը մարէ կեանքի բոցավառ ջահը եւ ամկայծեալ պատրոյգը եւ նոյն հաւասար ատնութեամբ կը խզէ արեւ օրերու ամեհի թելը կամ տրտմոյր դերձանը: Այսպէս ներկայ դրդին երկասիրութեան գեւ մամլոյ տակ գտնուած միջոցին գրական ասպարէզէն եւ իր սիրելիներէն յանկարծ խուսեցաւ ողբացեալ Դր. Խաչաթեան:*

*Այսչափ յուրջ հետազօտութեան մը ձեռնարկած պահերնուս փառան էինք թէ Լազարեան Ճեմարանի Հայ լեզուի Ուսուցչապետը, իբրեւ ճշմարիտ գիտուն, պիտի օգտուէր իրեն ուղղուած դիտողութիւններէն եւ պիտի օգնէր որ դարմանէինք՝ յօգուտ Հայ մատենագրութեան, մարդկային գործերէ անբաժան մեր վրիպանքը, եթէ կայ:*

*Բայց պատուական բանասէրին անժամանակ մահը ահա ամէն բան փոխեց. Նոյն խոկ փոխեց լեզուն այն ամսօրեայ հանդէսներու որ իրենց սիւնակները յայն կը բանային իր արդիական քննադատութիւններու ընդունելու, եւ իրենց մամուլով յաւերժացնելու այն վար-*

կածը թէ մեր ծերունազարդ մատենագիրները իրականէն շատ աւելի երիտասարդ են։

Արդ յարգելի Տր. Խալաթեան գնաց խառնուիլ այն պաշտելի մատենագիրներու կաճառին զորս երբեմն ի զուր կը ջանար արդիացնել և ճիշդ անոնք իր բաղձանքին համեմատ աւելի երիտասարդ չեղան՝ բայց ահա ինք իր կարգին գնաց միացաւ այնոր հեղինակներու յաւէտ սիրելի ուխտամբին, որով աւելի քան երբեք կրուանք ունի մեր մեծարանաց։

Տարբեր բան է սակայն գիտնալ թէ ինչ մղումով՝ մինչեւ իր նախորդը, Մ. Էմին, իր գրութիւններով կը նպաստէր հաստատելու Զենոբի հարազատութեան խնդիրը. ինք բնիկ տրամադրաբար հակառակ ուղղութիւն մը և ձեռնարկեց անվաւեր հռչակելու Ասորի պատմութիւնը. թէեւ ինչպէս տեսանք՝ իր հակառակութիւններն խակ կը վկայեն թէ չի կրցաւ ճշդել ոչ Զենոբի ենթադրեալ յերիւրման թուականը և ոչ ալ յերիւրողին անձը։

Արդեօք նոյն համոզմունքին բերէն նոյն հեղինակի մասին նոյն կարծիքը յայտնելու անպատեհութի՞ւնն էր որ զինք ստիպեց իր նախորդէն տարբեր բան մը ըսելու, թէ չէ նորոյթի հակը վճարեց մեր ամէնէն հին մատենագրին ամենէն աւելի աղաւաղուած ձեռագիրներու վրայէն կատարուած ամենէն նոր տպագրութիւնը հիմ բանելով իր արդիական քննադատութեան։

Նախ չիտակ չէ թէ Զենոբ անարժէք աւանդավէպներու հաւաքածոյ մը եղած ըլլայ։ Ս. Կարապետի հիմնարկութեան օրերու մենակեացը իր գրիչէն ելած տողերուն մէջ ցոյց կուտայ վառ երեւակայութիւն և մատենագրական շնորհալի տուրք, ուսում և գեղեցիկ դպրութեան ակի մատեանին մէջ պատմականէն տարբեր և սակայն նոյնքան փառաւոր էջ մը ապահոված է իրեն։

Իսկ գալով պատմականին՝ պէտք չէ արդիական քննադատութեան անունը յիշել. անիկա ինչ վախճանի որ հասցնէ մեզ անշուշտ անաչառութեամբ ընդունելու ենք զայն։ Յարգելի Գր. Խալաթեան իր իսկ ձեռքով իր համեմատական ուսումնասիրութեան ցանկերուն մէջ Տարօնի կրկին պատերազմներու բանաքաղութեան աղբիւրը անյայտ մնալը հաստատելէն ետքը՝ պէտք էր Զենոբն ընդունէր սկզբնագիր։

Գալով բնագրամիջումներու (interpolation) որոնց համար յարգելի Գր. Խալաթեան կը յայտարարէ թէ այդ յօդուածները համառօտութիւնն են Ագաթանգեղոսի ընդարձակ պատմութեան այնպիսի ոճով որպէս զի փոխառութիւնը ուղղակի չի նկատուի։ Նոյն նպատակով ընդհատած են այն յօդուածներ և ընդարձակ միջանկեալ զրոյց ներմուծած էջ 51 համ. Ուսումն. Գ. Խալաթեան 1893 Վիէննա։

Ներուի մեզ դիտել տալ որ Արգոսի աչք ունենալու պէտք չկայ անոնց Զենոբի կամքին հակառակ ետքէն ներմուծուած ըլլալը տեսնելու համար քանի որ այդ մըրան բաց խոստովանութիւնը ընդը կը սկսի «Ընդ ժամանակս թագաւորութեանն Խոսրովայ, որդւոյ Վաղարշի, վրէժխնդիր լինէր Արտաւանայ եղբօր իւրոյ և ի գալ ընդ միմեանց երկուց թագաւորացն՝ արքային Հայոց և Պարսից սաստկացաւ պատերազմն. էջ 20 Զենոբ 1832 Վենետիկ.» հաստատով։

Մինչդեռ Զենոբ. ինք. բացարձակ կը մերժէ Տարօնի երկու պատերազմներէ դուրս բան գրած ըլլալը՝ հաստատելով թէ ինք աղաչած էր «զՍ. Գրիգոր սկիզբըն առնել պատմութեան իւրոյ ի մահուն Խոսրովու և ոչ հաւանեցաւ Ս. Գրիգոր, այլ բաւական համարեաց գրել զԱռաջին և զԵրկրորդ պատերազմն Տարօնոյ. էջ 18 Զենոբ 1832 Վենետիկ.

Ուրեմն Զենոբի սկզբնագիրին մէջ Խօսրով, Վաղարշ, Բուրդար, Սեղբեստրոս, Կոստանդիանոս են. չը կային և յետոյ աւելցուեցան բուն վկայութեան հրատարակիչներու. «Զենոբ, ժամանակաց երկարութեամբ աղաւաղեալ գտանի, ուրեք ուրեք ի յետնոց հատուածք կրճատեալ և հատուածք յետոյ յաւելեալ. էջ 7. Զեկուցում Զենոբ 1832 Վենետիկ:»

Արդ «այս նկատմամբ ուրիշ բան չեն Միջամուտք (Ներմուծք) բայց եթէ աւելիչ և խանգարիչ ձեռքեր յորոց կարհամարհութն մեր քաղաքական և նուիրական պատմութեանց փառաւոր անցեալը, լեզու և դպրութիւնք որոնք յատկանական ձեւոյն, մաքսմանց և ոճո-րութեանց հետ՝ կը ջանան խափանել ամենայն ընդ սուտ և չար երկար դարերու բազմաչխատ ուսումն և արգիւնաւորութիւն. էջ 205. Պատ հայ. Դպր. Բ. 1878 Վենետիկ»:

Ուրեմն ի յետնոց աղաւաղեալ Զենոբ՝ է և կը մնայ Դ. Դարու ժամանագիր հանդէպ արդիական քննադատութեան, ինչպէս իրենց տեղը կը մնան մեր հին հին հեղինակները: Բայց այն ատեն ո՞ւր կը մնայ Հանդէս Ամսօրեայի Նախկին աշխատակիցը: Ափսո՛ս. Նախկին մը ըլլալէն ի վեր իր կարգին ինք ալ այժմէացած է այսօր իր Նախկին բարեկամներէն որ անոր գրական ընդհանուր գործունէութեան վրայ իրենց վճիռը արձակելով կը հաստատեն թէ՝

Գրիգոր Խալաթեան ունեցաւ տարօրինակ ենթադրութիւններ եւ հեռաւոր սխալներ:

էջ 198 Հանդէս Ամսօրեայ 1912 Վիեննա:

